ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 7
ՀՈՒԼԻՍ
1957 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

## СОДЕРЖАНИЕ





# ՊԱՐՏԻԱՅԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆՆ ԱՆՍԱՍԱՆ Է

*Թշնամիներն անգամ ստիպված են խոստովանել կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի հաղթանակները։ Կոմունիստական պարտիայի իմաստուն քաղաքականության շնորհիվ մեր բազմազգ սոցիալիստական Հայրենիքը պատմության մեջ չտեսնված տեմպերով առաջ է ընթանում, նորանոր հաջողություններ ձեռք բերելով արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի բոլոր ասպարեզներում։ Գնալով է՛լ ավելի են ամրապնդվում Սովետական Միության դիրքերը միջազգային ասպարեզում, խաղաղության համար մղվող մեծ պայքարում։*

*ՍՄԿՊ XX համագումարից հետո անցած մոտ մեկ ու կես տարվա ընթացքում ՍՍՌՄ արդյունաբերությունը հաջողությամբ կատարում է վեցերորդ հնգամյակի առաջադրանքները։*

*Մեր երկրի առաջընթացի գործում հսկայական նշանակություն ունի արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպական ձևերի վերակառուցումը, որը լայն հնարավորություններ է ստեղծում դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի հետագա զարգացման համար, ընդլայնում է տնտեսական շինարարության բնագավառում տեղական կազմակերպությունների իրավունքները, բարձրացնում է մասսաների ստեղծագործական ակտիվությունը։*

*Վերջին տարիների ընթացքում Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն մի շարք կոնկրետ միջոցառումներ մշակեց գյուղատնտեսության ետ մնալը հաղթահարելու ուղղությամբ։ Այդ բնագավառում կատարված աշխատանքը տվեց իր փայլուն արդյունքները. մեր երկրի գյուղատնտեսությունն այժմ վերելք է ապրում։ Պարտիայի Կենտկոմի նախաձեռնությամբ 35 միլիոն հեկտար խամ ու խոպան հողերի յուրացումը և բերքատվության բարձրացման ուղղությամբ կիրառված մի շարք այլ ձեռնարկումներ հնարավորություն տվեցին շեշտակի ավելացնել հացահատիկի արտադրությունը և ապահովեցին անասնաբուծության նշանակալի աճը։ Սովետական մարդիկ բուռն ոգևորությամբ ընդունեցին պարտիայի կոչը՝ բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ մոտակա տարիներին հասնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։*

*Պարտիան անդուլ պայքար է ծավալում մեր ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, երկրում մթերքների լիակատար առատություն ստեղծելու ուղղությամբ։*

*Անշեղորեն իրականացնելով իր XX համագումարի որոշումները՝ մեր պարտիան հսկայական աշխատանք է կատարել անհատի պաշտամունքի հետևանքների վերացման, պարտիական կյանքի լենինյան նորմերը վերականգնելու, ազգային քաղաքականության բնագավառում տեղ գտած խեղաթյուրումների*

րումները վերացնելու, միութենական ռեսպուբլիկաների իրավունքներն ընդլայնելու, սովետական սոցիալիստական դեմոկրատիան զարգացնելու ուղղությամբ։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը բխում է աշխատավոր ժողովրդի կենսական շահերից, այն լենինյան քաղաքականություն է, որը լիակատար աջակցություն է գտնում աշխատավորական լայն մասսաների կողմից։ Գնալով է՛լ ավելի են ամրապնդվում պարտիայի և ժողովրդի կապերը։

Եվ ահա այն ժամանակ, երբ պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հերոսական պայքար է մղում մեր Հայրենիքի հետագա հզորացման համար, Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի հակապարտիական խումբը հանդես եկավ պարտիայի քաղաքականության, նրա լենինյան գծի դեմ։

Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումի որոշման մեջ տրված է այդ ֆրակցիոն խմբի գործունեության սպառիչ բնութագիրը։ Կենտկոմի պլենումը նշեց, որ Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի խումբը, նպատակ ունենալով փոխել պարտիայի քաղաքական գիծը, հակապարտիական ֆրակցիոն մեթոդներով ձգտում էր փոխել ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում ընտրված՝ պարտիայի ղեկավար օրգանների կազմը։

Պլենումի որոշման մեջ ասված է, որ վերջին 3—4 տարվա ընթացքում, երբ պարտիան անհատի պաշտամունքի առաջացրած սխալների ու թերությունների ուղղման վճռական կուրս վերցրեց և հաջող պայքար է մղում մարքսիզմ-լենինիզմի ռևիզիոնիստների դեմ ինչպես միջազգային ասպարեզում, այնպես էլ երկրի ներսում, երբ պարտիան մեծ աշխատանք է կատարել լենինյան ազգային քաղաքականության՝ անցյալում թույլ տրված խեղաթյուրումները շտկելու ուղղությամբ, այժմ հայտնաբերված և լիովին մերկացված հակապարտիական խմբի մասնակիցները շարունակ ուղղակի կամ անուղղակի դիմադրություն էին ցույց տալիս այդ կուրսին, որին հավանություն է տվել ՍՄԿՊ XX համագումարը։ Այդ խումբն ըստ էության փորձում էր հակազդել սոցիալական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության, միջազգային լարվածությունը թուլացնելու և աշխարհի բոլոր ժողովուրդների հետ ՍՍՌՄ-ի բարեկամական հարաբերությունների հաստատման լենինյան կուրսին։

Նրանք դեմ էին տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում, օրենսդրության ասպարեզում միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնմանը, ինչպես նաև դեմ էին այդ խնդիրների լուծման գործում տեղական Սովետների դերի ուժեղացմանը։ Հակապարտիական խումբը դրանով իսկ դեմ էր ազգային ռեսպուբլիկաներում էկոնոմիկայի ու կուլտուրայի ավելի արագ զարգացման պարտիայի կողմից հաստատակամորեն մղվող կուրսին, որն ապահովում է մեր երկրի բոլոր ժողովուրդների լենինյան բարեկամության հետագա ամրապնդումը։ Հակապարտիական խումբը ո՛չ միայն չէր հասկանում, այլև դիմադրում էր բյուրոկրատիզմի դեմ պայքարի, պետական ուռճացած ապարատի կրճատման նպատակով պարտիայի մշակած միջոցառումներին։ Բոլոր այդ հարցերում նրանք հանդես էին գալիս պարտիայի կողմից կիրառվող դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի դեմ։

Այդ խումբը համառորեն դիմադրում և փորձում էր վիժեցնել այնպիսի



կարևորագույն միջոցառում, ինչպիսին է արդյունաբերության կառավարման վերակառուցումը, տնտեսական շրջաններում ժողտնտխորհներ ստեղծելը, որին հավանություն տվեցին ամբողջ պարտիան և ժողովուրդը։ Նրանք չկարողացան հասկանալ, որ արդի էտապում, երբ սոցիալիստական արդյունաբերության զարգացումը վիթխարի մասշտաբների է հասել և շարունակում է արագորեն աճել՝ ծանր ինդուստրիայի առավել զարգացմամբ հանդերձ, անհրաժեշտ էր գտնել արդյունաբերության կառավարման նոր, ավելի կատարյալ ձևեր, որոնք մեծ ռեզերվներ բացահայտեին և ապահովեին սովետական ինդուստրիայի է՛լ ավելի հզոր վերելք։ Այդ հակապարտիական խումբն այնքան հեռու էր գնացել, որ նույնիսկ համաժողովրդական քննարկման ընթացքում հիշյալ միջոցառումներին հավանություն տրվելուց և ապա՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում օրենք ընդունվելուց հետո էլ, շարունակում էր պայքարը արդյունաբերության և շինարարության կառավարումը բարելավելու դեմ։

Այդ հակապարտիական խմբի մասնակիցները գյուղատնտեսության հարցերում դրսևորեցին նոր խնդիրների անըմբռնողություն։ Նրանք չէին ընդունում գյուղատնտեսական մթերքների արտադրությունը ընդլայնելու գործում կոլտնտեսային գյուղացիության նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու անհրաժեշտությունը։ Նրանք առարկում էին կոլտնտեսություններում պլանավորման հին կարգը վերացնելու և պլանավորման նոր կարգ մտցնելու դեմ, որը կոլտնտեսությունների նախաձեռնությանը ասպարեզ է տալիս իրենց տնտեսությունը վարելու գործում, որն արդեն տվել է իր դրական արդյունքները։ Նրանք այնքան էին կտրվել կյանքից, որ անտեսեցին այն ռեալ հնարավորությունները, որոնք թույլ են տալիս տարվա վերջերին վերացնելու կոլտնտեսականների տնտեսություններից գյուղատնտեսական մթերքների պարտադիր մթերումները։ Սովետական երկրի միլիոնավոր աշխատավորների համար կենսական նշանակություն ունեցող այդ ձեռնարկման իրագործումը հնարավոր դարձավ կոլտնտեսություններում հանրային անասնաբուծության մեծ վերելքի և սովետական տնտեսությունների զարգացման հիման վրա։ Հակապարտիական խմբի մասնակիցները հանդես եկան այդ հասունացած ձեռնարկման դեմ։

Նրանք ոչ մի բանով չարդարացված պայքար էին մղում բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, յուղի ու մսի արտադրությամբ մոտ տարիներս ԱՄՆ-ին հասնելու վերաբերյալ պարտիայի կոչի դեմ, մի կոչ, որը ակտիվորեն պաշտպանեցին կոլտնտեսությունները, մարզերը, ռեսպուբլիկաները։ Դրանով իսկ հակապարտիական խմբի մասնակիցները ցուցադրեցին աղայական, արհամարհական վերաբերմունք ժողովրդական լայն զանգվածների կենսական արմատական շահերի նկատմամբ։

Չի կարելի պատահական համարել, որ հակապարտիական խմբի մասնակից Վ. Մ. Մոլոտովը, պահպանողականություն ու քարացածություն հանդես բերելով, ո՛չ միայն չհասկացավ խոպան հողերի յուրացման անհրաժեշտությունը, այլև դիմադրում էր 35 միլիոն հեկտար խոպանը հերկելու գործին, որն այնքան հսկայական նշանակություն ունեցավ մեր երկրի էկոնոմիկայի համար։

Վերջապես, Մալենկովը, Կագանովիչը և Մոլոտովը համառորեն դիմադրում էին այն ձեռնարկումներին, որ Կենտրոնական Կոմիտեն և մեր ամբողջ պարտիան անցկացրին անհատի պաշտամունքի հետևանքների վերացման, ռևոլյուցիոն օրինականության բնագավառում ժամանակին թույլ տրված

խախտումների շտկման և այնպիսի պայմանների ստեղծման համար, որոնք
բացառում են հետագայում դրանց կրկնվելու հնարավորությունը։

Այն ժամանակ, երբ բանվորները, կոլտնտեսականները, մեր փառապանծ
երիտասարդությունը, ինժեներա-տեխնիկական և գիտական աշխատողները,
գրողները, ամբողջ ինտելիգենցիան միահամուռ կերպով պաշտպանեցին
ՍՄԿՊ XX համագումարի որոշումների հիման վրա պարտիայի կողմից կի-
րառվող ձեռնարկումները, երբ սովետական ամբողջ ժողովուրդը ակտիվ պայ-
քարի մեջ ներգրավվեց այդ ձեռնարկումների կենսագործման համար, երբ
մեր երկիրը ժողովրդական ակտիվության հուժկու վերելք և ստեղծագործա-
կան նոր ուժերի ծաղկում է ապրում,— հակապարտիական խմբի մասնակից-
ները խուլ մնացին մասսաների այդ ստեղծագործական շարժման հանդեպ։

Պառակտիչներ Մալենկովի, Կագանովիչի և Մոլոտովի վարքագիծը հիմնո-
վին հակասում է պարտիայի գծին. նրանք գերի էին և գերի են հին պատ-
կերացումներին ու մեթոդներին, կտրված են մեր պարտիայի ու երկրի կյան-
քից, չեն տեսնում նոր պայմանները, նոր իրադրությունը, ցուցաբերում են
պահպանողականություն, համառորեն կառչում են աշխատանքի իրենց դարն
ապրած ձևերին ու մեթոդներին, որոնք չեն համապատասխանում դեպի կո-
մունիզմ կատարվող շարժման շահերին, մերժելով այն, ինչ ծնվում է կյան-
քում և բխում է սովետական հասարակարգի զարգացման շահերից, սոցիա-
լիստական ամբողջ լագերի շահերից։

Ինչպես ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականության հարցերում,
նրանք աղանդավորներ ու դոգմատիկներ են, տիրացուական քարացած մոտե-
ցում են ցուցաբերում դեպի մարքսիզմ-լենինիզմը։ Նրանք չեն կարող հաս-
կանալ, որ արդի պայմաններում կենդանի մարքսիզմ-լենինիզմը գործողու-
թյան մեջ, պայքարը կոմունիզմի համար դրսևորվում են պարտիայի XX
համագումարի որոշումների կենսագործման մեջ։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումը, ղեկավարվելով
պարտիայի լենինյան միասնությունն ամեն կերպ ամրապնդելու շահերով,
որոշեց՝ դատապարտել Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի և նրանց հարած
Շեպիլովի հակապարտիական խմբի՝ մեր պարտիայի լենինյան սկզբունքների
հետ անհամատեղելի ֆրակցիոն գործունեությունը։ Այդ խմբի մասնակիցները
հանվեցին Կենտկոմի նախագահության և Կենտկոմի անդամների կազմից և
իրենց պաշտոններից։

Մեր բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիան իրենց բազմա-
մարդ ժողովներում անարգանքի սյունին են գամում հակապարտիական խմբի
մասնակիցներին, մեծ զայրույթով դատապարտում են նրանց ավանտյուրիս-
տական արարքները, կրկին անգամ դրսևորում են իրենց սերն ու հավատար-
մությունը մեր պարտիայի և նրա լենինյան Կենտկոմի նկատմամբ։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումները ջերմ պաշտպանու-
թյուն են գտել եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների
կողմից։

ՍՄԿՊ Կենտկոմին տրված իր հեռագրում Չինաստանի կոմունիստական
պարտիայի Կենտկոմը հայտնում է. «Մենք վստահ ենք, որ ՍՄԿՊ Կենտ-
կոմի պլենումի կողմից միաձայն ընդունված այդ որոշումը կծառայի ՍՄԿՊ
շարքերի հետագա համախմբմանը և ամրապնդմանը»։

Գերմանական սոցիալիստական միասնական պարտիայի քաղբյուրոյի



հայտարարության մեջ ասված է. «Մենք անվերապահորեն, առանց որևէ սահ-
մանափակման, ողջունում ենք ՍՄԿՊ Կենտկոմի՝ լենինիզմի ոգով տոգորված
որոշումները և դրանք պաշտպանում ենք բոլոր ուժերով և ամենայն հետևո-
ղականությամբ»։

«Հունգարիայի սոցիալիստական բանվորական պարտիայի Կենտրոնական
Կոմիտեն,— գրում է իր առաջնորդող հոդվածում «Նեպսաբադշագ» թերթը,—
ծանոթանալով ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշմանը, միահամուռ ընդու-
նած իր որոշման մեջ արձանագրեց, որ ինքը լիովին հավանություն է տալիս
ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշմանը։ Հունգարիայի սոցիալիստական բան-
վորական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն ողջունում է այն վճռականու-
թյունը, որով ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն առանց անձնավորությանը նա-
յելու, պաշտպանեց պարտիայի միասնությունը և XX համագումարի գլխա-
վոր գիծը»։

«Տրիբունա լյուդու» թերթը առաջնորդողում գրում է. «Այն ամենը, ինչ
ամրապնդում է ՍՄԿՊ Միասնությունը և Սովետական Միության ստեղծագոր-
ծական զարգացման ուղի է հարթում, միաժամանակ ամրապնդում է սոցիա-
լիզմի և խաղաղության ուժերը։ Մեր պարտիան համերաշխում է ՍՄԿՊ Կենտ-
կոմի պլենումի որոշումներին և դրանցում տեսնում է կենդանի, ստեղծագոր-
ծական մարքսիզմ-լենինիզմի հաղթանակը»։

Այս կարգի փաստերի թիվը կարելի է բազմապատկել, բայց սրանք էլ
բավական են ցույց տալու, թե ինչպիսի ջերմ արձագանք են գտել մեր պար-
տիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումի այդ միանգամայն ժամանակին,
լենինյան դիրքերից կայացրած որոշումները։

Գաղտնիք չէ, որ մեր պարտիայի և սովետական ժողովրդի թշնամիները
ուրիշ բան
սպասել չի կարելի թշնամիներից, նրանք հենց նրա համար են թշնամիներ,
որպեսզի վայրահաչեն։ Սակայն դա մեզ չի վախեցնում և բնավ չի կարող սա-
սանել մեր շարքերի միասնությունը, մեր ժողովրդի կուռ համախմբվածությու-
նը իր հարազատ Կոմունիստական պարտիայի շուրջը։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումներից մենք պար-
տավոր ենք լուրջ եզրակացություններ հանել բոլոր բնագավառներում կատար-
վող մեր աշխատանքների համար։ Այդ կապակցությամբ մեծ ու անհետա-
ձգելի խնդիրներ են դրված մեր իդեոլոգիական ֆրոնտի աշխատողների առաջ։
Պետք է ամեն կերպ բարձրացնել իդեոլոգիական աշխատանքի, մեր պրոպա-
գանդի մակարդակը, դարձնել այն քաղաքականապես ավելի սուր, ավելի հար-
ձակողական։

Պարտիական կազմակերպությունների կողմից մասսաների մեջ տարվող
քաղաքական աշխատանքը պետք է ուղղված լինի նրանց ռևոլյուցիոն զգոնու-
թյան բարձրացման, պարտիայի և ժողովրդի կապերի հետագա էլ ավելի ամ-
րապնդման գործին։ Լենինյան պարտիականության դիրքերից պետք է անողոք
քննադատության ենթարկել պարտիայի գծից կատարվող ամեն մի շեղում,
ում կողմից էլ որ նա լինի, ամեն կերպ պահպանել մարքսիստական-լենինյան
թեորիայի անաղարտությունը։

Գաղտնիք չէ, որ վերջին տարիներին մեզ մոտ իդեոլոգիական աշխա-
տանքներում եղած լուրջ հաջողությունների կողքին ունենք լուրջ թերություն-
ներ ու սխալներ։ Վերջերս լույս տեսած առանձին գրքերում, հոդվածներում և

*այլ նյութերի մեջ մեր ժողովրդի անցյալի ժառանգության, հասարակական հոսանքների ու պարտիաների գնահատման գործում թույլ են տրվում սխալ, մարքսիզմ-լենինիզմին խորթ տեսակետներ։*

*Սոցիալիստական ռեալիզմի, գրականության խնդիրները վատ ըմբռնելու հետևանքով մի շարք աղավաղումներ են թույլ տրված սովետահայ գրողների առանձին գործերում։ Կյանքի գունազարդման երևույթների դեմ մղվող պայքարի պատրվակի տակ որոշ գրողներ փորձում են խտացրած գույներով ներկայացնել մեր կյանքում եղած թերությունները, սխալ ընդհանրացումներ կատարելով։*

*Սովետական գրողի սրբազան պարտքն է փառաբանել իր Հայրենիքը, իր ժողովրդի հերոսական պայքարն ու անձնվեր աշխատանքը։ Սակայն այդ պետք է անել վարպետ գրչով, գաղափարական բարձր մակարդակով։*

*Սովետական գրողների հայրենասիրական պարտքն է նոր երգերով ու նոր թափով գովերգել կոմունիզմ կառուցող նոր մարդու սխրագործությունները, ցույց տալ, թե ինչպես է այդ մարդը համառ պայքարով հաղթահարել իր ճանապարհին եղած արգելքները, վերափոխել է իր Հայրենիքը, նրան ավելի հարուստ, ուժեղ ու գեղեցիկ է դարձրել։*

*Կասկած չկա, որ Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի և նրանց հարած Շեպիլովի ֆրակցիոն, հակապարտիական խմբի մերկացումը կնպաստի մեր պարտիայի շարքերի լենինյան միասնության է՛լ ավելի ամրապնդմանը։ Հանդես գալով ամենուրեք տեղի ունեցող պարտիական ակտիվների, սկզբնական պարտիական կազմակերպությունների և բանվորների, կոլտնտեսականների ու ինտելիգենցիայի ընդհանուր ժողովներում, սովետական մարդիկ՝ կոմունիստներն ու անպարտիականները, անկեղծաբար հայտարարում են, թե ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումը պերճախոս ապացույց է, որ Կենտրոնական Կոմիտեն հաստատակամ և հետևողական պայքար է մղում ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործման համար։ Մերկացնելով ու դեն նետելով իր ճանապարհից մեր երկրի առաջընթացն արգելակող կարիերիստների ու թալմուդիստների այդ խումբը, մեր պարտիան՝ նոր եռանդով լցված, տանում է մեր երկիրը դեպի կոմունիզմի նոր հաղթանակներ։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի լենինյան միասնությունը անսասան է։*

---

# ՀԱՆՈՒՆ ԿԱԹԻ, ՅՈՒՂԻ ԵՎ ՄՍԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ

*Սովետական երկրի բազմամիլիոն ժողովուրդը աշխատանքային անսահման խանդավառությամբ պատրաստվում է դիմավորելու իր կյանքի ու պայքարի ամենանշանակալից տարելիցը՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասունամյակը։ Սովետական յուրաքանչյուր քաղաքացի ամեն ինչ անում է, որպեսզի նորանոր փայլուն հաջողություններով դիմավորի համաժողովրդական այդ մեծ տոնը։*

*Անցած 40 տարիների ընթացքում սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեր երբեմնի տնտեսապես հետամնաց երկիրը դարձրեց աշխարհի ամենահզոր տերություններից մեկը, որը սոցիալիզմի, խաղաղության ու դեմոկրատիայի համար մղվող պայքարի աննկուն դրոշակակիրն է։*

*Հենվելով սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման բնագավառում ձեռք բերած խոշոր հաջողությունների վրա, սովետական ստեղծագործ ժողովուրդն այժմ բազմապատկված եռանդով խիզախում է ավելի շատ նյութական բարիքներ ստեղծելու, ավելի բարձր մակարդակի հասցնելու մեր ամեն մի քաղաքացու նյութական, կուլտուրական մակարդակը։ Այդ գործում վճռական նշանակություն ունի սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացումը, որի համար պարտիան ու կառավարությունը ստեղծել և ստեղծում են բոլոր պայմանները։*

*ՌՍՖՍՌ Հյուսիս-արևմուտքի մարզերի և ավտոնոմ ռեսպուբլիկաների գյուղատնտեսության աշխատողների՝ Լենինգրադ քաղաքում կայացած խորհրդակցությունում ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Ն. Ս. Խրուշչովն իր ճառում վերլուծելով սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման հարցերը, նշեց, որ «Սովետական երկրում հասունացել են բոլոր հնարավորությունները՝ բնակչության մեկ շնչին ընկնող անասնաբուծական մթերքների արտադրությամբ մոտ տարիներս Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու համար»։*

*Ցույց տալով այդ կարևոր հարցի լուծման ուղիներն ու հնարավորությունները՝ ընկեր Խրուշչովը պարտիայի անունից ուղղակի կերպով ասաց. «Հենվելով սոցիալիստական ինդուստրիայի վրա, մենք վստահորեն խնդիր ենք դնում ապահովել մսի, կաթի, յուղի արտադրությունը բնակչության մեկ շնչին ընկնող նույնպիսի չափերով, ինչպիսիք ունեն այսօր Ամերիկայի Միացյալ Նահանգները»։*

*Արձագանքելով Կոմունիստական պարտիայի այդ լուրջ կոչին, այժմ ամբողջ երկրով մեկ համաժողովրդական ծավալուն շարժում է սկսվել անասնաբուծական մթերքների արտադրությունը մեծ չափերով ավելացնելու համար։*

Սովետական մարդիկ պարտիայի կողմից առաջադրված այդ կարևոր խնդրի
լուծումը դիտում են որպես պետական-տնտեսական մեծ նշանակություն ունե-
ցող գործ, որի հաջող կատարումը մի անգամ ևս կդրսևորի կապիտալիստական
սիստեմի հետ տնտեսական մրցության պայքարում սոցիալիստական սիստե-
մի գերազանցությունը։ Մեր մեծ Հայրենիքի շատ մարզեր, երկրամասեր, ռես-
պուբլիկաներ, բազմաթիվ շրջաններ, կոլտնտեսություններ ու սովետական
տնտեսություններ բարձր պարտավորություններ են վերցնում ավելի շատ
անասնաբուծական մթերքներ արտադրելու համար։

Միայն ուրախության հուզմունքով կարելի է նշել Կրասնոդարի, Ստավրո-
պոլի երկրամասերի, Մոսկվայի, Լենինգրադի մարզերի, Ուկրաինական ՍՍՌ-ի,
Մոլդավական ՍՍՌ-ի և շատ ուրիշ մարզերի ու երկրամասերի, ինչպես նաև
հազարավոր կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների վեր-
ջերս վերցրած սոցիալիստական բարձր պարտավորությունները՝ անասնաբու-
ծական մթերքների արտադրությունը շեշտակի կերպով ավելացնելու վերաբե-
րյալ։ Վորոնեժի մարզը, անասնաբուծական մթերքների արտադրանքն ավե-
լացնելու համար, մտնելով համաժողովրդական սոցիալիստական մրցության
մեջ՝ պարտավորվել է 1960 թվականին յուրաքանչյուր 100 հեկտար հողատա-
րածության դիմաց ստանալ միս՝ 151 ցենտներ, կաթ՝ 489 ցենտներ։ Ստավ-
րոպոլի մարզը պարտավորվել է 1960 թվականին յուրաքանչյուր 100 հեկտար
հողատարածության դիմաց ստանալ 500 կիլոգրամ բարձրորակ բուրդ, 1957
թվականի 270 կիլոգրամի դիմաց։ Չուվաշական ԱՍՍՌ Շումերլինսկու շրջանի
Վորոշիլովի անվան կոլտնտեսությունը պարտավորվել է յուրաքանչյուր 100
հեկտար հողատարածության դիմաց 1960 թվականին ստանալ միս՝ 120 ցենտ-
ներ, կաթ՝ 400 ցենտներ։ Ղազախական ՍՍՌ Ջամբուլի մարզի «Հաղթանակ»
կոլտնտեսությունը պայքարում է 1960 թվականին յուրաքանչյուր 100 հեկտար
հողատարածության դիմաց 510 կիլոգրամ բուրդ ստանալու համար։

Կրասնոդարի երկրամասի աշխատավորները պատվով կատարելով իրենց
սոցիալիստական պարտավորությունները՝ կաթի ու մսի մթերման և գնման այս
տարվա կիսամյա պլանը կատարել են ժամկետից շուտ։ Անցյալ տարվա նույն
ժամանակի հետ համեմատած ավելի է մթերված ու գնված կաթ՝ 64 հազար
տոննա, միս՝ 14,2 տոննա, ձու՝ 40 միլիոն հատ։

Այդ ամենն անվիճելի կերպով ցույց են տալիս երկրում եղած անսահ-
ման հնարավորությունները և մինչ այժմ չօգտագործված ռեզերվների առկա-
յությունը, որոնց գործողության մեջ դնելը մեծապես կնպաստի անասնաբու-
ծական մթերքների արտադրության ավելացմանը։

Անասնաբուծական մթերքների արտադրությունը շեշտակի կերպով ավե-
լացնելու մասին Կոմունիստական պարտիայի առաջադրած այդ ծրագրային
մեծ խնդիրը բարձր խանդավառությամբ ընդունվեց Սովետական Հայաստա-
նում։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորությունը, պարտիական,
սովետական կազմակերպությունները և գյուղատնտեսական օրգաններն ու
մասնագետները հետևելով առաջավորների օրինակին՝ բարձր պարտավորու-
թյուններ են ստանձնել առաջիկա տարիներում խոշոր չափով ավելացնելու
անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Շահումյանի շրջանի կոլտնտեսությունները պարտավորվել են 1957 թվա-
կանին կաթի արտադրությունը 100 հեկտար հողատարածությունների դիմաց
հասցնել 410 ցենտների, մսինը՝ 85 ցենտների, իսկ 1960 թվականին կաթի



արտադրությունը՝ 517 ցենտների և մսինը՝ 110 ցենտների։ Այդ շրջանի Ստալինի
անվան կոլտնտեսությունը պայքարում է յուրաքանչյուր 100 հեկտար հողա-
տարածությունների դիմաց 1957 թվականին կաթի արտադրությունը հասցնել
720 ցենտների, մսի արտադրությունը՝ 120 ցենտների, իսկ 1960 թվականին
համապատասխանորեն կաթի արտադրությունը՝ 820 ցենտների, մսի արտա-
դրությունը՝ 130 ցենտների։

Կալինինոյի շրջանի կոլտնտեսությունները պարտավորվել են յուրաքան-
չյուր 100 հեկտար հողատարածության դիմաց 1960 թվականին կաթի արտա-
դրությունը հասցնել 460 ցենտների։

Կաթի, մսի և անասնաբուծական մյուս մթերքների արտադրությունն
ավելացնելու համար, անցած տարիների համեմատությամբ, բարձր պարտա-
վորություններ են վերցրել նաև մյուս շրջանները, կոլտնտեսությունները ու
սովետական տնտեսությունները։

Մեր ռեսպուբլիկայում եղած հնարավորությունները, անշուշտ, թույլ են
տալիս վերցրած սոցիալիստական պարտավորությունները կյանքում լրիվ իրա-
կանացնել, եթե միայն խելացի ու մտածված կերպով օգտագործվեն այդ
հնարավորությունները։

Շրջանային պարտիական, սովետական կազմակերպությունները, ՄՏ
կայանների, կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների ղեկա-
վարները և սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է հետև-
ողական պայքար ծավալեն և գյուղատնտեսական բոլոր աշխատողներին
ոտքի հանեն ստանձնած պարտավորությունները ժամանակին կատարելու
համար։

Յուրաքանչյուր կոլտնտեսությունում և սովետական տնտեսությունում
մտածված միջոցառումներ պետք է մշակել և, հաշվի առնելով ամեն մի տնտե-
սության առանձնահատկությունները, գործողության մեջ դնել բոլոր ռեզերվ-
ները այն հաշվով, որպեսզի աշխատանքի և միջոցների նվազագույն ծախ-
սումներով՝ ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ արտադրվեն։

Առավել ուշադրություն պետք է դարձնել կերի կայուն բազայի ստեղծման
վրա։ Մեր ռեսպուբլիկայի բնակլիմայական և տնտեսական յուրահատուկ
պայմանները թելադրում են ավելի մեծ ջանքեր գործադրել կերի արտադրու-
թյունը ավելացնելու և հանրային հոտը անհրաժեշտ չափով կոշտ ու հյութալի
կերով ապահովելու համար։ Պետք է նկատի ունենալ, որ անասնաբուծական
մթերքների արտադրությունը գերազանցապես կախված է կերի արտադրու-
թյունն ավելացնելուց։ Դրա համար, ելնելով տնտեսական շահավետության
տեսակետից, անհրաժեշտ փոփոխություն պետք է մտցնել մինչև այժմ գործող
ցանքատարածությունների ստրուկտուրայում՝ հնարավորին չափ ավելացնելով
կերային կուլտուրաների ու արմատապտուղների ցանքատարածությունները ի
հաշիվ տնտեսական քիչ նշանակություն ունեցող և ցածր բերքատու կուլտու-
րաների։ Հատուկ ուշադրություն պետք է դարձնել եգիպտացորենի մշակու-
թյան և նրա բերքատվության բարձրացման վրա, ինչպես նաև առվույտի,
կորնգանի, կերի արմատապտուղների և մյուս կուլտուրաների ցանքերի մշա-
կության և բերքատվության բարձրացման վրա։ Նշված միջոցառումների հետ
միասին պետք է բարելավել բնական մարգագետինների ու արոտների խնամ-
քը, որը կնպաստի կերի անհրաժեշտ պաշարներ ստեղծելու գործին։

Ընթացիկ տարում բարենպաստ պայմաններ են ստեղծվել ավելի շատ

կոշտ ու հյութալի կեր կուտակելու համար: Ռեսպուբլիկայի համարյա բոլոր
շրջաններում բնական և ցանովի կերաբույսերի առատ բերք է սպասվում:
Պարտիական կազմակերպությունները, ՄՏ կայանների, կոլտնտեսություննե-
րի և սովետական տնտեսությունների ղեկավարները ամեն ջանք պետք է
գործադրեն խոտհնձի և սիլոսացման աշխատանքները կազմակերպված ու
սեղմ ժամկետներում ավարտելու համար: Լուրջ միջոցներ պետք է ձեռք առնել
խոտհնձի ընթացքում կորուստներն ու հնձված խոտի փչացումները կանխելու,
սիլոսացման աշխատանքները բարձր որակով կատարելու ուղղությամբ:
Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովետական տնտեսու-
թյուններում առանձնապես անբավարար վիճակում է գտնվում մսի արտա-
դրությունը: Պետք է ընդգծել, որ այս ուղղությամբ եղած բոլոր հնարավորու-
թյուններն ու ռեզերվները միանգամայն վատ են օգտագործվում: Շատ շրջան-
ներում (Արթիկ, Թալին, Սիսիան) հետևողական աշխատանք չի տարվում
անասունների գլխաքանակի պահպանման և հոտի վերարտադրության նորմալ
վիճակ ստեղծելու գործում: Չի կարելի հանդուրժել, երբ այդ շրջաններում
փոխանակ աճելու, ընդհակառակը պակասում է մանր և խոշոր եղջերավոր
անասունների, հատկապես կովերի գլխաքանակը: Անբավարար է խոզերի
գլխաքանակի աճը և թռչնաբուծության զարգացումը:
Անցյալ տնտեսական տարվա ընթացքում ռեսպուբլիկայի կոլտնտեսու-
թյուններում յուրաքանչյուր 100 կովից ստացվել է 76 հորթ, 100 մայր ոչխա-
րից՝ 73 գառ և 100 խոզամայրից՝ 461 խոճկոր: Այս թվերը ցույց են տալիս,
թե մեր վատ աշխատանքի հետևանքով գլխաքանակի ինչպիսի կորուստ ենք
ունենում:
Այսպիսի երևույթներին վերջ տալու համար պարտիական կազմակերպու-
թյունները, կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների ղեկա-
վարները և հողային օրգանները կոնկրետ միջոցներ պետք է ձեռք առնեն
անասունների անկումները կանխելու, մայրական կազմի մեջ եղած ստերջու-
թյունը վերացնելու համար:
Հաշվարկումները ցույց են տալիս, որ միայն ստերջության տոկոսը մի-
նիմումի հասցնելու դեպքում անասունների գլխաքանակը կավելանա մոտ
20—25 տոկոսով:
Մսի արտադրությունն ավելացնելու լուրջ ռեզերվ է հանդիսանում անա-
սունների բտման և արոտային գիրացման գործի կազմակերպումը: Պետք է
վերջ տրվի մինչև այժմ գոյություն ունեցող այն վնասակար պրակտիկային,
երբ շատ կոլտնտեսություններ և սովետական տնտեսություններ պետությանն
են հանձնում և վաճառում չգերացված, ցածր կենդանի քաշով անասուններ:
Դեռ ավելին. բազմաթիվ տնտեսություններ մսամթերման դիմաց հանձնում են
մեծ քանակով մատղաշ անասուններ, որոնք իրենց քաշով ու գերությամբ շատ
ցածր են:
Կոլտնտեսություններում, սովետական տնտեսություններում և մթերված
անասունների գերացման կետերում պետք է արմատապես բարելավել մացու
անասունների բտումը և արոտային գերացումը, առանց որի հնարավոր չէ
շատ և լավորակ միս արտադրել: Առավել ուշադրություն պետք է դարձնել
խոզաբուծության զարգացման վրա, որպես մսի արտադրության ավելացման
կարևորագույն աղբյուրներից մեկը: Այս ուղղությամբ որոշ շրջաններում և
շատ կոլտնտեսություններում դեռևս շարունակվող պահպանողական վերա-

Տ. № 2—22



բերմունքը և այդ գործի տնտեսական էֆեկտիվության չհասկանալը լուրջ վնաս
է հասցնում մսի արտադրության ավելացմանը:
Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները
լայն հնարավորություններ ունեն թռչնաբուծությունը զարգացնելու և սպի-
տակ մսի արտադրությունն ավելացնելու համար: Մինչդեռ ներկայումս մսի
համախառն արտադրանքի մեջ թռչունի մսի տեսակարար կշիռն աննշան մաս
է կազմում: Անհրաժեշտ է լուրջ ուշադրություն դարձնել կոլտնտեսություննե-
րում և սովետական տնտեսություններում թռչունների գլխաքանակը ավելաց-
նելու, ֆերմաներում ածան հավերի թիվը շատացնելու և նրանց խնամքի բա-
րելավման միջոցով ձվատվությունը ավելացնելու վրա: Շատ շրջաններում և,
հատկապես, Սևանի ավազանի շրջանների բազմաթիվ կոլտնտեսություններում
պետք է շատացնել լողացող թռչունների թիվը, որի համար լայն հնարավո-
րություններ կան:
Պարտիական, սովետական կազմակերպությունները, գյուղատնտեսական
օրգաններն ու գյուղատնտեսական գիտա-հետազոտական հիմնարկների աշ-
խատողները ամենօրյա օգնություն պետք է ցույց տան կոլտնտեսություններին
և սովետական տնտեսություններին՝ անասնաբուծական մթերքների արտա-
դրությունն ավելացնելու ուղղությամբ վերցրած պարտավորությունները կա-
տարելու համար: Դա համաժողովրդական, համապետական կարևոր նշանա-
կություն ունեցող խնդիր է, որի կենսագործման վրա մեր պարտիան առանձ-
նահատուկ ուշադրություն է դարձնում:
Ելնելով մեր Հայրենիքի ու սովետական ժողովրդի շահերից, ՍՄԿՊ Կենտ-
կոմը վերջին տարիներս մի շարք միջոցառումներ ձեռնարկեց երկրի գյուղա-
տնտեսության շեշտակի վերելքն ապահովելու համար: Պարտիայի այդ քա-
ղաքականությանը դեմ գնալով՝ Գ. Մալենկովի, Լ. Կագանովիչի և Վ. Մոլո-
տովի հակապարտիական խումբը ձգտում էր ձախողել ինչպես ժողովրդական
տնտեսության մյուս ճյուղերի, այնպես էլ գյուղատնտեսության հետագա
զարգացման ուղղությամբ պարտիայի ձեռնարկած միջոցառումների կատա-
րումը: Նրանք ոչ մի բանով չարդարացված պայքար էին մղում բնակչության
մեկ շնչին ընկնող կաթի, յուղի ու մսի արտադրությամբ մոտ տարիներս
ԱՄՆ-ին հասնելու վերաբերյալ պարտիայի կոչի դեմ, մի կոչ, որը ակտիվորեն
պաշտպանեցին կոլտնտեսությունները, մարզերը, ռեսպուբլիկաները, կոլ-
տնտեսային գյուղացիությունն ու մեր երկրի ամբողջ աշխատավորությունը:
Բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, յուղի ու մսի արտադրությամբ մոտ
տարիներս ԱՄՆ-ին հասնելու մասին մեր պարտիայի լոզունգը ժողովրդի
բարեկեցության հետագա բարձրացման նկատմամբ Կոմունիստական պար-
տիայի անդուլ հոգատարության մի նոր արտահայտությունն է: Հանդես գալով
այդ լոզունգի դեմ, Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի հակապարտիական
խումբը և նրան հարող Շեպիլովը աղայական-արհամարհական վերաբեր-
մունք ցուցաբերեցին մասսաների հիմնական կենսական շահերի նկատմամբ
և իրենց թերահավատությունը սոցիալիստական տնտեսության մեջ առկա
հսկայական հնարավորությունների նկատմամբ, անասնաբուծության արտա-
դրանքի արագ վերելքի համար ծավալված համաժողովրդական շարժման
նկատմամբ: Պարտիան ջախջախիչ հարված հասցնելով հակապարտիական
այդ խմբին, նորանոր միջոցներ է ձեռնարկում ժողովրդական տնտեսությունը

բուռն կերպով զարգացնելու և, հատկապես, անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար լայն խթան կհանդիսանա ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ «Կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների տնտեսություններից պետությանը գյուղատնտեսական մթերքների պարտադիր հանձնումները վերացնելու մասին» որոշումը։ Այն կոգեշնչի գյուղատնտեսության բնագավառի աշխատողներին՝ է՛լ ավելի ծավալելու սոցիալիստական մրցությունը գյուղատնտեսական հողատարածության 100 հեկտարի դիմաց 100 և ավելի ցենտներ միս, 400 և ավելի ցենտներ կաթ ստանալու համար, այն հաշվով, որ բնակչության մեկ շնչին ընկնող անասնաբուծական մթերքների արտադրությամբ մոտակա տարիներին հասնենք Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Տարակույս չկա, որ այդ խնդիրը կլուծվի։

---

# ԼԵՆԻՆԻ ԱՎԱՆԴՆԵՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՄԱՄԲ

Շ. ԱՌՈՒՇԱՆՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի նախագահության նախագահ

Կապիտալիզմը վաղուց ի վեր հասունացել ու գերհասունացել է։ Այն սպառել է իրեն և դարձել մարդկության զարգացման ռեակցիոն պատնեշ։ Մի բուռ միլիարդատերերի և միլիոնատերերի կեղեքող ոհմակը մարդկությանը ոճրագործորեն մղել է և շարունակում է դեռ մղել դեպի համաշխարհային սպանդը, կործանելով միլիոնավոր աշխատավորների կյանքը միայն հանուն նրա, թե գիշատիչների որ խումբը պետք է իշխի ու կեղեքի աշխարհը։

Եվ ահա, առաջին իմպերիալիստական պատերազմի տարիներին հարյուր միլիոններ գիտակցելով այս դառն ճշմարտությունը՝ ծառս եղան աշխարհը հոշոտող իմպերիալիզմի դեմ, ու կապիտալիզմի կրախն անխուսափելի դարձավ։ Կապիտալիստները «լավագույն» դեպքում կարող են հետաձգել այս կամ այն երկրում սոցիալիզմի հաղթանակը, սակայն կապիտալիզմը փրկել վերջնական կործանումից՝ նրանք միանգամայն անզոր են, ասում է Լենինը։

Ճիշտ այդպես էլ եղավ։ Քառասուն տարի առաջ կատարված Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան հիմնովին փշրեց կապիտալիստական սիստեմի ողնաշարը։ Սկսվեց ժողովուրդների քաղաքական պայքարի զարթոնքի, սոցիալիստական ռևոլյուցիաների հաղթության և իմպերիալիզմի կործանման դարաշրջանը։

Լենինի այս գիտական մարգարեությունը իրականացավ Հոկտեմբերյան աշխարհաստեղծ ռևոլյուցիայի հաղթանակով։ Պատմության մեջ առաջին անգամ ստեղծվեց բոլորովին նոր տիպի պետություն, որն իր թե՛ նպատակով, և թե՛ սոցիալական բնությամբ մինչև այդ եղած պետական բոլոր սիստեմների հակապատկերն է հանդիսանում։

1917 թվականին հաստատելով պրոլետարիատի դիկտատուրան բանվորագյուղացիական Սովետների ձևով, կոմունիստների պարտիան լուրջ դժվարությունների հաղթահարմամբ՝ տանում է մեր երկիրը դեպի կոմունիզմ։

Խիստ ուշագրավ է, որ տակավին 1919 թվականին, Սովետական պետության երկամյա գոյության պայմաններում, Լենինը խաղաղ մրցման կոչեց ԱՄՆ-ի բուրժուազիային, որը խաբում է ժողովրդին հավասարության, ազատության և դեմոկրատիայի լոզունգներով։ Մինչդեռ իրականում և ոչ մի բուրժուական պետություն չի հանդգնում մեր պետության հետ մրցակցել իրական ազատության, հավասարության և դեմոկրատիայի կիրառման գործում։

Հիրավի, այսօր, արդեն, երբ ՍՍՌՄ-ը դարձել է ամբողջ առաջավոր մարդ-

կության լավագույն իղձերի մարմնացումը, մեր թշնամիներն անգամ չեն կարող հերքել, որ անցած քառասուն տարիներին փարթամորեն ծաղկեց սովետական դեմոկրատիան, որն իսկական ազատություն և կյանքի բարգավաճում ապահովեց հարյուր միլիոնավոր աշխատավորներին։ Առաջին իմպերիալիստական պատերազմի արհավիրքները մի կողմից, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը մեր երկրում, մյուս կողմից, պատռեցին բուրժուական դեմոկրատիայի խաբուսիկ քողը, հիմնովին մերկացրին իմպերիալիզմի վահրոտ մարմինը և աշխարհով մեկ ցնցեցին նրա փտած վերնաշենքը։

Բացահայտելով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի զարգացման օրինաչափությունները՝ Լենինը մատնանշեց, որ անցման շրջանը լինելու է մեռնող կապիտալիզմի և ծնվող կոմունիզմի միջև մղվող ծանր պայքարի մի շրջան, երբ պարտված, բայց դեռ չոչնչացված կապիտալիզմը ամեն կերպ պիտի դիմադրի կոմունիզմի հաղթական երթին։

Ազգայնացնելով արդյունաբերությունը, հողը, տրանսպորտը, բանկերն ու հասարակական նշանակություն ունեցող այլ ձեռնարկություններ, երիտասարդ Սովետական պետությունը ամուր հիմքերը դրեց այն բանի, որպեսզի սոցիալիզմը գերաճեր կոմունիզմի։ Անցած քառասուն տարիների ընթացքում Լենինի պարտիայի ղեկավարությամբ մեր երկիրն ընթացավ հենց այդ ուղիներով, և սոցիալիզմի գործը հաղթանակեց անվերադառնալիորեն։

Որքա՜ն իմաստուն և ուսանելի են ռևոլյուցիայի թեժ օրերին արտահայտած մեծ Լենինի մտքերը Սովետական պետության հերթական խնդիրների մասին։ Քաղաքացիական կռիվների ծանր տարիներին նա կոմունիզմի հաղթության կարևորագույն առհավատչյան էր համարում պրոլետարական աշխատանքային կարգապահության արմատավորումը։ Կապիտալիստական աշխատանքային կարգապահությունը, որը հիմնված էր աշխատավորական զանգվածների կիսաքաղց վիճակի վրա, մեր երկրում տեղի տվեց կոմունիստական աշխատանքային կարգապահությանը, որը բխում է աշխատանքի հանդեպ ցուցաբերած միլիոնների գիտակցական վերաբերմունքից։ Ուստի և բնական էր, որ հենց այդ ազատ գիտակցության հիման վրա, քաղաքացիական կռիվների բովում ծագած ու արմատավորված սոցիալիստական մրցությունը շատ շուտով դարձավ սոցիալիզմի կառուցման նորագույն աշխատաձևը։

Հիրավի, անցած քառասուն տարիների մեր նվաճումների համար ամենից շատ պարտական ենք մեր անձնվեր աշխատավորության սոցիալիստական մրցության բնագավառում դրսևորած անօրինակ հերոսությանը։ Իր հանճարի խորաթափանցությամբ Լենինը առաջին շաբաթօրյակների մեջ տեսավ կոմունիզմի հաղթության ամենավճռական գրավականը։ Չկա մեր երկրում որևէ ձեռնարկություն կամ հասարակական կոլեկտիվ, որն իր աշխատանքային սխրագործություններով չիրագործի մեծ Լենինի ավանդները։

Լինելով բանվորների և աշխատավորների իրական շահերի պաշտպանության բարձրագույն հաստատություն, Սովետական պետությունը հանդիսացավ Կոմունիստական պարտիայի վեհ նպատակի՝ կոմունիզմի կառուցման մասսայական և անփոխարինելի գործիքը։ Շնորհիվ մասսաների եռանդուն մասնակցության, բանվորների և գյուղացիների Սովետները հար և անվերջ կատարելագործում են իրենց գործունեության մեթոդները։

Խիստ բնորոշ է, որ իր ստեղծման առաջին իսկ օրից պրոլետարական պետությունը հանդիսացավ ո՛չ միայն բուրժուազիայի և շահագործողների դիմա-



դրությունը ճնշող միջոց, այլև ողջ հասարակական տնտեսությունը, կուլտուրան սոցիալիստական հիմունքներով վերակառուցելու զանգվածային հաստատություն։ Ահա թե ինչու Լենինը բազմիցս նշել է, որ պրոլետարական պետության ամենաբնորոշ կողմը բռնությունը չէ, թեև նա անսքող բռնանում է այն ամենի դեմ, ինչ որևէ ձևով խանգարում է սոցիալիստական կարգերի ամրապնդմանը։ Նրա «գլխավոր էությունը աշխատավորության առաջավոր ջոկատի կազմակերպվածությունն ու կարգապահությունն է»։ Պրոլետարիատի պետությունն առավելապես միլիոնավոր աշխատավորների կազմակերպման, դաստիարակման և կուլտուրական մակարդակի բարձրացման մեծագույն միջոցն է։

Այս տեսանկյունից նայելով մեր անցած ուղուն՝ պետք է նշենք, որ Սովետների կատարած դերը իրոք անգնահատելի է։ Ահա թե ինչու ճիշտ էր մեր ուսուցիչ Լենինը, երբ ընդգծում էր, որ միայն պրոլետարիատի պետությունն է, որ ի վիճակի է ազատելու մարդկությունը կապիտալի լծից, բուրժուական դեմոկրատիայի ստից ու կեղծիքից, ապահովելու իրական դեմոկրատիա աշխատավորների համար։

Մի՞թե դրա լավագույն ապացույցը չէ այն անկապտելի իրողությունը, որ Սովետներում ղեկավարում ու երկիրը կառավարում են բացառապես աշխատավորները։ Չէ՞ որ նման բան հայտնի չէր պատմությանը նախքան Հոկտեմբերը։ Ուստի մենք գոհունակությամբ ենք նշում, որ Սովետներն իբրև պրոլետարիատի իշխանության, բանվորների և գյուղացիների դաշինքի ամենակենսունակ ու նոր ձև՝ փայլուն կերպով արդարացրին իրենց։ Պատմության առջև Սովետների բռնած քննությունը մի անգամ ևս ապացուցեց Լենինի ուսմունքի ճշտությունը, նրա հանճարի ուժը։

Լենինը ուսուցանում էր, որ պրոլետարիատի նպատակն է՝ անհապաղ կազմակերպել խոշոր մեքենայական արտադրություն և կապիտալիզմի ավերակների վրա կառուցել սոցիալիստական հասարակություն։ Կենսագործելով Լենինի այդ պատգամը, մեր պարտիայի լենինյան ղեկավարության շնորհիվ երբեմնի հետամնաց Ռուսաստանը դարձավ աշխարհի հզորագույն սոցիալիստական պետություն, ողջ սոցիալիստական լագերի պարագլուխը։ Ահա թե ինչու ամբողջ աշխարհի առաջավոր մարդկությունը պատրաստվում է մեզ հետ միասին տոնելու մեծ Հոկտեմբերի քառասունամյակը։

Իբրև պրոլետարական և աշխատավորական լայն զանգվածների շահերի հարազատ պաշտպան պետական մի սիստեմ, Սովետների օրինակը դարձել է ուղեցույց բազմաթիվ ժողովուրդների համար, որոնք ընթանում են սոցիալիզմի ուղիով։

Հայ ժողովուրդը, որը դարերի ընթացքում կորցրել էր իր պետականությունը, միայն շնորհիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ստեղծեց իր հարազատ պետությունը։ Միայն քաղաքականապես կույրերը և մեր մոլի թշնամիները կարող են հանդգնել վիճարկելու այն հսկայական բարերար ազդեցությունը, որպիսին ունեցավ հայ ժողովրդի նյութական և հոգեկան կուլտուրայի բարգավաճման վրա Սովետական իշխանության գոյությունը։ Սովետների՝ կոմունիզմի կառուցման այդ բացառիկ զենքի, տարիներում Հայաստանում աճեցին ո՛չ միայն տասնյակ հազարավոր կադրեր, որոնք փայլուն կերպով առաջ են մղում պետական շինարարության կարևորա-

գույն գործը, այլև մեր ժողովրդի մեջ պատվաստվեց սովետական իրավագիտակցությունը։

Կոմունիստական պարտիան անշեղորեն ղեկավարվելով Լենինի ցուցումներով՝ անցած 40 տարիների ընթացքում խոշոր աշխատանք կատարեց ամրապնդելով սովետական հասարակական և պետական կարգը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան, հավատարիմ Լենինի ուսմունքին, անցած 40 տարիների ընթացքում հսկայական աշխատանք կատարեց, որի շնորհիվ մեր երկիրը կարճ ժամանակամիջոցում վերածվեց հզոր, ինդուստրիալ-ագրարային երկրի։ ՍՍՌՄ-ում անհամեմատ արագ զարգացավ ծանր ինդուստրիան՝ սև և գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունը, ընդարձակվեց ածխի և նավթի արդյունաբերությունը, ստեղծվեց հզոր էլեկտրաէներգետիկ բազա և այլն։

Վ. Ի. Լենինի ցուցումները երկրի էլեկտրիֆիկացման մասին անշեղորեն իրագործվում են։ ՍՍՌՄ-ում 1956 թ. արտադրվեց 192 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, իսկ 1957 թ. այն կհասնի 211,2 միլիարդ կիլովատ ժամի։ Սովետական երկրի քաղաքները, գյուղերի մեծ մասը, բանվորական ավանները, երկաթուղային կայարանները, մեքենա-տրակտորային կայանները և այլն էլեկտրիֆիկացված են։

Սովետական ժողովուրդը հպարտությամբ նշում է, որ կենսագործելով Վ. Ի. Լենինի ավանդը երկրում ծանր ինդուստրիա ստեղծելու մասին, հասավ պատմական խոշոր հաջողությունների։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան, Սովետական կառավարությունը կենսագործելով Լենինի ցուցումները՝ ծանր ինդուստրիայի ստեղծման հետ միասին սոցիալիստական ռելսերի վրա դրին երկրի գյուղատնտեսությունը։

Այսօր, երբ մենք պատրաստվում ենք նշելու Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակը, կարող ենք հպարտությամբ ասել, որ ինչպես ծանր ինդուստրիայի, այնպես էլ գյուղատնտեսության բնագավառում մեր պարտիան, կառավարությունը, մեր ժողովուրդը ձեռք են բերել պատմական խոշոր հաջողություններ։ Այժմ մենք ունենք սոցիալիստական գյուղատնտեսություն՝ իր բարձր տեխնիկայով։ Բավական է ասել, որ վերջին երեք տարվա ընթացքում մշակվեցին ավելի քան 35 ու կես միլիոն հեկտար խամ ու խոպան հողեր, որը հնարավորություն տվեց միայն 1956 թ. հացի արտադրությունն ավելացնել երկրում ավելի քան 20 տոկոսով։ Միայն 1956 թվականին, 1955 թվականի հետ համեմատած, Սովետական պետությունը մթերեց ավելի քան մեկ միլիարդ փութ հացահատիկ։ 1956 թ. Սովետական պետությունը մթերեց ավելի շատ կաթ, միս, կարտոֆիլ, շաքարի ճակնդեղ, բամբակ, բուրդ և այլ գյուղատնտեսական մթերքներ։

Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ սոցիալիստական գյուղատնտեսությունն աճում, զարգանում և ձեռք է բերում նորանոր հաջողություններ։

Այսպիսով, Սովետական հասարակական և պետական կարգի ամրապնդման համար ստեղծվեցին նյութական այնպիսի բազաներ, ինչպիսին ծանր ինդուստրիան էր, երկրի էլեկտրիֆիկացիան, սոցիալիստական գյուղատնտեսությունը, որոնք խոշորագույն նշանակություն ունեն սովետական կարգերի հետագա առավել ամրապնդման համար։





Կոմունիստական պարտիան անշեղորեն ղեկավարվելով Վ. Ի. Լենինի ավանդներով, անցած 40 տարիների ընթացքում խոշոր աշխատանք է կատարել բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, քաղաքի և գյուղի կապն ամրապնդելու ուղղությամբ։

Վ. Ի. Լենինը մեզ ուսուցանում էր, որ «Դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը պրոլետարիատի և գյուղացիության դաշինքի ապահովումն է, որպեսզի պրոլետարիատը կարողանա պահել ղեկավար դերը և պետական իշխանությունը» (Վ. Ի. Լենին, հ. 32, էջ 633)։

1917 թ. հոկտեմբերին հաստատվեց բանվորների և գյուղացիների Սովետական պետությունը։ Այդ օրվանից մինչև այժմ, անսահմանորեն ամրացավ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը։ Իսկ դա ունի խոշոր նշանակություն։ Առանց բանվոր դասակարգի և գյուղացիության ամուր դաշինքի հնարավոր չէր հաղթել 1918—1921 թթ. քաղաքացիական կռիվներում, 1941—1945 թթ. Հայրենական Մեծ պատերազմում և չէր հաջողվի ապահովել երկրի ինդուստրացման գործը և գյուղի սոցիալիստական վերակառուցումը։

Սովետական հասարակական և պետական կարգի ամրապնդման գործում շատ խոշոր դեր խաղաց Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործումը։

Վ. Ի. Լենինի գլխավորությամբ մշակվեց և իրականացվեց մեր երկրում ազգային այնպիսի քաղաքականություն, որի հետևանքով ստեղծվեցին բոլոր պայմանները Սովետական Միության մեջ մտնող ազգերի և ժողովուրդների տնտեսական, տեխնիկական, կուլտուրական ծաղկման համար։ Սովետական Միության մեջ մտնող միութենական ռեսպուբլիկաներն անցած ժամանակաշրջանում ձեռք են բերել պատմական նշանակություն ունեցող հաջողություններ։

Մեր երկրում շատ են եղել կառավարական և պառլամենտական դելեգացիաներ սոցիալիստական լագերի երկրներից, ինչպես և կապիտալիստական երկրներից, որոնք տեսնում ու համոզվում են, թե ինչպես միութենական ռեսպուբլիկաներում ազգային ճիշտ քաղաքականության հետևանքով ձեռք են բերվել խոշոր հաջողություններ։ Վերցնենք Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան։ Նա մինչև Սովետական իշխանության հաստատվելը, իրենից ներկայացնում էր մի հետամնաց, ագրարային կախյալ երկիր։ Հայ ժողովուրդը ծանր վիճակ էր ապրում, երկիրը կործանվում էր։

Սովետական իշխանության հաստատումից հետո, անցած 37 տարիների ընթացքում, Սովետական Հայաստանը՝ որպես Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդ, ձեռք է բերել վիթխարի հաղթանակներ։ Սովետական Հայաստանը այսօր իրոք զարգացած ինդուստրիալ-ագրարային ռեսպուբլիկա է։ Երկրում ստեղծվել են արտադրական խոշոր կոմբինատներ, գործարաններ ու ֆաբրիկաներ։ Հայ ժողովուրդը կարող է պարծենալ գունավոր մետալուրգիայի, քիմիայի, մեքենաշինության, էլեկտրատեխնիկայի, թեթև ու սննդի արդյունաբերության խոշոր ձեռնարկություններով, որոնք երկրին տալիս են շատ ու շատ արտադրանք։

Հայ ժողովրդի հաջողությունները չեն սահմանափակվում միայն ինդուստրիայի բնագավառում։ Խոշոր աշխատանք է կատարված նաև գյուղի սոցիալիստական վերակառուցման, մեքենայացման, էլեկտրիֆիկացման ուղղությամբ։ Հայաստանում եղած 865 կոլտնտեսությունից 724-ը էլեկտրիֆիկաց-

ված են։ Բոլոր սովետական տնտեսությունները, մեքենա-տրակտորային կայանները նույնպես ապահովված են էլեկտրաէներգիայով։

Հայ ժողովրդի հաջողությունները խոշոր են գիտության, կուլտուրայի, արվեստի զարգացման գործում։

Այսօր, Սովետական Միության մեջ ամեն մի ռեսպուբլիկա իրենից ներկայացնում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության անշեղ կենսագործման փայլուն մարմնացումը։

Իրականություն են դարձել Վ. Ի. Լենինի կանխատեսումները ազգերի սոցիալիստական վերածնության մասին։ Վ. Ի. Լենինը 1921 թ. ապրիլի 14-ին Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին ուղղված նամակում գրել էր՝

«Ջերմագին ողջունելով Կովկասի Սովետական ռեսպուբլիկաները, ես ինձ թույլ եմ տալիս հույս հայտնել, որ նրանց սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում»։ (Վ. Ի. Լենին, հ. 32, էջ 402)։

Սովետական Միության բոլոր ժողովուրդները ընթանալով Կոմունիստական պարտիայի, Սովետական իշխանության գծած ուղիով՝ մեծ հաջողությամբ ստեղծեցին ՍՍՌՄ-ի մեջ մտնող բոլոր ժողովուրդների հզոր եղբայրություն։ Ղեկավարվելով Վ. Ի. Լենինի ուսմունքով, Կոմունիստական պարտիան խոշոր աշխատանք է կատարել և այժմ էլ կատարում է սովետական ժողովրդի բարոյական-քաղաքական միասնության ամրացման համար։ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին առանձնապես դրսևորվեցին ո՛չ միայն սովետական կարգի առավելությունները, այլև սովետական ժողովրդի անսասան քաղաքական-բարոյական կամքը։ Ոչ միայն այդ։ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի, միութենական ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների և տեղական Սովետների ընտրությունները, որտեղ մեր երկրի բոլոր ընտրողներն իրենց ձայնն են տալիս կոմունիստների և անպարտիականների ժողովրդական բլոկի թեկնածուների օգտին, դա ամենախոշոր և ամենափայլուն ապացույցն է մեր ժողովրդի բարոյական-քաղաքական միասնության։

Մարդկային հասարակության պատմությունը չգիտե ժողովուրդների այնպիսի բարոյական-քաղաքական միասնություն, ինչպիսին մեր երկրումն է։

Մենք համոզված ենք, որ այդպիսի քաղաքական-բարոյական միասնություն կլինի նաև սոցիալիստական լագերի մեջ մտնող բոլոր երկրներում, նրանց ժողովուրդների մեջ, որոնք իրենց կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարությամբ կառուցում են սոցիալիզմ։

Մեր երկրի բոլոր ժողովուրդներն իրենցից ներկայացնում են եղբայրական մի մեծ ընտանիք։ Չկա այլևս այն դրությունը, ինչ եղել է առաջ։ Ամենուրեք զարգանում է բարեկամությունը, եղբայրական փոխադարձ օգնությունը։ Այսօր էլ մեր առաջնակարգ խնդիրներից մեկը այդ բարեկամության առավել ամրապնդումը և զարգացումն է։

Խոշոր նշանակություն ունի սովետական ժողովրդի ստեղծագործական և ակտիվ մասնակցությունը մեր հասարակարգի ամրապնդման գործում։ Քաղաքում և գյուղում բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, մեր սովետական ինտելիգենցիան ամենուրեք ակտիվ մասնակցում են Կոմունիստական պարտիայի, Սովետական կառավարության կողմից առաջադրված տնտեսական, շինարարական, կուլտուրական, քաղաքական խնդիրների կենսագործմանը։ Առանց ժողովրդի ստեղծագործական ակտիվ մասնակցության, մենք չէինք կարող հասնել այսպիսի հաջողությունների։



Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը, հավատարիմ Վ. Ի. Լենինի ուսմունքին, մեր ռևոլյուցիայի առաջին օրվանից պայքարում են բոլոր երկրների ժողովուրդների և պետությունների հետ բարեկամություն և խաղաղություն պահպանելու համար։ Մեր ժողովուրդը միշտ հավանություն է տվել և այժմ էլ հավանություն է տալիս Սովետական Միության արտաքին քաղաքականությանը, որը բխում է մեր հայրենիքի հետագա հզորացման, կոմունիստական շինարարության, սովետական ժողովրդի բարօրության աճման շահերից։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ամենուրեք հանդես են գալիս սոցիալիստական լագերի հետ միասին, որպեսզի բոլոր երկրների պետությունների ժողովուրդների միջև ստեղծվի համագործակցություն, բարեկամություն հանուն խաղաղության, հանուն պրոգրեսի, հանուն ժողովուրդների բարի դրացիական գործակցության։

Սովետական հասարակական և պետական կարգի համար խոշոր նշանակություն ունի սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը և միութենական ռեսպուբլիկաների իրավունքների լայնացումը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի 6-րդ սեսիայի ընդունած որոշումները և օրենքները մեծ չափով նպաստելու են սովետական դեմոկրատիայի ծաղկմանն ու զարգացմանը, միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնմանը։

Այդ հանգամանքը նոր ու ավելի մեծ խնդիրներ է հարուցում և պատասխանատվություն է դնում միութենական ռեսպուբլիկաների վրա։ Անկասկած բոլոր ռեսպուբլիկաներն էլ պատվով կլուծեն այդ խնդիրները։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը բացահայտեց սոցիալիստական օրինականության խախտման կոպիտ փաստեր, նշեց դատական, դատախազական օրգանների աշխատանքներում եղած լուրջ սխալները և խնդիր դրեց վերացնելու սոցիալիստական օրինականության խախտումները, ամրապնդելու սովետական օրինականությունը, պաշտպանելու սովետական քաղաքացիների՝ Կոնստիտուցիայով սահմանված իրավունքները, բարելավելու դատական, դատախազական օրգանների աշխատանքները։ Այս ուղղությամբ շատ բան է արված և դեռ պետք է անել։

Սովետական կառավարությունը ստեղծել է բոլոր պայմանները, որպեսզի պետական այդ օրգանները այսուհետև էլ ավելի լավ կազմակերպեն աշխատանքը և է՛լ ավելի լավ պայքարեն սովետական հասարակարգի հետագա ամրապնդման համար։

Մենք՝ սովետական մարդիկս, հպարտությամբ և ուրախությամբ ենք խոսում մեր հերոսական բանակի սխրագործությունների մասին և ունենք բոլոր հիմքերը պարծենալու, որ մեր երկրի Զինված Ուժերն ինչպես առաջ, այնպես էլ այսօր ամուր կերպով պաշտպանում են մեր ժողովրդի ստեղծագործական և խաղաղ աշխատանքը, մեր Հայրենիքի անվտանգությունը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունն այսօր էլ անում են ամեն ինչ, մեր պատմական նվաճումները պաշտպանելու նպատակով։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը ցույց տվեց սովետների աշխատանքներում եղած լուրջ թերությունները։ Կենսագործելով այդ որոշումները, ՀՍՍՌ Գերագույն Սովետը, նրա նախագահությունը, տեղական Սովետները վերակառուցեցին իրենց աշխատանքները և այժմ լուրջ կերպով զբաղվում են սովետական շինարարության աշխատանքներն է՛լ ավելի բարելավելու ուղղությամբ։

Մեր Սովետների կարևոր խնդիրներից մեկն էլ այն է, որ է՛լ ավելի ծավալենք մասսաներին սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու աշխատանքները։ Սովետական ամեն մի քաղաքացի պարտավոր է լինել իսկական հայրենասեր և ինտերնացիոնալիստ։ Պետք է զարգացնել հարգանքը դեպի Սովետական Միության բոլոր ժողովուրդները։ Պետք է զարգացնել ինտերնացիոնալ ոգին ինչպես սոցիալիստական լագերի մեջ մտնող բոլոր ժողովուրդների, այնպես էլ միջազգային բանվոր դասակարգի և աշխատավորության նկատմամբ։

Մեզ անհրաժեշտ է ամենօրյա աշխատանք կատարել նոր սերնդի կոմունիստական դաստիարակության համար, որպեսզի է՛լ ավելի զարգանա սոցիալիստական հայրենասիրությունը։ Մեզ անհրաժեշտ է այնպես դաստիարակել նոր սերնդին, մեր ժողովրդին, որ ամենուրեք և ամեն տեղ ուժեղանա գիտակցական կարգապահությունը, սերը և հարգանքը դեպի աշխատանքը, դեպի սահմանված օրենքների կատարումը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ազատարար դրոշի տակ Եվրոպայում և Արևելքում շատ ժողովուրդներ ջախջախեցին շահագործողների տիրապետությունը և հաստատեցին նոր կարգեր, ժողովրդական դեմոկրատական ռեսպուբլիկաներ։ Ստեղծվեց համաշխարհային հզոր սոցիալիստական լագեր, որն ընդգրկում է ավելի քան 900 միլիոն բնակչություն և պայքարում է հանուն ժողովուրդների խաղաղության ու բարեկամության։

Անշեղորեն իրագործելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները, ՍՄԿՊ Կենտկոմի լենինյան ղեկավարության շնորհիվ մեծ չափերով ընդլայնվեցին ազգային ռեսպուբլիկաների և տեղական օրգանների ու կազմակերպությունների իրավունքները։

Ջախջախելով Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի և Շեպիլովի պառակտիչ և հակապարտիական ռանձգությունները, որոնք արգելակում էին Սովետական պետության միջազգային խաղաղության գծի հաջող կիրառումը, որոնք փորձում էին ֆրակցիոն մեթոդներով դեմ գնալ պարտիայի լենինյան գծին, սովետական ժողովուրդը աննախընթաց միասնությամբ և իր հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ նոր թափով առաջ կընթանա դեպի կոմունիզմ։

Սովետական օրինականության անշեղ կիրառմամբ, պետական օրգանների աշխատանքի առավել բարելավմամբ, Սովետական դեմոկրատիայի ծավալմամբ մեր երկիրը կդիմավորի իր հաղթանակների քառասնամյակը։

---

# ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ՄԵԾ ՈՒԺԸ

*Բ. ԱՆԱՆԻԿՅԱՆ*

Գիտական կոմունիզմի մեծ հիմնադիրներ Մարքսը և Էնգելսը սովորեցնում էին, որ բոլոր երկրների պրոլետարիատի ինտերնացիոնալ միասնությունը կապիտալիստական ստրկությունից ազատագրվելու գլխավոր պայմանն է։ Ավելի քան 100 տարի առաջ, միջազգային բանվորական շարժման այգաբացին, նրանք պրոլետարիատի ալ-կարմիր դրոշի վրա ոսկե տառերով գրեցին՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»—ինտերնացիոնալիզմի գլխավոր սկզբունքն ու լոզունգը, որի ներքո կոմունիստական պարտիաները համախմբել և համախմբում են բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավորության ուժերը՝ նոր, սոցիալիստական աշխարհ կառուցելու համար։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների ծագման հիմքը բանվոր դասակարգի դրությունն է կապիտալիստական հասարակարգում։ Արտադրողական ուժերի աճման ու զարգացման, կապիտալի կենտրոնացման և համակենտրոնացման հետ միասին աճում է նաև պրոլետարական բանակը, նա դառնում է բազմամարդ և է՛լ ավելի կազմակերպված։ Կապիտալի միջազգային կապերի զարգացման հետ միասին ավելի ու ավելի է մեծանում բանվոր դասակարգի ինտերնացիոնալ միասնության անհրաժեշտությունը։

Պատմական նոր պայմաններում, իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանում ռևոլյուցիայի հանճարեղ ստրատեգ Լենինը զարգացման նոր աստիճանի բարձրացրեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսությունը, բազմակողմանիորեն մշակեց սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար մղվող պայքարում պրոլետարիատի միջազգային համերաշխության ուղիների և միջոցների հարցը, պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում ժողովուրդների միջև եղբայրական բարեկամությունն ամրապնդելու ուղիների և միջոցների հարցը։

Բնութագրելով պրոլետարիատի ինտերնացիոնալ համախմբվածության մեծագույն նշանակությունը կապիտալի ստրկությունից ազատագրվելու համար մղած պայքարում, Վ. Ի. Լենինը գրում էր.

«Կապիտալը միջազգային ուժ է։ Նրան հաղթելու համար հարկավոր է բանվորների միջազգային միություն, նրանց միջազգային եղբայրություն։ Մենք ազգային թշնամության, ազգային պառակտման, ազգային առանձնացվածության հակառակորդներ ենք։ Մենք միջազգայնականներ ենք, ինտերնացիոնալիստներ ենք» (Երկեր, հ. 30, էջ 367)։

Անողոք պայքար մղելով II Ինտերնացիոնալի օպորտունիստական, շովինիստական պարտիաների դեմ, մեծ Լենինը միաժամանակ կազմակերպեց

նոր, ինտերնացիոնալիստական տիպի պարտիա: Նա գիտականորեն մշակեց այդ պարտիայի գաղափարական, կազմակերպական, տակտիկական, թեորիական հիմքերը, նրան դաստիարակեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ գաղափարների ոգով, բանվոր դասակարգին նվիրվածության ոգով: Լենինի ստեղծած կոմունիստական պարտիան, բոլշևիկների պարտիան հանդես եկավ որպես մինչև վերջ հետևողական, ռևոլյուցիոն ինտերնացիոնալիստական պարտիա:

Նա մեր Հայրենիքի աշխատավորների հերոսական պայքարը հասցրեց Հոկտեմբերի փառավոր հաղթանակին, որը վճռական ազդեցություն գործեց մարդկության ճակատագրի վրա, նոր դարաշրջան բացեց համաշխարհային պատմության մեջ:

Իրագործելով պատմության մեջ մեծագույն ռևոլյուցիոն հեղաշրջումը՝ մեր երկրի բանվոր դասակարգը և կոմունիստական պարտիան կատարեցին իրենց ինտերնացիոնալ պարտականությունները միջազգային պրոլետարիատի նկատմամբ, մահացու վերք հասցնելով իմպերիալիզմին՝ հեշտացրին պրոլետարիատի պայքարը նրա դեմ, աշխատավոր մարդուն ցույց տվին ստրկական վիճակից դուրս գալու ելքը: Մեծ Հոկտեմբերը գծեց այն գլխավոր ուղին, որով ընթացել և պետք է ընթանան բոլոր երկրների պրոլետարները և աշխատավորները հաղթանակի հասնելու համար:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի, մեր երկրում պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման և սոցիալիստական հզոր պետության ստեղծման շնորհիվ ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարախոսությունը ստացավ անսասան նյութական բազա:

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ հին աշխարհի ռեակցիոն ուժերի բոլոր ոտնձգությունները խափանելու համար բանվոր դասակարգի ազգային ջոկատները պետք է լինեն համերաշխ, պետք է սրբությամբ կատարեն միմյանց նկատմամբ ունեցած ինտերնացիոնալ պարտականությունները: Դեռևս 1918—1920 թվականներին նորաստեղծ սոցիալիստական առաջին երկիրը արտաքին ինտերվենտներից պաշտպանելու համար միջազգային պրոլետարիատի ծավալած միասնական հզոր գործողությունները փայլուն կերպով ցույց տվին, որ ինտերնացիոնալիզմի մարքսիստական-լենինյան վեհ գաղափարները տիրապետել են պրոլետարիատի միլիոնավոր մասսաների գիտակցությանը, որ բոլոր երկրների բանվորները սոցիալիստական ռևոլյուցիայի նվաճումների պաշտպանությունը դիտում են որպես իրենց հարազատ գործը, ՍՍՌՄ-ի մեջ տեսնելով իրենց ռևոլյուցիոն պայքարի հուսալի հենարանը:

Մեծ Հոկտեմբերի նվաճումների պաշտպանությունն առանձնապես կարևոր նշանակություն ունի արդի միջազգային պայմաններում, երբ իմպերիալիզմը և նրա կամակատարներն անընդհատ նորանոր դավեր են նյութում սոցիալիստական աշխարհի դեմ, ամեն կերպ ճգնում են խեղդել պրոլետարիատի ազատագրական պայքարը:

***

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մարքսիստական-լենինյան մեծ գաղափարները պահպանել են իրենց վերափոխիչ մեծ ուժը և ապրում ու զարգանում են:

Կապիտալիզմին հաղթելու գլխավոր երաշխիքը, ինչպես Մարքսը և



Էնգելսը, այնպես էլ Լենինը, տեսնում էին միջազգային պրոլետարիատի միասնության մեջ: «Առանց կամավոր ձգտման դեպի դաշինք և միասնություն՝ ամբողջ աշխարհի բոլոր երկրների ու ազգերի պրոլետարիատի,— գրում էր Լենինը,— իսկ ապա նաև բոլոր աշխատավոր մասսաների կողմից՝ կապիտալիզմի դեմ հաղթանակի գործը չի կարող հաջողությամբ ավարտվել» (Երկեր, հ. 31, էջ 173): Քանի դեռ գոյություն ունի կապիտալիզմը, Լենինի այս մեծ գաղափարը կլինի միջազգային բանվորական շարժման ուղեցույց աստղը:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը հսկայական մղում տվեց միջազգային պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժմանը: Ռևոլյուցիայից հետո անցած մոտ 40 տարիների ընթացքում կոմունիստական շարժումը, որն իր բնույթով հենց սկզբից միջազգային շարժում է, մեծագույն հաջողություններ ձեռք բերեց և համաշխարհային մասշտաբով դարձավ քաղաքական հզոր ուժ: Ասիայի և Եվրոպայի մի շարք երկրների ժողովուրդներ կոմունիստական և բանվորական պարտիաների գլխավորությամբ վճռականապես թոթափեցին իմպերիալիզմի լուծը և բռնեցին Մեծ Հոկտեմբերի գծած ուղին:

ՍՄԿՊ XX համագումարն ի լուր աշխարհի հայտարարեց, որ մեր դարաշրջանի գլխավոր գիծը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմ դառնալն է, ընդ որում, կապիտալիզմն անզոր եղավ խանգարելու այդ համաշխարհային-պատմական պրոցեսը: Եվ հենց այն ժամանակաշրջանից, երբ Սովետական Միության օրինակով սոցիալիզմի ուղին բռնեցին Ասիայի և Եվրոպայի մի շարք երկրներ, պրոլետարական ինտերնացիոնալիզմն ստացավ է՛լ ավելի հզոր բազա: Ընդարձակվեց նրա սկզբունքների կիրառման շրջանակը: Ինտերնացիոնալիզմն այժմ արտահայտվում է ո՛չ միայն միջազգային բանվորական շարժման ազգային ջոկատների համերաշխության ամրապնդման մեջ, այլև այն բանում, որ նրա սկզբունքներն ամուր կերպով դրված են սոցիալիզմի լագերի երկրների փոխհարաբերությունների հիմքում:

Մարդկության պատմությունը չգիտե հարաբերությունների այնպիսի տիպ, ինչպիսին հաստատվել է սոցիալիզմի լագերի երկրների միջև: Այդ հարաբերությունները հիմնված են լիակատար իրավահավասարության, փոխադարձ վստահության և եղբայրական օգնության լենինյան սկզբունքների վրա և անշեղորեն կենսագործվում են կոմունիստական և բանվորական պարտիաների կողմից:

Սոցիալիստական երկրների միասնության ամրապնդումը իրագործվում է ինչպես պետական, այնպես էլ կոմունիստական ու բանվորական պարտիաների համագործակցության գծով:

Սովետական պետության հիմնադիր Լենինը նշում էր, որ հաղթանակած երկրի պրոլետարիատն իր դիկտատուրան պետք է օգտագործի մյուս երկրների աշխատավորների հետ եղբայրական կապեր հաստատելու և ամրապնդելու համար, որովհետև հենց դրանումն է նրա հզորության աղբյուրը:

Արդեն 40 տարի է, ինչ Սովետների երկիրը հանդիսանում է միջազգային կոմունիստական շարժման կենտրոն: Եվ հենց շնորհիվ այն բանի, որ Սովետական Միությունը հաղթանակած սոցիալիզմի առաջին երկիրն է, իսկ սոցիալիզմի լագերը ստեղծվելուց հետո՝ այդ լագերում ամենահարուստ փորձ ունեցող և ամենահզոր երկիրը, ապա նա պետք է առավելագույն օգնություն ցույց տա սոցիալիստական երկրների և աշխարհի կապիտալիստական եր-

*կըրների աշխատավորներին։ Դա նրա ուղղակի պարտականությունն է միջազգային կոմունիստական և բանվորական շարժման նկատմամբ։*

*Արտահայտելով սովետական ժողովրդի վճռական կամքը՝ մինչև վերջ հավատարիմ մնալ ինտերնացիոնալիզմի մեծ գաղափարներին, ընկեր Ն. Ս. Խրուշչովը Հարավի և Հյուսիսային Կովկասի գյուղատնտեսության աշխատողների խորհրդակցությունում արտասանած ճառում ասաց, որ «Մենք միշտ հիշում ենք մեր պրոլետարական պարտքը, մենք հավատարիմ ենք մարքսիզմ-լենինիզմի ուսմունքին, սրբորեն պահպանում ենք ինտերնացիոնալիզմի սկզբունքները և ամեն օր առաջնորդվում ենք դրանցով։ Մենք ինքներս գիտենք, թե ինչքան դժվար է լինում առաջին տարիներին, երբ բանվոր դասակարգն իր ձեռքն է վերցնում իշխանությունը։ Ուստի մեր ժողովուրդն ամեն ինչ կիսում է սոցիալիստական մյուս պետությունների հետ, օգնում է բարեկամներին, որոնք ընթացան մարքսիզմ-լենինիզմի ուղիով, իշխանությունը վերցրին իրենց ձեռքը և հաջողությամբ կառուցում են սոցիալիստական պետություններ։ Սովետական մարդիկ պատրաստ են հացի վերջին պատառը եղբայրաբար կիսելու նրանց հետ»։ Սովետական ժողովրդի հենց այդ վերաբերմունքն է այն անսահման սիրո ու հարգանքի պատճառը, որ տածում են սոցիալիստական երկրների ժողովուրդները մեր մեծ Հայրենիքի հանդեպ։*

*Ղեկավարվելով ինտերնացիոնալիզմի լենինյան վեհ գաղափարներով՝ Սովետական Միության Կոմունիստական պարտիան գտնում է, որ այսուհետև ևս պետք է է՛լ ավելի ամրապնդել սոցիալիզմի ճամբարի միասնությունը, որովհետև որքան ավելի համախմբված ու հզոր լինի այդ ճամբարը, այնքան արգասաբեր կլինի նրա մեջ մտնող յուրաքանչյուր երկրի ազատությունն ու անկախությունը, նրա տնտեսության ու կուլտուրայի ծաղկումը։*

*Սակայն, սոցիալիզմի ճամբարի այդ անխորտակելի միասնությունը բոլորովին դուր չի գալիս միջազգային իմպերիալիզմին, և նա բոլոր միջոցները գործադրում է անվստահություն սերմանելու, սոցիալիզմի ուղին ոտք դրած ժողովուրդների եղբայրական համագործակցությունը կործանելու համար։*

*Պատմությունը ցույց է տվել, որ միջազգային պրոլետարիատի միասնության թշնամիները բազմիցս փորձել են օգտագործել իրենց կարծիքով նպաստավոր մոմենտները՝ կոմունիստական պարտիաների ինտերնացիոնալ համերաշխությունը քայքայելու, բանվորական շարժումը պառակտելու, սոցիալիզմի գաղափարների ձգողական մեծ ուժը թուլացնելու համար։ Այդպես վարվեցին նրանք, օրինակ, այն ժամանակ, երբ մեր պարտիան համարձակ կերպով հանդես եկավ անհատի պաշտամունքի դեմ, երբ, Լենինի խոսքերով ասած՝ նա բավականաչափ ուժեղ գտնվեց, «որպեսզի բացահայտորեն քննադատի ինքն իրեն, որպեսզի առանց այլևայլության սխալն ու թուլությունն անվանի սխալ ու թուլություն» (Երկեր, հ. 21, էջ 207)։*

*Իմպերիալիզմի գրչակները, չխնայելով թուղթ ու թանաք, ապարդյուն կերպով փորձեցին ստվեր գցել մարքսիզմ-լենինիզմի մեծ գաղափարների վրա, զրպարտել սոցիալիստական կարգը, խախտել աշխատավորների հավատը սոցիալիզմի առաջին երկրի՝ ՍՍՌՄ-ի նկատմամբ։ Սակայն, ինչպես միշտ, այս անգամ ևս նրանց այդ փորձերը սնանկ դուրս եկան։ Բոլոր եղբայրական կոմունիստական և բանվորական պարտիաները լայնորեն արձագանքելով և հավանություն տալով մեր պարտիայի այդ վճռական քայլին՝ դրա մեջ տեսան պայքար հանուն մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների անաղարտության, հանուն միջազգային բանվորական շարժման ժամանակակից պրոբլեմների լուծման, հանուն ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքների պահպանման ու զարգացման։*



*Դեռևս 1913 թվականին, խոսելով Կ. Մարքսի ուսմունքի պատմական բախտի մասին՝ Լենինը գրում էր. «Մարքսիզմի երևան գալուց հետո համաշխարհային պատմության երեք մեծ դարաշրջաններից ամեն մեկը նրան նոր հաստատումներ ու նոր հաղթանակներ բերեց։ Բայց մարքսիզմին, իբրև պրոլետարիատի ուսմունքի, է՛լ ավելի մեծ հաղթանակ կբերի գալիք պատմական դարաշրջանը» (Երկեր, հ. 18, էջ 740)։ Պատմությունը ցույց տվեց, թե որքան իրավացի էր մեծ Լենինը։ Սակայն, անտեսելով իրենց համար այդ դառը ճշմարտությունը, իմպերիալիզմի դիպլոմավոր լակեյները հարյուրավոր և հազարավոր անգամներ առասպելներ են հորինել կոմունիզմի «ճգնաժամի», կոմունիստական պարտիաների շարքերում «վարանումների» մասին, և հարյուր մեկերորդ, հազար մեկերորդ անգամ շարունակում են գուշակություններ անել այդ մասին։ Սակայն, ինչպես դիպուկ կերպով նշված է «Անհատի պաշտամունքը և նրա հետևանքները հաղթահարելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, «Այդ ձախորդ գուշակները եկել են ու չքացել, իսկ կոմունիստական շարժումը, մարքսիզմ-լենինիզմի անմահ ու կենարար գաղափարները հաղթանակել և հաղթանակում են»։*

*Հունգարիայում հակառևոլյուցիոն խռովությունը, որը հրահրված էր միջազգային իմպերիալիզմի կողմից, մեկ անգամ ևս ցույց տվեց, որ ռեակցիոն բուրժուազիան չի հրաժարվել պրոլետարիատի ինտերնացիոնալ համերաշխությունը քայքայելու, սոցիալիզմի մեծ գործը տապալելու իր հին պլաններից։*

*Հայտնի է, որ կապիտալի լուծը թոթափած ժողովրդական-դեմոկրատիայի երկրները համաշխարհային-պատմական նվաճումներ են ձեռք բերել սոցիալիզմի շինարարության ասպարեզում։ Սակայն, չի կարելի չնկատել, որ այդ երկրներում կան նաև դժվարություններ ու թերություններ։*

*Բուրժուական պրոպագանդան քար լռության մատնելով ձեռք բերված հաջողությունները և ամեն կերպ ուռճացնելով գոյություն ունեցող թերությունները, ճգնում է աշխատավորների հոգին վարակել սոցիալիզմի գործի հաջողության նկատմամբ թերահավատության թույնով, բորբոքել նացիոնալիստական տրամադրությունները, կործանել սոցիալիստական երկրների մեծ համագործակցությունը։*

*Զո՞ւր փորձեր։ Դեպքերը ցույց տվին, որ գիտակից պրոլետարիատը, կոմունիստական պարտիաները ո՛չ միայն չնահանջեցին ռեակցիայի առջև, այլև, ընդհակառակն, ավելի սեղմեցին իրենց շարքերը, է՛լ ավելի ամրապնդվեց նրանց միասնությունն ու համագործակցությունը։ Ավելին, նրանք իրենց ջերմ համերաշխությունն արտահայտեցին հունգարական ռևոլյուցիոներների նկատմամբ, իսկ Սովետական մեծ Միությունը, հունգարական կառավարության խնդրանքով, իր լավագույն զավակների միջոցով օգնեց Հունգարիայի սոցիալիստական ուժերին՝ կոնտրռևոլյուցիան ջախջախելու գործում։ Դրանով իսկ սովետական ժողովուրդը սրբությամբ կատարեց իր ինտերնացիոնալ պարտքը միջազգային կոմունիստական շարժման նկատմամբ։*

*Դասակարգային թշնամու, կոնտրռևոլյուցիայի կատաղի գրոհների առաջ նահանջեցին միայն անկայուն տարրերը, որոնք չկարողանալով տալ հունգարական դեպքերի ճիշտ վերլուծումը, հեռացան պրոլետարիատի դասակար-*

գային դիրքերից և հանգեցին խորապես սխալ հետևությունների։ Այն ժամանակ, երբ Հունգարիան կանգնած էր ռևոլյուցիայի և կոնտրռևոլյուցիայի, սոցիալիզմի և ֆաշիզմի, խաղաղության և պատերազմի երկընտրանքի առջև, այդ մարդիկ ո՛չ միայն չառաջադրեցին պրոլետարիատի դիկտատուրան իրականացնելու հարցը, այլև հանդես եկան Սովետական Միության արդարացի գործողությունների դեմ, դրանց մեջ տեսնելով ուրիշ պետության ներքին գործերին կոպիտ միջամտության փաստ։ Սակայն, մի՞թե դժվար էր ըմբռնել այն պարզ ճշմարտությունը, որ կապիտալիզմից ազատագրված և սոցիալիզմի ուղին բռնած երկրների շահերն ու նպատակները ընդհանուր են, ընդհանուր է նաև նրանց թշնամին՝ միջազգային իմպերիալիզմը։ Մի՞թե դժվար էր ըմբռնել, որ հենց այդ պատճառով էլ սոցիալիստական երկրները ոչ թե առհասարակ «գոյակցում են», այլև պաշտպանում և ամրապնդում են եղբայրական բարեկամության, փոխադարձ օգնության և համագործակցության հարաբերությունները։

Հունգարական դեպքերը մեկ անգամ ևս ցույց տվին, որ պրոլետարական ինտերնացիոնալիզմի էությունը հենց այն է, որ փոխադարձաբար պաշտպանվեն միջազգային պրոլետարիատի ազգային ջոկատները, պաշտպանվի սոցիալիզմի ընդհանուր գործը։

Քաջ գիտակցելով, որ բանվոր դասակարգի շահերի համար, խաղաղության և իրենց երկրների ազգային անկախության համար մղվող պայքարը միաժամանակ ամբողջ միջազգային պրոլետարիատի գործն է, կոմունիստական և բանվորական պարտիաներն ավելի են համախմբվում, ամրապնդում իրենց կապերն ու համագործակցությունը։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն իր որոշումներում բազմիցս ընդգծել է, որ ներկա պայմաններում, երբ իրենց գործունեությունը դադարեցրել են բանվոր դասակարգի այնպիսի միջազգային կազմակերպություններ, ինչպիսիք են Կոմինտերնն ու Կոմինֆորմը, մարքսիզմ-լենինիզմի դիրքերում կանգնած ռևոլյուցիոն պարտիաների ինտերնացիոնալ համերաշխությունը և նրանց կոնտակտների անհրաժեշտությունն է՛լ ավելի մեծ նշանակություն է ստանում։ Ընդսմին մեր պարտիան ելնում է այն բանից, որ սոցիալիստական լագերի ժողովուրդների համերաշխությունն ամրապնդելու համար այդ երկրների կոմունիստական պարտիաները պետք է փոխադարձաբար հարգեն ազգային շահերն ու ազգային զգացմունքները։

Լենինը մեր պարտիային սովորեցնում էր, որ պրոլետարական ինտերնացիոնալիզմը ո՛չ միայն չի հակադրվում յուրաքանչյուր ժողովրդի հայրենասիրությանը, այլև, ընդհակառակն, ներդաշնակորեն զուգակցվում է նրա հետ։ Չի կարելի լինել ինտերնացիոնալիստ՝ չհարգելով ու չսիրելով իր սեփական ժողովրդին, նմանապես չի կարելի լինել հայրենասեր՝ չհարգելով մյուս ժողովուրդների իրավունքներն ու սուվերենությունը։ Հետևաբար, կատարելով իր ճիշտ ըմբռնված հայրենասիրական պարտքը՝ յուրաքանչյուր կոմունիստ դրանով իսկ կատարում է իր ինտերնացիոնալ պարտքը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան և մեր կառավարությունը հետևելով մեծ Լենինի ցուցումներին՝ սոցիալիստական երկրների հետ ունեցած իրենց հարաբերությունները կառուցել և կառուցում են իրավահավասարության, պետական անկախության և սուվերենության, միմյանց ներքին գործերին չմիջամտելու, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունք-



ների վրա։ Այդ բանի ամենափայլուն վկայությունը կարող է հանդիսանալ
Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների միջև բարեկա-
մության և համագործակցության զարգացման և հետագա ամրապնդման հիմ-
քերի մասին՝ Սովետական կառավարության 1956 թվականի հոկտեմբերի 30-ի
դեկլարացիան, որը ամբողջ միջազգային ռևոլյուցիոն բանվորական շարժման
ամենաջերմ հավանությանն արժանացավ։ Այդ դեկլարացիային ջերմորեն
արձագանքեց և նրանում առաջադրված գաղափարները պաշտպանեց չին մեծ
ժողովուրդը։ Բուլղարիայի, Հունգարիայի, Չեխոսլովակիայի, Ռումինիայի և
Սովետական Միության կոմունիստական ու բանվորական պարտիաների և
կառավարությունների ներկայացուցիչների՝ 1957 թվականի հունվարին Բու-
դապեշտում կայացած հանդիպման հաղորդագրության մեջ նշվում է, որ
«Հանդիպման մասնակիցները... այն միահամուռ համոզմունքը հայտնեցին,
որ Սովետական կառավարության այդ դեկլարացիան լիովին համապատաս-
խանում է սոցիալիստական երկրների բարեկամական հարաբերությունների
ամրապնդման շահերին՝ բոլոր ժողովուրդների իրավահավասարության և շա-
հերի հարգման, միմյանց ներքին գործերին չմիջամտելու լենինյան սկզբունք-
ների, պրոլետարական սկզբունքների պահպանման հիման վրա»։

Մեծ Լենինն առանձնահատուկ ուշադրություն էր դարձնում մեծ և փոքր
երկրների միջև ճիշտ փոխհարաբերությունների սահմանմանը։ Նա կոմունիս-
տական պարտիայից պահանջում էր առանձին ուշադրությամբ վերաբերվել
երկար ժամանակ ճնշված ժողովուրդների ազգային զգացմունքների մնացուկ-
ների նկատմամբ, ընդհուպ մինչև որոշ զիջումներ անելը եղած անվստահու-
թյունն ու նախապաշարմունքները հաղթահարելու համար։ Եվ դա այն պատ-
ճառով, որ գաղութային ժողովուրդների դարավոր ճնշումն իմպերիալիստա-
կան տերությունների կողմից՝ նրանց մեջ թողել է ո՛չ միայն զայրույթ, այլև
անվստահություն դեպի ճնշող ազգերն ընդհանրապես, այդ թվում նաև դեպի
այդ ազգերի պրոլետարիատը։ «Այստեղից,— գրում է Լենինը,— պարտավո-
րություն է բխում բոլոր երկրների գիտակից կոմունիստական պրոլետա-
րիատի համար՝ առանձին զգուշությամբ և առանձին ուշադրությամբ վերա-
բերվել ազգային զգացմունքների մնացուկներին առավել երկար ժամանակ
ճնշված երկրների և ժողովուրդների մեջ...» (Երկեր, հ. 31, էջ 173)։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան կենսագործելով իր
մեծ առաջնորդ Լենինի ցուցումները, վարելով ազգային իմաստուն քաղաքա-
կանություն՝ անգնահատելի օգնություն ցույց տվեց մեր երկրի նախկինում
ճնշված ժողովուրդներին՝ զարգացնելու իրենց պետականությունը, տնտեսու-
թյունը, դաստիարակելու ազգային ինտելիգենցիայի կադրեր, զարգացնելու
ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա։ Մեր պար-
տիայի կողմից պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հետևո-
ղական կիրառման շնորհիվ ՍՍՌՄ ժողովուրդների միջև հաստատվեց ան-
խորտակելի եղբայրական բարեկամություն, որը դարձավ մեր մեծ Հայրենիքի
ուժի և հզորության աղբյուրը։

Լենինյան պատգամների հետևողական կենսագործման մի նոր, վառ
վկայություն է միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնման,
տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում նրանց դերի ու
ինքնուրույնության բարձրացման ուղղությամբ մեր պարտիայի ու կառավա-
րության վերջին ժամանակաշրջանում ձեռնարկած միջոցառումները։

Մեր պարտիայի հերոսական պատմությունը փայլուն կերպով ցույց է
տալիս, որ բոլոր նրանք, ովքեր փորձել են դեմ գնալ պարտիայի վարած ազ-
գային քաղաքականությանը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան
կենսահաստատ գաղափարներին, անխուսափելիորեն կործանվել են՝ զարնվե-
լով պարտիայի շարքերի գրանիտե պատվարին։ Այդ բանը նոր ուժով դրսևոր-
վեց ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումում, որը միահամուռ կերպով մեր-
կացրեց և դատապարտեց Գ. Մ. Մալենկովի, Լ. Մ. Կագանովիչի, Վ. Մ. Մո-
լոտովի հակապարտիական խմբի բուն ֆրակցիոն գործողությունները։ Այդ
խումբը դեմ էր տնտեսական և կուլտուրական շինարարության, ինչպես
նաև օրենսդրության ասպարեզում միութենական ռեսպուբլիկաների իրա-
վունքների ընդլայնմանը, դրանով իսկ նա դեմ էր ազգային ռեսպուբլիկանե-
րում էկոնոմիկայի և կուլտուրայի ավելի արագ զարգացման՝ պարտիայի
կողմից հաստատակամորեն վարվող կուրսին, որն ապահովում է մեր երկրի
բոլոր ժողովուրդների լենինյան բարեկամության հետագա ամրապնդումը։

Աշխատավորների միջազգային համերաշխության ամրապնդմանը, պրո-
լետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների անշեղ կիրառմանը լուրջ
կերպով խանգարում են սոցիալիզմի պայմաններում դրսևորվող նացիոնա-
լիստական տրամադրությունները։ Լենինը նշում էր, որ դարավոր ճնշումն ու
հարստահարումը ժողովուրդների մեջ ծնել է անվստահություն միմյանց նկատ-
մամբ, առաջ է բերել ազգային էգոիզմի և ազգային սահմանափակության
նախապաշարմունքներ, որոնք շատ դանդաղ կմահանան։ Օգտագործելով ազ-
գային այդ նախապաշարմունքները՝ նացիոնալիստական տարրերը ձգտում
են թյուրիմացության մեջ գցել աշխատավորության հետամնաց խավին, հար-
վածել ինտերնացիոնալիզմի մարքսիստական-լենինյան սկզբունքներին։ Ձե-
վականորեն առաջին պլանի վրա քաշելով իրենց երկրի շահերը, դրանք հա-
կադրելով սոցիալիստական մյուս երկրների ընդհանուր շահերին՝ նացիոնա-
լիստներն, ըստ էության, ձգտում են իրենց երկիրը մեկուսացնել սոցիալիզմի
մեծ լագերից, թուլացնել նրա դիրքերը, զինաթափ անել նրան իմպերիալիս-
տական հարձակման առջև։

Սոցիալիզմի պայմաններում բուրժուական նացիոնալիզմը դրսևորվում է
իր երկու կողմերով՝ մեծապետական շովինիզմ և տեղական նացիոնալիզմ։
Մեծապետական շովինիզմի տենդենցի էությունն այն է, որ անտեսում է
Կոմունիստական պարտիաների և սոցիալիստական պետությունների անկախ
և իրավահավասար դրությունը։ Իսկ տեղական նացիոնալիզմն արտահայտ-
վում է մեծ երկրի նկատմամբ փոքր երկրի անվստահության մեջ։ Այս երկու
տենդենցներն էլ հավասարապես վնասում են պրոլետարիատի միջազգային
համերաշխությանը, սոցիալիզմի ընդհանուր գործին։ Միջազգային պրոլե-
տարիատի շահը, սոցիալիզմի շահը պահանջում է արագորեն հաղթահարել
նացիոնալիստական այդ տենդենցները։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարների կենսա-
կան մեծ ուժը դրսևորվում է ո՛չ միայն սոցիալիստական լագերի երկրների
փոխհարաբերություններում, այլև կապիտալիստական, գաղութային ու կախ-
յալ երկրների աշխատավորների օրեցօր ամրապնդվող համերաշխության մեջ։

Հայտնի է, որ սոցիալիստական և կապիտալիստական երկրների կոմու-
նիստական պարտիաների միջև տարաձայնությունների, պառակտման, ինչ-
որ անխուսափելի հակասությունների վերաբերյալ բուրժուական գաղափա-



րախոսների գուշակությունները ի դերև ելան։ Ոչ վաղ անցյալում տեղի ունե-
ցած Սովետական Միության, Չինաստանի, Ֆրանսիայի և Իտալիայի՝ աշխար-
հի այդ խոշորագույն կոմունիստական պարտիաների համագումարները, ինչ-
պես նաև եղբայրական մյուս կոմունիստական ու բանվորական պարտիա-
ների համագումարներն ու կենտկոմների պլենումները, նրանց համատեղ
հայտարարություններն ու որոշումները մեկ անգամ ևս ցուցադրեցին այդ
պարտիաների վճռական կամքը՝ լինել միասին, մինչև վերջ հավատարիմ
մնալ մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքին, պրոլետարական ինտերնացիո-
նալիզմի պանծալի դրոշին։

Լինելով իրենց երկրների իսկական հայրենասերներ, պրոլետարական
ինտերնացիոնալիզմի դրոշակակիրներ՝ կոմունիստական պարտիաները հա-
մախմբում են ռևոլյուցիոն բոլոր ուժերը ընդդեմ կապիտալիստական ռեակ-
ցիայի, հանուն խաղաղության և լավագույն ապագայի։ Նրանք լավ գիտեն,
որ աշխատավորների միջազգային համերաշխության ամրապնդումը համա-
պատասխանում է ո՛չ միայն իր՝ պրոլետարիատի շահերին, այլև աշխարհի
ճնշված ազգերի՝ անկախության համար ծավալած շարժման շահերին, խա-
ղաղության գործի շահերին։

Մեր ապրած ժամանակաշրջանի բնորոշ կողմերից մեկն այն է, որ լայ-
նորեն ծավալվում է գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների պատ-
մական մեծ շարժումը ազատության և անկախության համար։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հուժկու համազարկերը դարավոր նիրհից
արթնացրին ճնշված ու հարստահարված հարյուր միլիոնավոր ժողովուրդների,
որոնք իմպերիալիզմի կամքով հեռու էին շպրտված մարդկային հասարա-
կության զարգացման գլխավոր ճանապարհից։ Վերջին տասը տարվա ընթաց-
քում գաղութային լծից ազատագրվեց մեկ միլիարդ երեք հարյուր միլիոն
մարդ՝ աշխարհի բնակչության մոտ կեսը։ Հիմնահատակ խորտակվում են
գաղութակալության վերջին հիմքերը, և աշխարհում չկա այնպիսի ուժ, որը
ի վիճակի լիներ կանխել այդ պրոցեսը։ Հասել է հանճարեղ Լենինի կանխա-
տեսած այն ժամանակաշրջանը, երբ արևելքի ժողովուրդները ակտիվ մաս-
նակցություն են ունենում ամբողջ աշխարհի բախտի վճռմանը, դառնում են
միջազգային հարաբերությունների նոր հզոր գործոն։

Իրենց ազատության և անկախության համար պայքարող ժողովուրդները
լայն աջակցություն, օգնություն ու պաշտպանություն են գտնում ո՛չ միայն
սոցիալիզմի լագերի ժողովուրդների, այլև ամբողջ աշխարհի աշխատավորա-
կան լայն մասսաների կողմից։ Այն ժամանակ, երբ աշխարհի ազատասեր
ժողովուրդներն իրենց բողոքի ձայնը բարձրացրին Եգիպտոսի վրա անգլո-
ֆրանս-իսրայելյան ագրեսիայի դեմ և վճռական միջոցներով տապալեցին
ագրեսիան, դրանով իսկ նրանք իրենց համերաշխությունն արտահայտեցին
եգիպտական ազատասեր ժողովրդին, կատարեցին իրենց ինտերնացիոնալ
մեծ պարտականությունը։ Մյուս կողմից, երբ ազատության ու անկախության
համար ոտքի ելած ժողովուրդներն իրենց հերոսական պայքարով խարխլում
են կապիտալիզմի հիմքերը, թուլացնում են նրա դիրքերը աշխարհի տարբեր
մասերում, դրանով իսկ նրանք օգնում են պրոլետարիատի ընդհանուր պայ-
քարին, կատարում են իրենց ինտերնացիոնալ պարտքը միջազգային բանվո-
րական շարժման նկատմամբ։

Առաջնորդվելով ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքներով՝ սոցիա-

լիզմի լագերի երկրները ո՛չ միայն բարոյական, այլև տնտեսական ու կուլտուրական անշահախնդիր օգնություն են ցույց տալիս ազգային անկախություն նվաճած ժողովուրդներին։ ՍՄԿՊ XX համագումարը նշեց, որ ներկա պայմաններում այդ ժողովուրդներն օգնության համար հարկ չունեն խոնարհվելու իրենց նախկին ճնշողների առջև։ Այդպիսի օգնություն նրանք կարող են ստանալ սոցիալիզմի երկրներից, առանց դրա համար քաղաքական կամ ռազմական բնույթի որևէ պարտավորությամբ հատուցելու։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարների կենսական մեծ ուժի, բանվոր դասակարգի ամրապնդվող համերաշխության, աշխատավորների կուռ միասնության վառ ցուցանիշներից մեկն էլ մեր օրերում սկսված խաղաղության կողմնակիցների հզոր շարժումն է, որն անընդհատ նորանոր միլիոններ է համախմբում իր դրոշի տակ։

Սարսափելով ժողովուրդների համախմբվածությունից՝ իմպերիալիստական բուրժուազիան ոչ մի միջոցի առաջ կանգ չի առնում ազգերի միջև թշնամություն և անվստահություն սերմանելու, ժողովուրդների միասնական ճակատը պառակտելու համար։ Սակայն պատմության դատավճիռն անողոք է։ Ժամանակն աշխատում է ոչ թե իմպերիալիզմի, այլ սոցիալիզմի օգտին։ Օր-օրի աճում է լենինիզմի՝ աշխարհը վերափոխող այդ հավերժ կենդանի ռևոլյուցիոն ուսմունքի, ձգողական մեծ ուժը, և չկա այնպիսի ուժ, որը կարողանար կասեցնել նրա հաղթարշավը։



# ՊԵՐՃԱԽՈՍ ԹՎԵՐԻ ԼԵԶՈՒՆ

Լ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Կատարելով ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումը, միութենական ռեսպուբլիկաների Մինիստրների Սովետները և միութենական մինիստրությունները մշակել և ՍՍՌՄ Պետպլանի քննարկմանն են ներկայացրել ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների պլանների ճշգրտված նախագծերը։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի տված ցուցումներին համապատասխան պլանների ճշգրտումը կատարվում էր այն ուղղությամբ, որպեսզի որոշ չափով նվազեցվի կապիտալ ներդրումների ծավալը, կրճատվի նորակառույցների թիվը, թույլ չտրվի միջոցների ցրվածություն, դրանք կենտրոնացվեն գործարկման ենթակա կարևորագույն օբյեկտների վրա։

Ճշտվեցին արդյունաբերության այն առանձին ճյուղերի պլանային առաջադրանքները, որոնք ապահովված չէին բավարար նյութական բազայով։ Դա հնարավորություն տվեց նախատեսելու անհրաժեշտ նյութական պաշարների գոյացում արդյունաբերության մեջ, կարգավորելու ձեռնարկությունների նյութա-տեխնիկական մատակարարումը, որը և անհրաժեշտ նախադրյալներ կստեղծի ձեռնարկությունների անխափան և ռիթմիկ աշխատանքը կազմակերպելու համար։

Բնակարանային շինարարության ծավալն ընդարձակվեց արդյունաբերական շինարարությունից լրացուցիչ պետական միջոցներ բնակարանային շինարարությանը հատկացնելու միջոցով։ Բացի այդ, բնակչությանն օժանդակություն է ցույց տրվելու իր միջոցներով և պետական վարկի օգնությամբ բնակարանային լայն շինարարություն ծավալելու գործում։

***

ՍՍՌՄ Պետպլանի ընդունած և կառավարության քննարկմանը ներկայացված հնգամյա պլանի նախագծի համաձայն Հայկական ՍՍՌ արդյունաբերական արտադրանքի ծավալը 1960 թվականին կհասնի 9,3 միլիարդ ռուբլու (առանց օժանդակ ձեռնարկությունների արտադրանքի), որը 1955 թվականի համեմատությամբ կտա 1,7 անգամ աճ։ Ըստ որում ծանր արդյունաբերության ճյուղերի արտադրանքը կաճի 2 անգամ, իսկ թեթև արդյունաբերությանը՝ 1,55 անգամ։

Արտադրանքի հիմնական տեսակները կավելանան հետևյալ չափերով. ցեմենտ՝ 2 անգամ, շիֆեր՝ 1,4 անգամ, պատի շինանյութեր՝ 2,1 անգամ, հավաքովի երկաթ-բետոնյա կառուցվածք՝ 16 անգամ, ավտոդողեր՝ 2,9 անգամ, գեներատորներ՝ 2 անգամ, տրանսֆորմատորներ՝ 1,9 անգամ, բամբակյա

գործվածքեղեն՝ 1,43 անգամ, բրդյա գործվածքեղեն՝ 2 անգամ, մետաքսյա գործվածքեղեն՝ 1,54 անգամ և այլն։

1956—1960 թվականների ընթացքում Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության մեջ հենց միայն կենտրոնացված պետական կապիտալ ներդրումները կազմելու են 4,6 միլիարդ ռուբլի, որը հինգերորդ հնգամյակի համեմատությամբ 44,7 տոկոսով ավելի է։

Եթե հաշվի առնենք 1956 թվականին իրացված և 1957 թվականին պլանով սահմանված կապիտալ ներդրումները, ապա 1958—1960 թվականներին իրացման ենթակա են հնգամյակի համար նախատեսված կապիտալ ներդրումների ⅔-ը։ Դա նշանակում է 1957 թվականի համեմատությամբ կապիտալ ներդրումների աճ մոտավորապես 18—20 տոկոսով, իսկ վեցերորդ հնգամյակի վերջին տարում՝ 1960 թվականին, գրեթե կրկնապատիկ աճ 1955 թվականին փաստորեն իրացված միջոցների դիմաց։

Արդյունաբերական շինարարության մեջ ներդրվելու է ավելի քան 3,2 միլիարդ ռուբլի։ Իրենց ծավալով այդ զգալի կապիտալ ներդրումներն այն նպատակն ունեն, որ տեղական հումքային միջոցների բազայի վրա կազմակերպվեն նոր ձեռնարկություններ, ընդլայնվեն և վերակառուցվեն գործող ձեռնարկությունները, թեթև արդյունաբերության հետագա զարգացման համար հումքի և կիսաֆաբրիկատների արհեստական տեսակներ թողարկող նոր ձեռնարկությունների շինարարություն սկսվի և այլն։

Արդյունաբերության գծով նախատեսված կապիտալ ներդրումների 80 տոկոսը հատկացվում է ծանր արդյունաբերության ճյուղերին։

Վեցերորդ հնգամյակի ընթացքում էներգետիկ շինարարության գծով Արզնիգէսից բացի շահագործման կհանձնվեն Աթարբեկյանի և Երևանի հիդրոէլեկտրակայանները, և կսկսվի Սևան—Հրազդան կասկադի Արգավանդի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը։

Նշված էլեկտրակայանների գործարկումով և գերատեսչական ու գյուղատնտեսական կայանների հզորության ընդլայնումով Հայկական ՍՍՌ էլեկտրակայանների ընդհանուր հզորությունը 1960 թվականի վերջին կհասնի 643,9 հազար կիլովատի՝ 1955 թվականի 448,1 հազար կիլովատի դիմաց։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը հնգամյակի ընթացքում կավելանա 22 տոկոսով և 1960 թվականին կկազմի 2707,7 միլիոն կիլովատ ժամ։ Կբարձրանա Սևանի ջրերի էներգետիկ օգտագործման գործակիցը։ Եթե 1955 թվականին լճից թողարկվող յուրաքանչյուր խ. մ. ջրից ստանում էինք 1,15 կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, ապա 1960 թվականին ստանալու ենք 1,89 կիլովատ ժամ։ Սակայն, վեցերորդ հնգամյակում իրականացվելիք էլեկտրաշինարարության ծրագիրը, չնայած նրա զգալի ծավալին, չի ապահովում էլեկտրիֆիկացիայի զարգացման առաջընթաց տեմպը և հնգամյակի վերջում դեռևս զգալի լարվածություն ենք ունենալու էներգոբալանսում։

Էլեկտրաէներգիայի սահմանափակությունը վեցերորդ հնգամյակում Հայաստանի արդյունաբերության զարգացման ուղիները նախորոշում է դեպի ոչ էներգատար ճյուղերի զարգացումը։ Այդ ոչ էներգատար ճյուղերը միևնույն ժամանակ հանդիսանում են այնպիսի աշխատատար ճյուղեր, որոնք կարող են ապահովել լրացուցիչ աշխատանքային ռեսուրսների՝ մինչև 50 հազար մարդու ներգրավումը։ Այնուամենայնիվ արդյունաբերության հետագա զարգացումը պահանջում է էներգետիկ բազայի զգալի աճ։



Էլեկտրակայանների շինարարության հետ մեկտեղ բնական գազը և էլեկտրաէներգիայի այլ աղբյուրներ համեմատաբար կարճ ժամկետներում կարող են զգալիորեն մեծացնել ռեսպուբլիկայի էներգետիկ բազան։

Գազամուղի շինարարությունը մինչև Թբիլիսի և Թբիլիսիից մինչև Երևան կավարտվի 1960 թվականին, որը և արմատապես կփոխի ռեսպուբլիկայի ջերմամատակարարման վիճակը։

Վեցերորդ հնգամյակում զգալի չափով կապիտալ ներդրումներ կարվեն գունավոր մետալուրգիայի մեջ։ Գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների կապիտալ աշխատանքների ծավալը հնգամյակի ընթացքում կկազմի մինչև մեկ միլիարդ ռուբլի։ Նշված գումարից 1956 թվականի ընթացքում իրացվել է և 1957 թվականի պլանով իրացվելու է 256 միլիոն ռուբլի։ Այսպիսով հնգամյակի հաջորդ երեք տարիներից յուրաքանչյուր տարում պետք է իրացվեն առաջին երկու տարվա գումարին հավասար կապիտալ ներդրումներ։

1960 թվականին Քաջարանի կոմբինատում հանքանյութը 1955 թվականի համեմատությամբ կաճի 2,6 անգամ, շահագործման կհանձնվի Ագարակի կոմբինատը, կկրկնապատկվի Դաստակերտի կոմբինատի պղնձամոլիբդենային հանքի հանույթը, կավելանա Զանգեզուրի հանքվարչության, Ախթալայի պոլիմետալների հանքվարչության և Ալավերդու կոմբինատի պղնձի հանքի հանույթը։

Հանքանյութի վերամշակումը ընդլայնվում է, և այդ գործում նոր կարողություններ են արմատավորվում։ Գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները վեցերորդ հնգամյակի ընթացքում կանցնեն տեխնիկայի նորագույն նվաճումներին համապատասխանող աշխատանքի ավելի կատարելագործված մեթոդների, կավելացնեն մետաղի թողարկումը և կիջեցնեն նրա ինքնարժեքը։ Ալավերդում շահագործման կհանձնվի լայնացվող էլեկտրոլիզի ցեխը, Ախթալայում կառուցվելու է հարստացուցիչ ֆաբրիկա, որը միաժամանակ ցինկա-կապարային հանքանյութը և Շամլուղի դժվարաձուլ պղնձահանքը կոնցենտրատ կդարձնի։ Շարք կմտնեն ալյումինի թիթեղների և ալյումինի փայլաթիթեղների ցեխերը։

1957—1958 թվականներին կազմվելու է Ախտայի նեֆելինային սիենիտների վերամշակման և կավահող՝ ալյումինի հումք ու կողմնակի արտադրանք թողարկող կոմբինատի նախագիծը։

Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի կողմից լաբորատոր և գործարանային պայմաններում մշակված ու փորձարկված է նեֆելինային սիենիտներից կավահող ստանալու տեխնոլոգիան։ Ըստ այդ տեխնոլոգիայի կավահողի հետ մեկտեղ կարելի է լրացուցիչ կարգով ստանալ չորս անգամ ավելի պորտլանդցեմենտ, քան տալիս է ներկայումս գործող Արարատի գործարանը և, որ առանձնապես կարևոր է՝ արտադրանքի այնպիսի նոր տեսակներ, ինչպես՝ մետասիլիկատ-նատրիում, մետասիլիկատ-կալցիում, պոտաշ, երեվանիտ, բարձր աստիճանի մաքրության օքսիդ կրեմնիում։ Թվարկած նյութերի մեծ մասը արտադրանքի նոր տեսակներ են և լայնորեն կկիրառվեն միության ժողովրդական տնտեսության շատ ճյուղերում։ Դրանք բարձրորակ սպիտակեցնողներ են, լցվածքներ, լվացող միջոցներ, հումք՝ բյուրեղապակու արտադրության համար, օպտիկական ապակի, կիսահաղորդիչներ, պարարտանյութ և այլ արտադրանքներ։ Պետք է նշել, որ այդ արտադրանքները կարող են ստացվել մեծ քանակությամբ՝ համեմատաբար ցածր ինքնարժեքով։

*Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ստեղծված քիմիական արդյունաբերությունը անցած հնգամյակների ընթացքում արագությամբ աճել է։ Սակայն քիմիական արդյունաբերության զարգացումը Հայկական ՍՍՌ-ում հիմնականում ընթացել է էներգատար արտադրության գծով, մի բան, որ չի կարող տեղի ունենալ վեցերորդ հնգամյակում՝ դեֆիցիտային էներգոբալանսի պատճառով։*

*Կիրովի անվան գործարանում և Կիրովականի քիմիական կոմբինատում աշխատանքներ են տարվելու կարբիդի վառարանների վերակառուցման ուղղությամբ, որը, աշխատանքի պայմանները բարելավելու հետ միասին, կապահովի արտադրական կորուստների և էլեկտրաէներգիայի ծախսերի նվազումը։ Բացի դրանից, Կիրովի անվան գործարանում կկառուցվեն մաքրիչ հարմարանքներ անվնաս դարձնելու համար արտադրության այն մնացորդները, որպիսիք ներկայումս թափվում են Հրազդան գետը, ինչպես նաև սարքավորումներ կտեղադրվեն անջատվող վնասակար գազերը կլանելու համար։*

*Կիրովականի կոմբինատում հին արտադրության ընդլայնման հետ միասին կազմակերպվելու է նոր արտադրանքների՝ կորունդի (կարծր քարերի փոխարինողներ), մելամինի՝ ներկող նյութերի համար, դիցիանդիամենի արտադրություն։*

*Արտադրության նոր տեսակներ են ստեղծվում նաև Պոլիվինիլացետատ գործարանում, ինչպես, ասենք՝ պոլիվինիլբուտիրալ թաղանթներ, պոլիամիդային թաղանթներ, պոլիամիդային ձյութ և այլ արտադրանքներ։ Այդ գործարանի արտադրանքը 1960 թվականին կաճի 5 անգամ։*

*1956 թվականից ձեռնարկված է Ալավերդու քիմիական գործարանի արմատական վերակառուցումն ու ընդլայնումը։*

*1959 թվականին կսկսի աշխատել պղնձարջասպի արտադրության նոր ցեխ։ Արջասպի արտադրության մեջ սպիտակ մաթի փոխարեն օգտագործվելու է պղնձի լոմ և գրանուլացված պղինձ։*

*Ալավերդու քիմիական գործարանի վերակառուցումն իրականացնելով՝ մենք միաժամանակ կհասնենք այն բանին, որ քաղաքը կազատենք վնասակար գազերից։*

*Քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների համախառն արտադրանքը մեր ռեսպուբլիկայում, ամբողջությամբ վերցրած, 1955 թվականի համեմատությամբ 1960 թվականին գրեթե կկրկնապատկվի։*

*Հայաստանի արդյունաբերության հետագա զարգացման համար կարևոր նշանակություն ունի Կիրովականի քիմկոմբինատում ացետիլցելյուլոզի ցեխի և Կիրովականում ացետատային մետաքսի գործարանի կառուցման նախաձեռնումը։*

*Մինչև պատերազմը Հայկական ՍՍՌ-ում ըստ էության մեքենաշինական արդյունաբերություն չի եղել։ Ռեսպուբլիկայում մեքենաշինություն կազմակերպվեց պատերազմի տարիներին և հետպատերազմյան առաջին տարիներին։*

*Հայկական ՍՍՌ տերիտորիայում տեղադրված միութենական ենթակայության մեքենաշինական ձեռնարկությունները հինգերորդ հնգամյակի վերջին արդեն թողարկում էին 462,6 միլիոն ռուբլու արտադրանք։ Վեցերորդ հնգամյակում մեքենաշինական ճյուղերի արտադրանքն զգալի չափով ընդլայնվում է և կկազմի 1234,2 միլիոն ռուբլի կամ կաճի 2,7 անգամ։ Ընդ որում այդ ճյուղերի տեսակարար կշիռը արդյունաբերական արտադրանքի*



*ընդհանուր թողարկման մեջ կկազմի 13,3 տոկոս, 1955 թվականի 8,3 տոկոսի դիմաց։*

*Բացի գործող երկու ձեռնարկություններից՝ Երևանի Ձերժինսկու անվան գործարանից և Հոկտեմբերյանի շաղափող հաստոցների գործարանից, հաստոցաշինության և գործիքաշինության արդյունաբերության մեջ շարք կմտնեն Երևանի Ցրեզերային հաստոցների գործարանը, Երևանի Հաստոցային նորմալների գործարանը և Լուսավանի գործիքաշինական գործարանը։*

*Ձերժինսկու անվան գործարանը 1957 թվականից անցնում է բարձր արտադրողականություն ունեցող 1—Л61 մոդելի խառատամետաղահատ հաստոցների սերիական թողարկմանը։*

*Հոկտեմբերյանի գործարանը մասնագիտանում է փոքր գաբարիտային շառավղային-շաղափող հաստոցների թողարկման գործում։ Ցրեզերային հաստոցների և հաստոցային նորմալների գործարանները շարք կմտնեն 1958 թվականին՝ արտադրական կորպուսների շինարարությունից և սարքավորման մոնտաժից հետո։ Այդ երկու գործարաններն էլ 1960 թվականին արտադրանքի թողարկումը աշխատանքի առաջին տարվա համեմատությամբ կբարձրացնեն ավելի քան 10 անգամ։*

*Վեցերորդ հնգամյակի խոշոր նորակառույցներից մեկը հանդիսանում է Լուսավանի գործիքաշինական գործարանը, որը թողարկելու է մետաղահատ և փականագործական-մոնտաժային գործիք՝ Անդրկովկասում տեղադրված ձեռնարկությունների պահանջները բավարարելու համար։ Դրա հետ մեկտեղ Լուսավանի գործարանը չուգունային ձուլվածքով կապահովի ռեսպուբլիկայի հաստոցաշինական գործարանների պահանջները։*

*Ռեսպուբլիկայի հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության արտադրանքը վեցերորդ հնգամյակում կաճի 6,2 անգամ։*

*Հայաստանի էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքը վեցերորդ հնգամյակում կաճի ավելի քան երկու անգամ և 1960 թվականին կհասնի ավելի քան 800 միլիոն ռուբլու։*

*Հայէլեկտրագործարանը, որը միության էլեկտրատեխնիկական արդյունաբերության խոշոր գործարաններից մեկն է, շատ չափերով կավելացնի գեներատորների, ուժային տրանսֆորմատորների, շարժական էլեկտրակայանների, տրանսֆորմատորային ենթակայանների և այլ արտադրանքների արտադրությունը։*

*Երևանի Կաբելի գործարանը մերկ ալյումինային լարի թողարկումը կավելացնի 5,5 անգամ, պղնձի գլանվածքինը՝ 9 անգամ, ռետինե մեկուսացում ունեցող ուժային կաբելներինը՝ 1,8 անգամ, էլեկտրալուսավորության լար՝ 2 անգամ, պղնձե լար՝ 2,8 անգամ։*

*Երևանի էլեկտրատեխնիկական գործարանը մասնագիտանում է 3-րդ և 4-րդ գաբարիտի էլեկտրաշարժիչներ արտադրելու գործում, որոնց թողարկումը հնգամյակի վերջին, 1955 թվականի համեմատությամբ, կավելանա 5 անգամ։*

*Ընդլայնվելու է ճշգրիտ էլեկտրագործիքների գործարանի արտադրանքների ցանկը նոր, ավելի կատարելագործված էլեկտրաչափիչ գործիքների (վոլտմետրերի, զանազան տիպի ամպերմետրերի) թողարկմամբ։ Էլեկտրավերանորոգման գործարանի հիմնական արտադրանքը լինելու են 1-ին և 2-րդ գաբարիտի էլեկտրաշարժիչները, որոնց թողարկումը կավելանա 2,5 անգամ։*

*Արդեն սկսել է արտադրանք տալ նոր էլեկտրասարքատների գործարանը։*

Գործարանի հիմնական արտադրանքը բազմակոնտակտ անջատիչների և ձեռքի թողարկիչների մասսայական արտադրությունն է։

Էլեկտրալամպերի գործարանը կավելացնի լամպերի թողարկումը՝ 1955 թվականի 14,9 միլիոն հատի դիմաց 1960 թվականին հասցնելով 74 միլիոն հատի։ Սովորական տիպի լամպերի հետ միասին արտադրվելու են լյումինեսցենտային և հատուկ լամպեր։

1958 թվականին շահագործման հանձնվի ռելեների արտադրության գործարանը՝ 50 միլիոն ռուբլու համախառն արտադրանքի նախագծային կարողությամբ, որը լրիվ կիրացվի 1960 թվականին։

Մոտավորապես 2,3 անգամ ավելանում է Երևանի պահեստամասերի գործարանի և Լենինականի հեծանիվի գործարանի արտադրանքը։

Փոքր հիդրոտուրբինների գործարանը կդադարեցնի փոքր կարողության հիդրոտուրբինների թողարկումը, որոնց գործադրումը շահեկան չէ, և ազատ մնացած արտադրական կարողությունների հաշվին կանցնի կենտրոնախույս պոմպերի մասսայական թողարկմանը՝ քանակով տարեկան 100 հազար հատ։

Կոմպրեսորների գործարանն անցնում է ավելի կատարելագործված կոմպրեսորների արտադրության, և ավելի քան երեք անգամ կավելանա վակուումպոմպերի թողարկումը։

Հայաստանում արդեն հիմնադրվել են.

Կիրովականի «Ավտոմատիկ» գործարանը՝ քիմիական արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի ավտոմատացման սարքավորում արտադրելու համար։

Լենինականի «Պրոմպրիբոր» գործարանը՝ ընդհանուր արտադրության նշանակություն ունեցող սարքավորումների արտադրության համար։

Երևանի գործիքաշինական գործարանը։

Նշված երեք գործարաններն էլ արտադրանքի թողարկումը կսկսեն 1957 թվականից, իսկ 1960 թվականի համախառն արտադրանքի ծավալը կկազմի 70 միլիոն ռուբլի։

Գործիքաշինական ձեռնարկությունների թվին է պատկանում նաև Երևանի ժամացույցի գործարանը, որի արտադրանքը 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, կավելանա գրեթե երկու անգամ։

Ամբողջությամբ վերցրած մեքենաշինական ձեռնարկությունների գծով կապիտալ ներդրումների ծավալը վեցերորդ հնգամյակում սահմանված է 353,3 միլիոն ռուբլու չափով՝ հինգերորդ հնգամյակի 155,9 միլիոն ռուբլու դիմաց։

Կապիտալ ներդրումների զգալի ծավալը պահանջում է համապատասխանորեն ավելացնել շինանյութերի՝ պատային, միջնապատային, կպչուն և հարդարող նյութերի, սանիտարական-տեխնիկական սարքավորումների արտադրությունը։

Վեցերորդ հնգամյակում շինանյութերի հիմնական տեսակների աճը բնութագրվում է հետևյալ տվյալներով (1960 թվականին՝ 1955 թվականի համեմատությամբ). ցեմենտ՝ 2 անգամ, շինարարական քար՝ 2,1 անգամ, հավաքովի երկաթ-բետոնային արտադրանքներ՝ 16 անգամ, ապրոշիֆեր 1,4 անգամ, ալեբաստր-գաջ՝ 2,6 անգամ։

Դրա հետ մեկտեղ ավելացվում է կղմինդրի, աղյուսի, քարավազի, պեմզայի, մուլիտի, գրանիտի արտադրությունը, կազմակերպվում են միջնապատային նյութերի արտադրության կոմբինատներ և պոլիգոններ, փայտե հավաքովի կոնստրուկցիաներ, փայտե-հյուսվածքային սալիկների գործարան և այլն։



Ներկայումս միութենական համապատասխան ինստանցիաներում քննվում է մեր ռեսպուբլիկայի մտցրած այն առաջարկությունը, որը վերաբերում է միության Հարավի կարիքները բավարարելու համար Հայկական ՍՍՌ շինանյութերի արտադրության ընդլայնմանը։ Վեցերորդ հնգամյա պլանը վերջնականապես իջեցնելիս, ինչպես նաև տարեկան օպերատիվ պլանները կազմելիս ճշտվելու են լրացուցիչ արտադրության և պահանջվող կապիտալ ներդրումների չափերը։ Առանց այդ բանը հաշվի առնելու շինանյութերի արդյունաբերության մեջ կապիտալ ներդրումները հնգամյակի ընթացքում կկազմեն 268,3 միլիոն ռուբլի, որը հինգերորդ հնգամյակի համեմատությամբ կտա 2,5 անգամ աճ։

Հայաստանի անտառային արդյունաբերությունը կահույքի արտադրությունը 1,5 անգամ կավելացնի գործող ֆաբրիկաների վերակառուցման հաշվին։ Վեցերորդ հնգամյակում կսկսվի նոր ֆաբրիկայի շինարարությունը։

Թեթև արդյունաբերության համախառն արտադրանքը հնգամյակի ընթացքում կավելացվի 1,5 անգամ։ Արտադրանքի այդպիսի աճի կհասնենք հերթափոխությունն ավելացնելու, արտադրական տարածությունները լավագույն կերպով օգտագործելու, լրացուցիչ արտադրական կարողություններ շահագործման հանձնելու, արտադրական պրոցեսները կոմպլեքսային մեխանիզացիայի և ավտոմատիզացիայի ենթարկելու, ձեռնարկությունները մասնագիտացնելու, սարքավորումը մոդեռնացնելու և այլ միջոցառումներով։

Լենինի անվան մետաքսագործական ֆաբրիկայում դրվում են 311 լրացուցիչ ջուլհակահաստոցներ, և այդ հնարավորություն կտա բարձրորակ մետաքսի գործվածքն ավելացնել՝ 1955 թվականի 4,77 միլիոն մետրից 1960 թվականին հասցնելով 7,4 միլիոն մետրի։

Լենինականի տեքստիլ կոմբինատում հարդարման ֆաբրիկայի շինարարությունն ավարտելուց հետո լրացուցիչ կարգով դրվելու են 608 ջուլհակահաստոցներ։ Բամբակի գործվածքեղենի թողարկումը 1955 թվականի 57,1 միլիոն մետրից 1960 թվականին կհասնի 81,8 միլիոն մետրի։

Բրդյա գործվածքեղենի թողարկումը համապատասխանորեն կավելանա 2,39 միլիոն մետրից մինչև 4,9 միլիոն մետրի։ Երևանի Մահուդի ֆաբրիկայում և Կամվոլնի կոմբինատում դրվելու են լրացուցիչ հաստոցներ։

Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկան արտադրանքը կավելացնի 2 միլիոն հատով, որի կոմպլեկտավորումը կլրացվի 50 արագընթաց իլիկներով։

Լենինականի գուլպա-տրիկոտաժային ֆաբրիկան մասնագիտանում է գուլպեղենի արտադրանք թողարկելու գործում։ Հնացած սարքավորումը փոխարինվելու է ավելի կատարելագործված սարքավորմամբ։ Ֆաբրիկայի կարողությունը կավելացվի 8,5 միլիոն զույգ գուլպաների արտադրանքով։

1959 թվականին Լենինականում շահագործման կհանձնվի տրիկոտաժի նոր ցեխ՝ 5 միլիոն հատ սպիտակ տրիկոտաժի արտադրանքով։

Ստեփանավանի գուլպայի ֆաբրիկայում պետք է կառուցվի նոր կորպուս, որը կվերացնի անհամամասնությունը գործող, փաթաթող և թողարկող ցեխերի միջև և կկրկնապատկի ֆաբրիկայի կարողությունը։

Գրեթե երկու անգամ կավելանա կոշիկի արտադրությունը, որին հա-

նելու ենք գործող ձեռնարկություններում երկհերթ աշխատանք մտցնելով և նոր ֆաբրիկայի կազմակերպմամբ, որտեղ նոր տեխնոլոգիայի հիման վրա միավորվելու են 1956 թվականին թեթև արդյունաբերության մինիստրությանը հանձնված արհեստագործական կոոպերացիայի արտելները։ Վերակառուցվելու է Երևանի Կաշվի գործարանը։

Հնգամյակի խոշոր օբյեկտներից մեկը կհանդիսանա 1959 թվականին սկսվելիք ացետատային մետաքսի գործարանը, որը խոշոր նշանակություն կունենա Հայաստանի թեթև արդյունաբերության հետագա զարգացման համար։

Կապիտալ ներդրումները թեթև արդյունաբերության մեջ կկազմեն 200 միլիոն ռուբլուց ավելի։

Նախատեսվում է պարենային ապրանքների արդյունաբերության ձեռնարկությունների արտադրանքի զգալի աճ. 1960 թվականին մսի և կաթի արտադրանքը, ձկնեղենի և հացի արտադրանքը կաճի մոտավորապես 1,5 անգամ։

Ապրանքների հիմնական տեսակների արտադրությունը 1955 թվականի համեմատությամբ 1960 թվականին նախատեսված է հետևյալ չափերով. շաքարավազ՝ 13 հազար տոննա, աճ 1,5 անգամ, հրուշակեղեն՝ 19 հազար տոննա, աճ 2,5 անգամ, պահածոներ՝ 105 միլիոն պայմանական տուփ, աճ 1,9 անգամ, խաղողի գինի՝ 3,53 միլիոն դեկալիտր, աճ 1,4 անգամ, շամպայն գինիներ՝ 150 հազար շիշ, աճ 3,8 անգամ, գարեջուր՝ 3,1 միլիոն դեկալիտր, աճ 1,9 անգամ, հանքային ջրեր՝ 60 միլիոն շիշ, աճ 2,1 անգամ, ոչ-ալկոհոլիկ խմիչքներ՝ 800 հազար դեկալիտր, աճ 1,3 անգամ, 1-ին կատեգորիայի միս ու ենթամթերքներ՝ 20,2 հազար տոննա, աճ 1,3 անգամ, պանրի բոլոր տեսակները՝ 4,5 հազար տոննա, աճ 1,6 անգամ, կենդանական յուղ՝ 1,6 հազար տոննա, աճ 1,3 անգամ, քարաղ՝ 125 հազար տոննա։

Սննդի արդյունաբերության մեջ արվող կապիտալ ներդրումներ նախատեսված է 280 միլիոն ռուբլի գումարի չափով։

Սննդի արդյունաբերության այն խոշոր նորակառույցները, որոնք շահագործման կհանձնվեն վեցերորդ հնգամյակի ընթացքում, հետևյալներն են. Ավանի աղահանքը՝ տարեկան 300 հազար տոննա նախագծային կարողությամբ, Այրումի կոնսերվի գործարանը՝ 29,5 միլիոն պայմանական տուփ նախագծային կարողությամբ, որի առաջին հերթը, 15 միլիոն պայմանական տուփ կարողությամբ, շահագործման կհանձնվի 1960 թվականին։ Բանջարեղենի պահածոների գործարան Հրազդանում՝ 10 միլիոն պայմանական տուփ կարողությամբ, գինե-քարային թթվուտի գործարանը, շամպայնի գինիների գործարանը, Հոկտեմբերյանի գինու գործարանները, Հոկտեմբերյանի կոնյակի գործարանը, մեխանիզացիայի ենթարկված խոշոր հացի գործարանները Երևանում, Լենինականում, հացի գործարաններ Նոր Բայազետում, Ղափանում, ածիկի գործարան Լենինականում, մսի և կաթնեղենի կոմբինատ Երևանում, էջմիածնի թռչնաֆաբրիկան, մսի կոմբինատ Ղափանում և մի շարք այլ մանր ձեռնարկություններ ու վերամշակող կետեր։

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին ենթակա ձեռնարկությունների արտադրանքի ծավալը հնգամյակի ընթացքում կաճի, մոտավորապես, 1,8 անգամ։

Տեղական արդյունաբերության այն ձեռնարկությունները, որոնք հանձ-



նըված են ժողտնտխորհին, վեցերորդ հնգամյակի ընթացքում պետք է յուրացնեն հետևյալ նոր տեսակի արտադրանքների արտադրությունը՝ դաշնամուր, չուգունե էմալապատ ամանեղեն, սոլոլիտ (արհեստական ֆաներ), մսի մեքենաներ, բյուրեղապակի, գեղարվեստական ապակի, հախճապակե արտադրանքներ, լինոլիում, արհեստական ներբան, պլաստիկատ, պլաստմասսայի արտադրանքներ և այլն։

Արհեստագործական կոոպերացիայում զարգանալու է գորգերի արտադրությունը (աճ 74 տոկոսով), ակնագործական արտադրանքների արտադրությունը (աճ 290 տոկոսով), արդյունաբերության մնացորդների վերամշակումը՝ կենցաղային սպասարկման համար։

Անդրկովկասի երկաթգծի Երևանի բաժանմունքում նախատեսված է Սադախլու—Ալավերդի գծամասի էլեկտրիֆիկացումը, որը հնարավորություն կտա էլեկտրաքարշումը տարածել երկաթգծի նոր բաղուկների վրա և դրանով իսկ գնացքները Թբիլիսիից մինչև Լենինական վարել միևնույն տիպի լոկոմոտիվներով։

Կապի տնտեսության մեջ արվող կապիտալ ներդրումները կավելացնեն կապի բաժանմունքների ու գործակալությունների թիվը, Երևան քաղաքի ավտոմատ-հեռախոսային ցանցի կարողությունը կընդլայնվի 3000 համարով, ավտոմատ-հեռախոսային ցանցի նոր լրացուցիչ կայաններ կկազմակերպվեն Ալավերդում, Ղափանում, Արտաշատում, Բայազետում, Ջերմուկում, Գորիսում, Հոկտեմբերյանում։

Զգալի չափով կապիտալ ներդրումներ են նախատեսվում գյուղատնտեսության համար։ Ջրային տնտեսության գծով ջրովի հողերի աճը կկազմի 38,0 հազար հեկտար, ջրովի կդարձվեն տասնյակ հազար հեկտար արոտավայրեր։ Կավարտվեն Արզնի—Շամիրամի ջրային սիստեմը և Թալինի ու Կոտայքի ջրային սիստեմների առաջին հերթը, Հրազդանի, Ալափարսի, Դվինի ջրանցքների երկրորդ հերթը և մի շարք ավելի մանր օբյեկտներ։ Ջրատնտեսական շինարարության համար ընդամենը նախատեսվում է 210 միլիոն ռուբլի։

ՄՏԿ-ների արտադրական, տնտեսական-կենցաղային օբյեկտների և վերանորոգման արհեստանոցների շինարարության համար նախատեսված է 35 միլիոն ռուբլի։ Բացի այդ, մինչև 150 միլիոն ռուբլի է առանձնացվում տրակտորներ, կոմբայններ և այլ տեսակի գյուղատնտեսական մեքենաներ ու սարքավորում ձեռք բերելու համար։ Էլեկտրիֆիկացման, Գյուղատնտեսական մինիստրության ուսումնական հաստատությունների ու այլ ռեսպուբլիկական օբյեկտների համար նախատեսվում են 60 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումներ։

Անասնաբուժական սովետական տնտեսությունների գծով պետական կապիտալ ներդրումներ սահմանված են 59,2 միլիոն ռուբլի։

Ավելի մեծ չափով միջոցներ են ներդրվելու կուլտուր-կենցաղային հիմնարկների, դպրոցների, հիվանդանոցների, մանկական հիմնարկների շինարարության մեջ, քան այդ արվում էր հինգերորդ հնգամյակում։

Վեցերորդ հնգամյակում շահագործման են հանձնվելու նոր կինոթատրոններ 1950 տեղով, ընդհանուր-կրթական դպրոցներ (ներառյալ գիշերօթիկ դպրոցները) 44,1 հազար աշակերտ-տեղով՝ 1,8 անգամ ավելի, քան հինգերորդ հնգամյակում. մանկապարտեզներ՝ 5,6 հազար տեղով, կամ աճ 2,8 անգամ, մանկամսուրներ 2,5 հազար տեղով, կամ աճ 2,5 անգամ, հիվանդա-

նոցային 2000 մահճակալ, կամ աճ 3 անգամ։ Ամբողջապես վերացվելու են երրորդ հերթի պարապմունքները դպրոցներում, խիստ կկրճատվեն երկրորդ հերթերը, իսկ հիվանդանոցային մահճակալների ցանցի ընդլայնման հետ միասին, հիվանդանոցային մահճակալներով բնակչության ապահովվածությունը կավելանա 24 տոկոսով։

Շահագործման են հանձնվելու հյուրանոցներ 778 տեղով, քաղաքներում ջրմուղի ցանցը կավելանա 20 տոկոսով, կոյուղու ցանցի երկարությունը կընդլայնվի 2,3 անգամ, բաղնիքների միաժամանակյա տարողությունը՝ 25 տոկոսով։ Տրամվայի գծերը կերկարեն ավելի քան 2 անգամ, տրոլեյբուսներն ավելի լայնորեն կսպասարկեն բնակչությանը։ Կմեծանա Ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության ապրանքային և մարդատար մեքենաների նյութա-տեխնիկական բազան ու պարկը։

Պլանի ճշգրտված նախագծի համաձայն Հայկական ՍՍՌ-ում վեցերորդ հնգամյակի ընթացքում շահագործման է հանձնվելու 1400 հազար քառակուսի մետր նոր բնակելի տարածություն (չհաշվելով այն բնակարանները, որ կառուցելու են կոլտնտեսականները)։

Թե որքան զգալի են այդ շինարարության մասշտաբները, երևում է այն բանից, որ շահագործման հանձնվելիք նոր բնակելի տարածությունը առ 1956 թվականի հունվարի 1-ը ունեցած քաղաքային բնակելի ֆոնդի գրեթե 40 տոկոսն է կազմելու և 2 անգամ գերազանցելու հինգերորդ հնգամյակի ընթացքում շահագործման հանձնված բնակելի ֆոնդը։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հավատարիմ Լենինի պատգամներին, անդադրում հոգ են տանում Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաների արտադրողական ուժերի զարգացման համար։

---

# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԼՈՒՍԱՎՈՐ ՈՒՂԻՆԵՐՈՎ

Ա. ՇԱՀԻՆՅԱՆ

1957 թվականի նոյեմբերի 7-ին լրանում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասուներորդ տարին։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան, որը կատարվեց Վ. Ի. Լենինի գլխավորած Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, խորտակելով կապիտալիզմը Ռուսաստանում՝ նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։

Անչափ մեծ է Հոկտեմբերի վիթխարի ազդեցությունը ժողովուրդների, ազգությունների, աշխարհի ողջ մարդկության ընթացքի վրա։ Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի համազարկերը արթնացրին ամբողջ աշխարհի հարյուր միլիոնավոր մարդկանց, նրանց պայքարի կոչեցին կապիտալիստական կեղեքումից ազատվելու համար։ Մարքսիստական-լենինյան անհաղթ գաղափարներն իրականացան Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան կենսագործեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ սկզբունքները, նոր աստիճանի բարձրացրեց համաշխարհային բանվորական և ազգային ազատագրական շարժումը։

Անցած քառասուն տարիները մեծ փոփոխությունների տարիներ էին ինչպես Սովետական Միության, այնպես էլ ամբողջ աշխարհի համար։ Սովետական երկրի ժողովուրդների ստեղծագործական անսպառ ակտիվության աղբյուրը հանդիսացող մեծ Հոկտեմբերի շնորհիվ, հարյուրամյակներ շարունակ ճնշվող ու շահագործվող աշխատավորներն առաջին անգամ հնարավորություն ստացան աշխատել և ստեղծագործել միայն իրենց բարօրության համար։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան ազատագրություն բերեց հին Ռուսաստանի բոլոր ազգերին, նրանց առջև լայն հեռանկարներ բացեց արտադրողական ու հոգևոր ուժերի բազմակողմանի զարգացման համար։ Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ, անցյալում ճնշված ու հետամնաց ժողովուրդները իսկական ազգային վերածնունդ ապրեցին՝ մեծամեծ հաջողություններ ձեռք բերելով տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի՝ «Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի տոնակատարության մասին» որոշման մեջ ասված է՝

«Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան շատ լայն ասպարեզ

բացեց ՍՍՌՄ-ում բնակվող բոլոր ազգությունների քաղաքական ու տնտեսա-
կան զարգացման համար, նրանց պետական սուվերենության հաստատման և
ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկման
համար։ Ժողովուրդների մեծ բարեկամությունը, միաբանությունն ու փոխօգ-
նությունը փոխարինելու եկան նրանց երբեմնի անջատվածությանն ու թշնա-
մանքին, հաղթանակ տարավ լենինյան ազգային քաղաքականությունը՝ բոլոր
ժողովուրդների և ազգերի իրավահավասարության, բարեկամության ու եղ-
բայրության քաղաքականությունը»։

Պատմության ամբողջ ընթացքը ցույց տվեց, որ, ինչպես բոլոր ճնշված
ժողովուրդների, այնպես էլ հայ ժողովրդի ազատագրության ուղին Հոկտեմ-
բերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ցույց տված ուղին է։ Միայն
Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան, միայն սովետական կարգերի գաղափարը
հայ ժողովրդի երկարատև պայքարը պսակեց հաջողությամբ, նրան տալով
ազգային վերածննդի հնարավորություն։ Կործանման անդունդի եզրին հասած
հայ ժողովուրդն իր փրկությունը գտավ հանձին Սովետական իշխանության։

Կոմունիստական պարտիայի կողմից լենինյան ազգային քաղաքականու-
թյան կենսագործումը կյանքում բացառիկ նշանակություն ունեցավ Հոկտեմ-
բերյան ռևոլյուցիայի հաղթանակը ամրապնդելու և զարգացնելու համար։
ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը, որը ցեմենտված է լենին-
յան ազգային քաղաքականությամբ, բացառիկ ուժով հանդես եկավ Սովետա-
կան իշխանության բոլոր տարիներին։ Ազգերի այդ համագործակցության
մեջ էլ, ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր հոգատարությամբ. աճեց ու զար-
գացավ Սովետական Սոցիալիստական Հայաստանը։

Սովետական մեծ Միության իրավահավասար անդամը հանդիսացող
Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան թեև շատ երիտա-
սարդ է, սակայն իրականում հայ ժողովրդի կուլտուրան ունի բազմադարյան
պատմություն։

Հայ ժողովրդի բազմադարյան պատմությունը լի է հերոսական սխրա-
գործություններով և ամենածանր փորձություններով։ Իր ազատության
համար մղվող պայքարում հայ ժողովուրդը պահպանել է և իր կուլտուրան,
իր լեզուն, իր գիրն ու գրականությունը, արվեստը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան լիակատար ազատու-
թյուն բերեց հայ ժողովրդին, ինչպես և ցարական Ռուսաստանի անցյալում
ճնշված բոլոր ժողովուրդներին։ Կուլտուրական ամեն մի արժեք լայն մաս-
սաների սեփականությունը դարձավ միայն սոցիալիստական Հայրենիքում։
Հայ ժողովուրդը իրավացիորեն հպարտանում է իր դարավոր կուլտուրայով,
բայց նա առավել հպարտանում է կուլտուրայի և արվեստի բնագավառում
ստեղծված այն արժեքներով, որոնք սովետական տարիների արգասիք են։

Ինչպես Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաներում, այնպես էլ
Հայաստանում Սովետական իշխանության տարիներին տեղի ունեցավ իսկա-
կան կուլտուրական ռևոլյուցիա, որն ընդգրկեց ժողովրդի հոգևոր կյանքի
բոլոր բնագավառները։ Սովետական Հայաստանի այսօրվա կյանքը ժողովր-
դական տնտեսության, կուլտուրայի, գիտության, գրականության և արվեստի
աննախընթաց զարգացման վառ պատկեր է ներկայացնում։

Մինչև Սովետական իշխանության հաստատումը Հայաստանի ազգա-
բնակչության 90 տոկոսից ավելին անգրագետ էր, երեխաները զրկված էին



ձրի ու պարտադիր ուսում ստանալու հնարավորությունից։ Ծանր էր նաև ժո-
ղովրդական ուսուցչի վիճակը։ Բավական է նշել, որ 1914—1915 թվականնե-
րին բնակչության յուրաքանչյուր 100 հոգուն ընկնում էր ընդամենը 3,5 սո-
վորող։

Սովետական իշխանության առաջին իսկ տարիներից խոշոր միջոցներ
տրամադրվեցին լուսավորության զարգացման գործին և չափազանց կարճ ժա-
մանակում ռեսպուբլիկայի ամենահեռավոր անկյուններն անգամ ծածկվեցին
մասսայական դպրոցների լայն ցանցով։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են
1187 դպրոց, մոտ 300 հազար աշակերտներով, որը 1914 թվականի համեմա-
տությամբ աճ է տալիս ավելի քան 15 անգամ. բոլոր դպրոցներում աշխա-
տում են ավելի քան 18 հազար ուսուցիչներ։

Ռեսպուբլիկայում իսպառ վերացել է անգրագիտությունը։ Հարյուրավոր
նոր դպրոցական շենքեր են կառուցվել քաղաքներում և գյուղերում։

Բարձրագույն ուսումնական հաստատությունները Հայաստանում նույնպես
Սովետական իշխանության ծնունդ են։ Ներկայումս ռեսպուբլիկայում գործում
են 14 ստացիոնար և հեռակա բարձրագույն ուսումնական հաստատություն-
ներ, որտեղ սովորում են 13 հազար ուսանողներ։

Այնպիսի բուհեր, ինչպիսիք են՝ Երևանի Պետական համալսարանը, Կարլ
Մարքսի անվան Պոլիտեխնիկական ինստիտուտը, Անասնաբուժական, Բժըշ-
կական և Գյուղատնտեսական ինստիտուտները, մանկավարժական ինստի-
տուտները, Թատերական-գեղարվեստական ինստիտուտը և Պետական կոն-
սերվատորիան. իրենց գոյության ընթացքում երկրին տվել են հազարավոր
շրջանավարտներ, որոնք հաջողությամբ աշխատում են ինչպես ռեսպուբլի-
կայի, այնպես էլ Սովետական Միության մյուս ռեսպուբլիկաների ժողովրդա-
կան տնտեսության և կուլտուրայի տարբեր բնագավառներում։

Բացի բարձրագույն ուսումնական հաստատություններից, Հայաստանում
այժմ գործում են 53 տեխնիկումներ և մասնագիտական միջնակարգ դպրոց-
ներ, որոնք միջին որակի կադրեր են պատրաստում։

Աշխատավորության կուլտուրական մակարդակի բարձրացումը միշտ էլ
եղել է Սովետական իշխանության հոգատարության առարկան։ Սովետական
իշխանության տարիներին երկրի տեխնիկական-տնտեսական հետամնացու-
թյունը լիկվիդացնելու հետ միաժամանակ, հաջողությամբ հաղթահարվում էր
նրա հետամնացությունը նաև կուլտուրայի ասպարեզում։ Ռեսպուբլիկայում
աստիճանաբար ստեղծվում էր կուլտուր-լուսավորական հիմնարկների խիտ
ցանց։ Բավական է նշել, որ մինչև սովետական կարգերի հաստատումը Երև-
վանում կար ընդամենը մեկ չինովնիկական ակումբ, երկու խարխուլ կինո-
թատրոն, դուդուկիստների խումբ և հատ ու կենտ գրադարաններ՝ Էջմիած-
նում, Ալեքսանդրոպոլում, Ղարսում, Դիլիջանում և Երևանում։ Այժմ ռես-
պուբլիկայում գոյություն ունեն ավելի քան հազար գյուղական, շրջանային,
մանկական, քաղաքային, պրոֆմիութենական, դպրոցական և այլ տիպի գրա-
դարաններ։

Սովետական Հայաստանում գործում են մի շարք խոշոր գրադարաններ։
Երևանի Ալ. Մյասնիկյանի անվան պետական Հանրային գրադարանը, որը
հիմնադրվել է 1921 թվականին, ունի ավելի քան երեք միլիոն կտոր գիրք։
Այդ գրադարանը յուրաքանչյուր տարի ընթերցողներին բաց է թողնում
ավելի քան 600 հազար կտոր գիրք, տալիս է 90 հազար բիբլիոգրաֆիական

տեղեկություններ, միջգրադարանային ձևով գրականություն է մատակարարում 164 կազմակերպությունների։ Նրա հազվագյուտ ֆոնդերի մեջ հայտնի են հայ առաջին տպագիր գրքերը՝ «Պարզատոմար»-ը, որը հրատարակվել է 1512 թվականին Վենետիկում, «Ուրբաթագիրք»-ը՝ հրատարակված 1513 թվականին, Մովսես Խորենացու «Հայոց պատմություն» առաջին հրատարակությունը, Նալբանդյանի և ուրիշների աշխատությունների առաջին օրինակները, մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները։

Խոշոր գրադարաններից են նաև Հայկական ռեսպուբլիկայի Գիտությունների Ակադեմիայի գրադարանը, որն ունի մոտ մեկ միլիոն կտոր գիրք, Երևանի Պետական համալսարանի, Պոլիտեխնիկ ինստիտուտի, Լենինականի և շատ ուրիշ գրադարաններ։

Երևանումն է գտնվում Պետական ձեռագրատունը՝ Մատենադարանը, որը հանդիսանում է բազմադարյան հայ կուլտուրայի հարուստ գանձարանը։ Այստեղ հավաքված մոտ 13 հազար հին ձեռագրերը և երկու հարյուր հազարի չափ արխիվային նյութերը արժեքավոր վկայություններ են պարունակում ո՛չ միայն Հայաստանի, այլև մյուս հարևան ժողովուրդների պատմական անցյալի մասին։

Հայ ժողովրդի կուլտուրայի զարգացման պատմության մեջ նոր երևույթներ են՝ քաղաքային և գյուղական ակումբները, կուլտուրայի տները, որոնք կարևոր դեր են խաղում ժողովրդական լայն մասսաների կուլտուրական մակարդակի բարձրացման գործում։ Այժմ ռեսպուբլիկայում գոյություն ունեն՝ 964 ակումբ, 52 կուլտուրայի տուն. (չհաշված պրոֆմիությունների և այլ կազմակերպությունների գծով գործող ակումբները)։ Քաղաքային և գյուղական ակումբներին կից գործում են հազարավոր երգի-պարի, թատերական ինքնագործ խմբակներ, դասախոսական, ագրո և զոոտեխնիկական ու այլ խմբակներ։ Նրանք օգտակար աշխատանք են կատարում աշխատավորության շրջանում, ակտիվորեն մասնակցում են տնտեսական-քաղաքական կամպանիաներին, ռևոլյուցիոն և այլ կարևոր տարեթվերի մասսայականացմանը, կուլտուրայի և արվեստի գծով նշվող հոբելյաններին։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները գյուղերում կառուցել են մի քանի հարյուր նոր շենքեր՝ ակումբների համար։ Այնպիսի ակումբային շենքեր, որպիսիք են՝ Էջմիածնի կոլտնտեսության կառուցած հոյակապ շենքը, Ախտայի շրջանի Ֆանտան, Ալափարս, Աշտարակի շրջանի Ոսկեվազ, Թալինի շրջանի Աշնակ, Արտաշատի շրջանի Անաստասավան և շատ ուրիշ գյուղերի ակումբների շենքերը, Ստեփանավանի, Հոկտեմբերյանի և ուրիշ շրջանների կուլտուրայի տների շենքերը, իրենցից ներկայացնում են սովետահայ ազգային ճարտարապետության լավագույն նմուշները։ Նրանք ունեն 400—500 տեղանոց դահլիճներ, ընթերցարաններ, խաղասենյակներ, սենյակներ՝ ինքնագործ խմբակների համար և այլն։ Եվ զարմանալի չէ, որ երբ գյուղ ես մտնում, առաջին հերթին աչքի են զարնում նորակառույց ակումբի, դպրոցի և ուրիշ կուլտուր-լուսավորական ու հասարակական հիմնարկների շենքերը։

Այժմ Սովետական Հայաստանում գործում են մոտ 400 կինոթատրոն, որոնցից ավելի քան 300-ը գյուղերում և շրջանային կենտրոններում են։ Միայն Երևանում կա 12 կինոթատրոն, որոնցից «Մոսկվա» կինոթատրոնը Սովետական Միության մեջ առաջնակարգ կինոթատրոնի համարում ունի։ Նա տարեկան սպասարկում է ավելի քան երեք միլիոն մարդ, իսկ ռեսպուբլիկայի



բոլոր կինոթատրոնները տարեկան սպասարկում են ավելի քան 8 միլիոն հանդիսատեսների։

Սովետական Հայաստանում հիմք դրվեց նաև սեփական կինեմատոգրաֆիային։ 1925 թվականին կազմակերպված դոկումենտալ և գեղարվեստական ֆիլմերի Երևանի կինոստուդիան աճել և դարձել է սովետական կինեմատոգրաֆիայի կարևոր օղակներից մեկը։ Իր գոյության ընթացքում նա արտադրել է շուրջ 200 գեղարվեստական և դոկումենտալ ֆիլմեր, որոնք մեծ հաջողությամբ դիտվել են ո՛չ միայն Սովետական Հայաստանում, այլև Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաներում։ Այդպիսիներից են՝ «Պեպո», «Զանգեզուր», «Սևանի ձկնորսները», «Մեքսիկական դիպլոմատները», «Երկիր հայրենի», «Կարո», «Սովետական Հայաստան», «Ուրվականները թողնում են լեռնագագաթները», «Հասցետիրոջ որոնումները», «Պատվի համար», «Սիրտը երգում է» և այլ ֆիլմեր։ Ստուդիան յուրաքանչյուր ամիս թողարկում է երեք կինոժուռնալ, որտեղ արտացոլվում է ռեսպուբլիկայի բազմաբեղուն կյանքը։ Եղբայրական ռեսպուբլիկաների ստուդիաների կողմից արտադրվող ֆիլմերից մոտ 25-ը յուրաքանչյուր տարի կրկնօրինակվում են հայերեն լեզվով։

Ռեսպուբլիկայի կուլտուրական կյանքի անբաժանելի և կարևոր մասն են կազմում ռադիոհաղորդումները։ Ռադիոհաղորդումների Գլխավոր վարչությունն ունի իր ստուդիան, բազմաթիվ բաժիններ՝ գյուղատնտեսության, արդյունաբերության, կուլտուրայի, արվեստի, գիտության բազմաթիվ բնագավառների վերաբերյալ հաղորդումներ կազմակերպելու նպատակով։ Հաղորդումներ ապահովելու համար կազմակերպված են անսամբլներ։ Ռեսպուբլիկայի կուլտուրայի և մյուս բնագավառների բազմաթիվ գործիչներ, արվեստագետներ, երգիչներ, գիտության, արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողներ սիստեմատիկորեն հանդես են գալիս ռադիոյի միջոցով։ Միայն գյուղում ռադիոընդունիչների և ռադիոկետերի թիվը հասնում է 51 հազար 500-ի։ Այժմ ռեսպուբլիկայում ռադիոբարձրախոսների և ռադիոընդունիչների թիվը հասնում է 111 հազարի, որից գյուղում՝ 56 հազար։ Ռադիոֆիկացված է 679 բնակավայր։ Գյուղը ստանում է հարյուր հազարավոր տեսակի գրքեր, թերթեր, ամսագրեր։

Սովետական Հայաստանի կուլտուրայի շինարարության զարգացման վերջին շրջանի խոշոր երևույթներից մեկը Երևանի հեռուստատեսային ստուդիայի կազմակերպումն է։ Այժմ արդեն նա ընդգրկում է ո՛չ միայն Երևանը, այլև Արտաշատի, Վեդու, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Աշտարակի, Ապարանի և Կոտայքի շրջանները։

Թանգարանային կուլտուրան Հայաստանում ստեղծվել ու զարգացել է Սովետական իշխանության տարիներին։ Հայաստանում ներկայումս գործում են թվով 15՝ պատմության, գրականության, կերպարվեստի, գավառագիտական թանգարանները, Շահումյանի, Թումանյանի, Աբովյանի և այլ տունթանգարանները, որոնք հսկայական կուլտուր-լուսավորական աշխատանք են ծավալում բնակչության մեջ։

Բնական է, որ Սովետական իշխանության տարիներին կատարված կուլտուրական ռևոլյուցիայի հետևանքով փոխվել է ռեսպուբլիկայի քաղաքների և գյուղերի կերպարանքը, ստեղծվել են նոր քաղաքներ, քաղաքատիպ ավաններ, նոր գյուղեր, վերափոխվել են հին գյուղերը։ Այդ բոլոր կառուցումների հեղինակները հանդիսանում են սովետահայ ճարտարապետները։

*Զտեսնված ծաղկման է հասել գիտությունը Սովետական Հայաստանում։ Հենց Սովետական իշխանության առաջին տարիներին ստեղծվեցին մի շարք գիտա-հետազոտական ինստիտուտներ։ 1935 թվականին կազմակերպվեց ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի Հայկական ֆիլիալը, որի կազմի մեջ մտան Գեոլոգիական, Քիմիական, Բիոլոգիական, Բուսաբանական, Պատմության, Գրականության և Լեզվի ինստիտուտները, ինչպես նաև 6 սեկտորներ և բաժիններ։ Հայրենական պատերազմի ամենաթեժ օրերին, 1943 թվականի նոյեմբերին, Սովետական մեծ Միության կառավարության որոշմամբ, կազմակերպվեց Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիան, որի ինստիտուտների և գիտական հաստատությունների թիվը ներկայումս հասնում է 30-ի։ Նրա սիստեմում աշխատում են ավելի քան 500 գիտական աշխատողներ։ Նրա կազմի մեջ կան շատ խոշոր գիտնականներ, որոնց գործունեությունը լայն հայտնի է Սովետական Միությունում և նրա սահմաններից էլ դուրս (եղբայրներ Լ. և Հ. Օրբելիները, Ալիխանյանները, ակադեմիայի պրեզիդենտ Վ. Համբարձումյանը, Կոշտոյանցը, Ավետիք Իսահակյանը և շատ ուրիշներ)։ Իր գոյության ընթացքում Հայկական Գիտությունների Ակադեմիան ընդհանուր վերելք է ապրել և այժմ իրավամբ համարվում է ռեսպուբլիկայի գիտական մտքի կենտրոնը։ Նա իր ամբողջ գործունեությունն ի սպաս է դնում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման, նրա կուլտուրայի վերելքի գործին։ Նա մշակել է շատ պրոբլեմներ, որոնք խոշոր գիտական և գործնական նշանակություն ունեն։*

*Սովետական իշխանության տարիներին փարթամորեն ծաղկեցին սովետահայ գրականությունը և արվեստը։*

*Հայաստանի Սովետական Գրողների Միությունը միավորում է իր մեջ մոտ 180 հոգի։ Օգտագործելով և յուրացնելով անցյալի հարուստ գրական ժառանգությունը, նրա լավագույն տրադիցիաները՝ սովետահայ գրականությունն իր բազմաթիվ ժանրերով արտացոլելով սովետական կյանքն իր բնորոշ կողմերով, համեմատաբար կարճ ժամանակամիջոցում խոշոր կուլտուրական արժեքներ ստեղծեց։ Ինչպես ավագ սերնդին պատկանող մեր անվանի գրողները՝ Հ. Հակոբյանը, Ե. Չարենցը, Ավ. Իսահակյանը, Դ. Դեմիրճյանը, Ստ. Զորյանը, Մ. Արազին և մյուսները, այնպես էլ Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո հանդես եկած գրողները՝ Բակունցը, Զարյանը, Սարյանը, Վշտունին, Քոչարը, Սիրասը, Ալազանը, Մահարին, Նորենցը, Արմենը, Գրաշին, Շիրազը, Տարոնցին, Սարմենը, Արաքսը, Թափալցյանը, Կապուտիկյանը, Մարգարյանը, Հովհաննիսյանը, Էմինը, Գրիգորյանը և շատ ուրիշներ ստեղծեցին լուրջ գործեր, ինչպես արձակի, այնպես էլ չափածոյի գծով, որոնք ջերմ ընդունելություն գտան սովետական ընթերցողների կողմից։*

*Հայ ժողովրդի բազմադարյան և հարուստ կուլտուրայի մեջ իր նշանակալից տեղն ունի տպագիր գրքի մշակույթը, որը չորս ու կես դարի պատմություն ունենալով՝ տվել է ո՛չ միայն խոշորագույն գործեր, այլև թարգմանվել է մայրենի լեզվով, տարածվել են գիտության և գրականության ռուսական և արևմտա-եվրոպական կլասիկների գործերը։ Սակայն տպագիր գրքի կուլտուրան իր բուռն վերելքն ապրեց սովետական կարգերի օրոք միայն։ Բավական է նշել, որ Հայաստանում սովետական կարգերի հաստատվելուց հետո՝ 1920 թվականից մինչև 1957 թվականը, միայն պետական հրատարակչության գծով տպվել է 19 հազար անուն գիրք, մոտ 100 միլիոն օրինակ տիրաժով։ Միայն*



*1954 թվականին լույս է տեսել 934 անուն գիրք և բրոշյուր, 6 միլիոն 415 հազար տիրաժով, մինչդեռ 1913 թվականին Հայաստանում տպագրվել է 55 անուն, 100 հազար ընդհանուր տիրաժով։ Իսկ դաշնակների տիրահոչակ տիրապետության ժամանակ՝ 1918 թվականին, ընդամենը հրատարակվել է 6 անուն գիրք։*

*Բազմազան է Սովետական Հայաստանի արվեստը, և այդ բազմազանության մեջ իր կարևոր տեղն է բռնում թատերական կուլտուրան։ Թեև հայ թատրոնը 2000-ամյա պատմություն ունի, բայց սովետական կարգերը հաստատվելուց առաջ Հայաստանում գոյություն չի ունեցել և ոչ մի պետական մնայուն թատրոն։*

*Այժմ ռեսպուբլիկայում գործում է 10 պետական թատրոն. Պետական օպերայի և բալետի ակադեմիկ թատրոնը, Սունդուկյանի անվան պետական դրամատիկ թատրոնը, Լենինականի, Կիրովականի, Նոր-Բայազետի, Գորիսի, Արտաշատի պետական թատրոնները, Պատանի Հանդիսատեսի թատրոնը, Ռուսական պետական թատրոնը, Երաժշտական Կոմեդիայի թատրոնը, ինչպես նաև Պետական կրկեսը։*

*Դրանց շարքում իր բարձր արվեստով առաջատար է հանդիսանում Սունդուկյանի անվան պետական թատրոնը, որը հիմնադրվել է 1921 թվականին։ Այս կոլեկտիվը իր գոյության ընթացքում ստեղծել է սքանչելի բեմադրությունների մի ամբողջ շարք և դաստիարակել ու աճեցրել է այնպիսի նշանավոր դերասաններ, որպիսիք են՝ Վաղարշ Վաղարշյանը, Օլգա Գուլազյանը, Հրաչյա Ներսիսյանը, Ավետ Ավետիսյանը, Գուրգեն Ջանիբեկյանը, Ռուզաննա Վարդանյանը, Դավիթ Մալյանը, Գուրգեն Գաբրիելյանը, Թադևոս Սարյանը, Գեղամ Հարությունյանը, Հովհաննես Ավագյանը, Արուս Ասրյանը, Մ. Կոստանյանը, Գ. Խաժակյանը, Արազյանը, Պարոնիկյանը, Աշուղյանը և շատ ուրիշներ, ինչպես նաև երիտասարդ նոր ընդունակ կադրեր։ Թատրոնում աճել են նաև մեր նշանավոր ռեժիսորական կադրերը՝ Քալանթար, Աճեմյան, Գուլակյան, Վարդանյան և այլն։*

*Հայաստանի թատերական արվեստի զարգացման գործում պակաս դեր չեն խաղացել Լենինականի պետական թատրոնը, Պատանի հանդիսատեսի, ռուսական և մյուս թատրոնները։ Հայ ժողովրդի պատմության մեջ առաջին անգամ 1932 թվականին ստեղծվեց օպերայի և բալետի թատրոն։ Իր շուրջը համախմբելով ավագ սերնդի ականավոր ներկայացուցիչներին՝ Հայկանուշ Դանիելյանին, Շարա Տալյանին և ուրիշներին, թատրոնը աճեցրեց նոր երիտասարդ կադրեր, դարձավ մեր երաժշտական ու թատերական կուլտուրայի խսկական օջախը։*

*Ալեքսանդր Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի թատրոնի խաղացանկում կան հայկական, ռուսական և արևմտա-եվրոպական կոմպոզիտորների ստեղծագործություններ։ Նրա ոսկե ֆոնդն են կազմում՝ Ալեքսանդր Սպենդիարյանի «Ալմաստ», Տիգրան Չուխաջյանի «Արշակ Երկրորդ», Արմեն Տիգրանյանի «Անուշ» և «Դավիթ-բեկ» օպերաները, Արամ Խաչատրյանի «Գայանե» բալետը, ինչպես նաև ռուսական և արևմտա-եվրոպական օպերային շատ կլասիկ գործեր։*

*Կատարողական ուժերի հետ միասին աճել են և դիրիժորական կադրերը (Թավրիզյան, Բուդաղյան, Չարեքյան, Ստեփանյան, Տիկնյան, Դավթյան)։*

*Հայկական արվեստի և կուլտուրայի բնագավառներում ցուցաբերած աչքի*

ընկնող ծառայությունների համար 1939 թվականին հայկական արվեստի և
գրականության տասնօրյակի կապակցությամբ մեր Օպերայի և բալետի պե-
տական թատրոնը պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Անցած 37 տարում բուռն ծաղկել է հայ երաժշտական արվեստը, որի հա-
մար սովետական կառավարությունը ստեղծել է բոլոր պայմանները։

Նա ունեցել է իր ականավոր կլասիկները՝ Տիգրան Չուխաջյան, Կարա-
Մուրզա, Եկմալյան, Կոմիտաս, Սպենդիարյան և ուրիշներ։ Դրանց մեջ առաջ-
նակարգ տեղերից մեկը գրավում է հանճարեղ Կոմիտասը, որն իրավամբ
համարվում է հայկական կլասիկ երաժշտության հիմնադիրը։

Հայ երաժշտության պատմության մեջ մեծ դեր է կատարել Ա. Սպենդիար-
յանը, որն աճել և դաստիարակվել է ռուս մեծ կոմպոզիտորների միջավայրում։
Նա իր ստեղծագործությունների մեջ ժողովրդական երաժշտության խոր իմա-
ցությունը հիանալի կերպով համադրում է կլասիկ երաժշտության բարձր կուլ-
տուրայի հետ. նա հայ սիմֆոնիկ երաժշտության հիմնադիրն է։ Ազգային
երաժշտական կուլտուրայի զարգացման համար մեծ գործ են կատարել՝ Ա.
Տիգրանյանը, Ա. Խաչատրյանը, Ն. Տիգրանյանը, Ա. Տեր-Ղևոնդյանը, Հ. Ստե-
փանյանը, Կ. Զաքարյանը, Ա. Սաթյանը և շատ ուրիշներ։ Սովետական Հա-
յաստանի երաժշտական կյանքի զարգացման ամենաաչքի ընկնող երևույթն
այն է, որ վերջին տարիներին աճեց և առաջ եկավ տաղանդավոր երիտասարդ
կոմպոզիտորների մի սերունդ (Գ. Եղիազարյան, Ա. Բաբաջանյան, Էդ.
Հովհաննիսյան, Ա. Հարությունյան, Է. Միրզոյան, Է. Խաղագործյան և ուրիշ-
ներ), որոնց գործերը մեծ հաջողությամբ կատարվում են ամբողջ միու-
թյան մեջ։

Սովետական Հայաստանում ներկայումս հաջողությամբ գործում են Պե-
տական կոնսերվատորիան, երաժշտական շատ դպրոցներ, խորեոգրաֆիկ
ուսումնարանը, կերպարվեստի ուսումնարանը, որտեղ սովորում են բազմաթիվ
շնորհալի երիտասարդներ։

Հայֆիլհարմոնիան, որը աշխատավորության երաժշտական սպասարկման
Հայֆիլհարմոնիան, որը աշխատավորության երաժշտական սպասարկման
ամենախոշոր և կարևոր կենտրոններից մեկն է, կազմակերպվել է Սովետական
իշխանության տարիներին։ Նրա սիստեմում ընդգրկված երաժշտական կոլեկ-
տիվների մեծ մասը կազմակերպվել է 30-ական թվականներին։ Թաթուլ Ալ-
թունյանի ղեկավարությամբ մոտ 20 տարի գործող Հայկական երգի և պարի
վաստակավոր անսամբլը ճանաչված ստեղծագործական միավոր է ո՛չ միայն
ռեսպուբլիկայում, այլև Սովետական Միության մեջ։ Ստեղծագործական փայ-
լուն կոլեկտիվ է Արամ Տեր-Հովհաննիսյանի ղեկավարած երգեցիկ կապելլան։
Հայֆիլհարմոնիայի կազմի մեջ են մտնում նաև սիմֆոնիկ նվագախումբը՝
Մ. Մալունցյանի ղեկավարությամբ, գուսանական անսամբլը, ժողգործիքների
անսամբլը, էստրադային նվագախումբը և ուրիշ կոլեկտիվներ։ Կոմիտասի ան-
վան կվարտետը համամիութենական հռչակ է վայելում և պատկանում է մեր
երկրի լավագույն կամերային անսամբլների թվին, որը մեծ համբավ ունի նաև
արտասահմանում։

Հայկական կերպարվեստի կուլտուրան ունի շատ պայծառ և հարուստ
անցյալ։ Այդ մասին վկայում են հայկական ճարտարապետական հնագույն
հուշարձանները, գրքերի գեղարվեստական իլյուստրացիաները, գեղանկարչա-
կան գործերը, գեղարվեստական արդյունքը։ Սակայն հայկական կերպար-
վեստը բուռն ծաղկման և զարգացման լիակատար հնարավորություն ստացավ



միայն սովետական կարգերում։ Մեր ժողովուրդը իրավամբ կարող է հպար-
տանալ իր նշանավոր ժողովրդական նկարիչներ Սարյանի, Կոջոյանի, Գյուր-
ջյանի, Սարգսյանի, Ստեփանյանի, նմանապես Ուրարտուի, Աբեղյանի, Զար-
դարյանի, Իսաբեկյանի, Ազիզյանի և ուրիշների, ինչպես նաև շատ երիտա-
սարդ նկարիչների գործերով։ Սովետական Հայաստանում աճել են նաև
թատերական իրոք շնորհալի նկարիչներ՝ Միքայել և Սերգեյ Արուտչյանները,
Մինասյանը, Շաքարյանը, Չիլինգարյանը, Շահեն Մուրադյանը և ուրիշ-
ները։

Սովետահայ կերպարվեստագետները յուրաքանչյուր տարի կազմակեր-
պում են ցուցահանդես, որտեղ ի մի են բերում իրենց աշխատանքները։ Նրանց
գործերից լավագույնները ցուցադրվում են նաև Մոսկվայում՝ համամիութենա-
կան ցուցահանդեսներում։

Դեռ 1939 թվականից Հայաստանում առաջին անգամ կազմակերպվեց և
այժմ էլ գործում է շրջիկ ցուցահանդես՝ ժողովրդական նկարիչ Գյուրջյանի
ղեկավարությամբ։

Այդ ցուցահանդեսը շրջել է ռեսպուբլիկայի համարյա բոլոր շրջանները և
արժանացել է կոլտնտեսականների ջերմ համակրանքին։

1939 թվականին հայկական արվեստի տասնօրյակը Մոսկվայում մեծ
իրադարձություն էր մեր ժողովրդի կյանքում։ Այդ տասնօրյակը ցույց տվեց
հայ ժողովրդի ճոխ կուլտուրայի և արվեստի լավագույն նմուշները։ Սովետա-
կան Միության կառավարությունը բարձր գնահատեց մեր ռեսպուբլիկայի ար-
վեստի ու գրականության աշխատողներին և 134 հոգու պարգևատրեց Սովե-
տական Միության շքանշաններով և մեդալներով, Օպերայի և բալետի թատ-
րոնը՝ Լենինի շքանշանով, իսկ ֆիլհարմոնիան՝ Աշխատանքային Կարմիր Դրոշի
շքանշանով։

Կազմակերպվեցին կերպարվեստի և հայկական տպագիր գրքի խոշոր ցու-
ցահանդեսներ, ֆոտո շրջիկ ցուցահանդեսներ, իսկ Երևանի կրկեսի հայկական
խումբը հանդես եկավ հատուկ ծրագրով։

1956 թ. տասնօրյակը հայկական արվեստի և գրականության իսկական
տոնն էր, հայ ժողովրդի, մեր վերածնված ժողովրդի կուլտուրայի տոնը։ Դա
Սովետական Հայաստանի ստեղծագործական ուժերի և հնարավորությունների
ցուցադրման տրիումֆն էր։ Մոսկվայի բնակիչները, Սովետական Միության բո-
լոր ժողովուրդները, մամուլը, հասարակայնությունը բարձր գնահատական տվե-
ցին հայկական արվեստի և գրականության տասնօրյակին։ «Պրավդա» թերթը
հայկական օպերան գնահատեց որպես տաղանդավոր մի կոլեկտիվ, նրա բեմա-
դրություններից «Դավիթ բեկ»-ը որակեց որպես ժողովրդական հերոսական,
հայրենասիրական օպերա, ուժեղ և ճշմարտացի ներկայացում, որը ցնցող
տպավորություն թողեց հանդիսատեսի վրա. «Արշակ երկրորդ»-ը՝ որպես բարձր
թատերական-երաժշտական գործ, օպերայի արվեստի բոլոր օրենքներով գրված
գործ, հիանալի բեմադրություն և այլն, իսկ «Սևան» բալետը՝ որպես խի-
զախ փորձ, սովետական բալետ ստեղծելու գործում։ Սունդուկյանի անվան
պետական թատրոնը որակվեց որպես տաղանդավոր ստեղծագործական ուժեղ
կոլեկտիվ։ Ռուսական արվեստի տաղանդավոր ներկայացուցիչներն իրենց
հիացմունքը հայտնեցին մամուլում՝ թատրոնի և նրա վարպետների՝ Վ. Փա-
փազյանի, Վ. Վաղարշյանի, Հ. Ներսիսյանի, Ա. Ավետիսյանի, Գ. Ջանի-
բեկյանի, Օ. Գուլազյանի և շատ ուրիշների մասին, նրա տաղանդավոր երի-

տասարդության մասին, բարձր գնահատականի արժանացան նաև երգի ու պարի անսամբլը, սիմֆոնիկ նվագախումբը, երգեցիկ կապելլան և մյուս կոլեկտիվները։

ՍՍՌՄ կուլտուրայի մինիստր Միխայլովը կերպարվեստի ցուցահանդեսի մասին գրեց, որ այն եղբայրական հայ ժողովրդի հիանալի տասնօրյակի բաղկացուցիչ մասն է և բերկրանք է պատճառում իր լավատեսությամբ, իր սիրով դեպի աշխատանքի մարդը։ Դա վառ և խոր, պայծառ ու ջինջ երգ է մեր Հայրենիքի՝ Սովետական երկրի մասին։ Ավելի քան 2600 էքսպոնատներ՝ ձեռագրեր, գրքեր, իլյուստրացիաներ և ուրիշ գործեր ցուցադրվեցին գրքի ցուցահանդեսում։ Կային հատուկ բաժիններ, որոնք ընդգրկում էին 1512 թվականից 1955 թվականը։ Ցուցահանդեսի այցելուները գրում էին. «Մեծ երջանկություն է ժողովրդի համար ունենալ մեծ, պայծառ, հետաքրքրական կուլտուրա... Հայտնում ենք մեր խորին շնորհակալությունը այս ցուցահանդեսի համար»։

Տասնօրյակը փակվեց մեծ համերգով, որն անցավ բացառիկ հաջողությամբ։ «Պրավդա» թերթը գրեց. «Տաղանդներով հարուստ է Սովետական Հայաստանը։ Դրանում ակնառու կերպով համոզվեցին այն մոսկվացիները, որոնք եղան հայկական արվեստի և գրականության բազմաթիվ ներկայացումներում և տասնօրյակի մասնակիցների հետ հանդիպումներում։

Եզրափակիչ համերգը վառ կերպով ցուցադրեց Սովետական Հայաստանի կուլտուրայի զարգացման հաջողությունները, որոնք ձեռք են բերվել Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում»։

ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրությունը տասնօրյակի արդյունքների մասին իր որոշման մեջ նշում է, որ Հայկական արվեստի և գրականության տասնօրյակը Մոսկվայում, իր ծավալով և գեղարվեստական որակով, հանդիսացավ նշանավոր իրադարձություն Սովետական Միության կյանքում։

Սովետական Միության կառավարությունը բարձր գնահատելով Սովետական Հայաստանի արվեստի և գրականության վարպետների ձեռք բերած նվաճումները՝ հինգ հոգու արժանացրեց Սովետական Միության ժողովրդական արտիստի կոչման, 11 հոգու պարգևատրեց Լենինի շքանշանով, 50 հոգու՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով, 99 հոգու՝ Պատվո-Նշան շքանշանով և 200 հոգու՝ մեդալներով։

Սունդուկյանի անվան պետական դրամատիկ թատրոնը պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։

Հայկական արվեստի և գրականության տասնօրյակը Մոսկվայում խոշոր քաղաքական և կուլտուրական իրադարձություն էր հայ ժողովրդի կյանքում։

Հայկական արվեստի և գրականության տասնօրյակի փայլուն հաջողությունները, սակայն, պարտավորեցրին ռեսպուբլիկայի արվեստի և կուլտուրայի աշխատողներին՝ չհանգստանալ ձեռք բերածով, այլ լարել բոլոր ուժերը՝ ստեղծագործական նորանոր նվաճումներով դիմավորելու Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը։

Պետական օպերայի և բալետի թատրոնը, դրամատիկ թատրոնները, միջոցներ են ձեռնարկել՝ իրենց խաղացանկերը հարստացնելու ժամանակակից ուրույն, ինչպես նաև կլասիկների գործերով։

Մեծ տարեդարձի առթիվ բացի արդեն բեմադրված «Մարմար» բալետից, Պետական օպերայի և բալետի թատրոնը իրականացնելու է նաև Վ. Տիգ-



րանյանի «Սոս և Վարդիթեր», Ա. Բաբաևի «Երջանկության ուղին» օպերաները և Է. Խաչատրյանի «Արշալույսին ընդառաջ» բալետը։ Սովետահայ մի շարք դրամատուրգներ աշխատում են նոր գործերի վրա, և մեր դրամատիկ թատրոնները 40-ամյակի տոնակատարության օրերին բեմադրելու են դրանք։ Է՛լ ավելի ընդարձակվել են կուլտուրական կապերը Սովետական Միության եղբայրական ռեսպուբլիկաների հետ։ Այս տարի առաջին անգամ կազմակերպվեց Անդրկովկասյան թատերական գարուն երեք ռեսպուբլիկաների լավագույն թատրոնների մասնակցությամբ, Սունդուկյանի անվան պետական դրամատիկ թատրոնը մեկ ամիս ելույթներ ունեցավ Բաքվում, իսկ Բաքվի Ազիզբեկովի անվան դրամատիկ թատրոնը՝ Երևանում։ Պետական օպերայի և բալետի թատրոնը հանդես եկավ Սոչիում, իսկ տարվա վերջին լինելու է Թբիլիսիում։ Ստանիսլավսկու անվան ռուսական թատրոնը ելույթներ է ունենալու Թբիլիսիում և մյուս քաղաքներում։ Հայֆիլհարմոնիայի ստեղծագործական կոլեկտիվները նոր ծրագրերով ելույթներ են ունենալու միության տարբեր քաղաքներում։ Սեպտեմբերին սկսվում է ռեսպուբլիկայի թատրոնների ֆեստիվալը։

Սովետահայ կոմպոզիտորները գրում են սիմֆոնիաներ, իսկ նկարիչները պատրաստում են հոբելյանական մեծ ցուցահանդես։

Պետական հրատարակչության գծով լույս են տեսնելու մի շարք աշխատություններ ռեսպուբլիկայի էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի նվաճումների մասին, աշխատություններ նվիրված Հոկտեմբերյան ռևոլյուցիային և հայ ժողովրդի ազատագրմանը, հին բոլշևիկների հուշերը, մի քանի նոր գեղարվեստական գործեր (Հր. Քոչարի, Ն. Զարյանի, Ռ. Աթայանի և ուրիշների ստեղծագործությունները)։

Հայֆիլմի ստուդիան նկարահանում է լեգենդար բոլշևիկ Կամոյի կյանքին նվիրված ֆիլմ, կինոնկարներ՝ նվիրված Հայաստանի պղնձահանքերի բանվորներին և երիտասարդության դաստիարակության խնդիրներին։ Արտադրությանն է հանձնվելու մեծ ֆիլմ՝ «Հյուսիսային ծիածան»-ը, որը նվիրված է հայ և ռուս ժողովուրդների բարեկամությանը։

Նոյեմբեր ամսին կազմակերպվելու է երգի տոն ռեսպուբլիկայի բոլոր քաղաքներում և շրջաններում։ Հայտարարված է գյուղական կուլտ-լուսավորական հիմնարկների ստուգատես։

Հայ ժողովուրդը Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մեծ տոնը, իր ազատության ու ազգային վերածննդի տոնը դիմավորում է ստեղծագործական ուժերի նոր վերելքով։ Նա հաստատակամորեն և լուսավոր հավատով է ընթանում Կոմունիստական պարտիայի կողմից նախանշված ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման, կուլտուրայի և արվեստների ծաղկման, մեր երկրում կոմունիստական հասարակարգ կառուցելու ուղիով։

# ԱՆԴՐԿՈՎԿԱՍԸ 1917—1918 ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

Դ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

1917 թ. փետրվարի 27-ին Ռուսաստանի հերոսական պրոլետարիատը, ամբողջ ժողովրդի հետ միասին, Լենինի գլխավորած Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ տապալեց ցարական կարգերը։ Ռուսաստանում ամենուրեք գործել սկսեցին բանվորների, զինվորների դեպուտատների Սովետները, որոնք հանդիսանում էին ռևոլյուցիոն պրոլետարիատի իշխանության օրգանները։

Ստեղծված բուրժուական ժամանակավոր կառավարությունն ամենուրեք շարունակում էր վարել ցարիզմի քաղաքականությունը։ Այդ բանում նա հենվում էր բուրժուական կադետների և օկտյաբրիստների պարտիաների վրա, նրան օգնում էին էսեռներն ու մենշևիկները։

Ռուսաստանի իմպերիալիստական արյունարբու բուրժուազիան, վախենալով ռևոլյուցիոն պրոլետարիատից, իր իշխանությունն ամրապնդելու համար կառավարության մեջ հրավիրեց «սոցիալիստներին», որոնք ո՛չ միայն ընդունեցին այդ առաջարկը, այլև անցան ժամանակավոր կառավարության գլուխ։ Նույնպիսի միջոցի դիմեց նաև Անդրկովկասի փոխարքան՝ իշխան Ն. Նիկոլաևիչը։ Սա նախազգալով Անդրկովկասում կատարվող ռևոլյուցիոն շարժումների լրջությունը՝ իր մոտ հրավիրեց վրացական մենշևիկների լիդերներ Ն. Ժորդանիային, Ն. Ռամիշվիլուն և մյուս ազգայնական բուրժուական պարտիաների ներկայացուցիչներին և խնդրեց նրանց օժանդակությունը։ Անդրկովկասի վրաց մենշևիկները, հայ դաշնակները և ադրբեջանական մուսավաթականներն ընդունեցին այդ առաջարկը։

Փետրվարյան ռևոլյուցիայից հետո փոխարքա Ն. Նիկոլաևիչը շուտով հեռացավ Անդրկովկասից։ Երկիրը կառավարելու համար, Ռուսաստանի ժամանակավոր կառավարության որոշմամբ, 1917 թ. մարտի 9-ին Պետրոգրադում ստեղծվեց, այսպես կոչված՝ Անդրկովկասյան Հատուկ Կոմիտե (Особый Закавказский Комитет—ОЗАКОМ), որի նախագահն էր կադետ Վ. Խարլամովը, իսկ անդամներն էին՝ կադետ Պապաջանովը, մուսավաթական Ջաֆարովը, սոցֆեդերալիստ Աբաշիձեն և մենշևիկ Չխենկելին։ Կոմիտեն մարտի 18-ին (30) ժամանեց Թիֆլիս։

Մենշևիկների ներկայացուցիչ Չխենկելին ամեն կերպ ջանում էր համոզել մասսաներին, որ ռևոլյուցիան հանդիսանում է բուրժուական, և որ չպետք է պրոլետարիատին թույլ տալ «ծայրահեղությունների» մեջ ընկնել։



Մենշևիկները պնդում էին, որ ռևոլյուցիայի մեջ շարժիչ ուժը հանդիսանում է բուրժուազիան և միաժամանակ առաջադրում էին պայքարել ընդդեմ բոլշևիկների և ստիպել բանվորներին ու գյուղացիներին, որպեսզի նրանք իրենց տնտեսական ու քաղաքական պահանջները «հետաձգեն» մինչև Համառուսական սահմանադիր ժողով հրավիրելը։ Մենշևիկների այս դրույթին միանգամայն համաձայն էին Անդրկովկասի ազգայնական մյուս պարտիաները, որոնք հակառակ բանվորների և գյուղացիների ցանկության, առաջարկում էին շարունակել պատերազմը մինչև նրա հաղթական վախճանը։

Անդրկովկասի Հատուկ Կոմիտեի վերաբերմամբ միայն բոլշևիկյան պարտիան էր, որ բացասական դիրք բռնեց և բոյկոտի ենթարկեց այն։ Բոլշևիկները մասսաների մեջ ուժեղացնում էին քաղաքական աշխատանքը և պայքարում էին ռևոլյուցիայի խորացման, նրա հետագա զարգացման համար։

1917 թ. հուլիսին Երևանում տեղի ունեցան աշխատավորների ցույցեր՝ ժամանակավոր կառավարության դեմ։ Հուլիսի 3-ին Ալեքսանդրոպոլի Կովկասյան բանակի հրահանգիչների համագումարը դատապարտեց ժամանակավոր կառավարության հակաժողովրդական, իմպերիալիստական քաղաքականությունը («Նոր կյանք», № 6, 1917 թ.)։

Բոլշևիկները, մերկացնելով մենշևիկներին և Անդրկովկասի մյուս ազգայնական պարտիաներին, Անդրկովկասի աշխատավորներին բացատրում էին, որ բոլոր ազգերի բանվորների շահերը միատեսակ են։ Բոլշևիկների «Սոցիալ-դեմոկրատ» թերթը հայ բանվորներին կոչ էր անում. «Մեկնեցեք ձեր ձեռքը ռուս, թուրք, վրացի ընկերներին և կազմեցեք նրանց հետ մի անբաժան ընտանիք» («Սոցիալ-դեմոկրատ», 1917 թ. № 1)։

Ռուսաստանի բանվորների ռևոլյուցիոն շարժումներին մեծ չափով արձագանքում էր Անդրկովկասի աշխատավորությունը, որն անասելի չափով ճնշվում էր ադրբեջանական, հայկական և վրացական աշխարհիկ ու հոգևոր կեղեքիչների լծի տակ։

Այդ ժամանակ Անդրկովկասում հողերի բռնագրավումները մեծ ծավալ էին ընդունել։ «Кавказский рабочий» թերթը հայտնում էր, որ Ելիզավետպոլի նահանգի ադրբեջանական գյուղացիները մասսայական կերպով բռնագրավում էին կալվածատիրական և աղալարական հողերը։ Ստ. Շահումյանը մի թղթակցության մեջ գրում է, որ «Ելիզավետպոլի բեգերն ու խաները մոբիլիզացիա են հայտարարել մուսուլմանական գյուղերում, գյուղացիները նոր ապստամբություն են բարձրացրել և կոտորել են նրանց։ Գյուղացիները չեն ուզում իրենց զավակներին տալ բեգերի ու խաների տնօրինությանը» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, էջ 611)։

Գյուղացիական ելույթները մեծ ծավալ էին ընդունել նաև Վրաստանում՝ Մենգրելիայում, Սուխումիում և մյուս գավառներում։ «Սուխումիում Ջուղելիի գլխավորած ջոկատը ջախջախվել է» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, էջ 610)։

Համանման միջոցների էին դիմում Հայաստանի աշխատավոր գյուղացիները։ 1917 թվականի ապրիլին Հայաստանից Անդրկովկասի Հատուկ Կոմիտեին հայտնում են, որ Ախտայի շրջանի Արզաքյանդ, Աղվերան, Ալափարս, Բժնի և մյուս գյուղերի գյուղացիները խլել են կալվածատերերի հողերը, որ Կայախարաբա գյուղի ադրբեջանական բնակիչները խլել են պետական հողերը և բաժանել են միմյանց մեջ (Հայկ. ՍՍՌ ԳԱ «Տեղեկագիր», 1951 թ. № 9, էջ 43—60)։

*Այդ ելույթները ճնշելու համար Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական պարտիաների նախաձեռնությամբ, 1917 թվականի հունիսի 20-ին Թիֆլիսում բացվեց, այսպես կոչված, Անդրկովկասյան գյուղացիական համագումար, որը կառավարության ցուցումներով մշակեց գյուղացիական շարժումների և հողերի բռնագրավման դեմ պայքարելու միջոցառումներ։ Իսկ դաշնակցությունն էլ գյուղացիների ռևոլյուցիոն շարժումների դեմ կռվելու համար կազմակերպում էր «Գյուղացիական ազգային միությունններ»։*

*Հուլիսյան դեպքերից հետո ռևոլյուցիոն շարժումները երկրում և ռազմաճակատներում մեծ ծավալ էին ընդունել։ Այդ շարժումների դեմ կռվելու և պատերազմը շարունակելու համար Ռուսաստանի բուրժուազիան Անտանտայի դրդմամբ օգոստոսի վերջերին գեներալ Կոռնիլովի ղեկավարությամբ դավադրություն կազմակերպեց ռևոլյուցիայի դեմ։ Բոլշևիկների պարտիան իր բոլոր ուժերը մոբիլիզացրեց՝ ճնշելու կոռնիլովյան դավադրությունը։*

*Կոռնիլովյան դավադրությունը (որի նպատակն էր վերականգնել միապետական կարգերը) ճնշելու բոլշևիկների կոչերը արձագանք էին գտնում նաև Անդրկովկասում։ Կոռնիլովյան գործակալների հնարավոր ելույթները կանխելու համար Ալեքսանդրոպոլում, Ղարսում, Սարիղամիշում բոլշևիկների նախաձեռնությամբ և ղեկավարությամբ կազմակերպվում են արտակարգ հանձնաժողովներ, որոնց շնորհիվ կանխվում են կոնտրռևոլյուցիոն դավադրությունները ինչպես թիկունքում, այնպես էլ ռազմաճակատում։*

*Կոռնիլովյան դավադրության ջախջախումն է՛լ ավելի բարձրացրեց բոլշևիկների հեղինակությունը և ստրիճանաբար Սովետներն անցան բոլշևիկների կողմը։ Նորից պարտիան հերթի դրեց «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը։ 1917 թվականի աշնանը ռևոլյուցիոն շարժումներն ուժեղանում են նաև Կովկասի բանակի զորամասերում։ Այդ գործում մեծ դեր խաղացին Պետրոգրադից Անդրկովկաս արտաքսված հուլիսյան ելույթների մասնակից 18 հազար զինվորները։ Անդրկովկասի բանվորների, գյուղացիների և զինվորների ռևոլյուցիոն շարժումները ցույց էին տալիս ռևոլյուցիայի հասունացման մոտալուտ լինելը։ Այդ նպատակով 1917 թվականի հոկտեմբերի 2-ից 7-ը Թիֆլիսում հրավիրվում է ՌՍԴԲՊ(բ) առաջին Անդրերկրային համագումարը, որը ոչ միայն ընդգծեց աշխատավորական մասսաների հեռանալը պաշտպանողական պարտիաներից, այլև բոլշևիկների ազդեցության աճն այդ մասսաների վրա։ Համագումարը մերժեց Սահմանադիր ժողովի ընտրությունների կապակցությամբ պարտիայի միավորման և նույնիսկ որևէ համաձայնության գալու վերաբերյալ մենշևիկների առաջարկը, ընդգծելով, որ մենշևիկների պարտիան հանդիսանում է կոնտրռևոլյուցիոն բուրժուազիայի կողմը անցած սնանկացած մի կազմակերպություն։*

*Համագումարը, միաժամանակ, Լենինի Ապրիլյան թեզիսների և բոլշևիկների վեցերորդ համագումարի որոշումների ոգուն համապատասխան բանաձև ընդունեց։ Առանձնապես մարտական նշանակություն ունեցավ Ստ. Շահումյանի ելույթը, որով նա տվեց իշխանության ճգնաժամի և երկրում բոլշևիկների տարած մեծ հաջողությունների փայլուն վերլուծությունը։ Համագումարը հաստատ կանգնեց բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան պրոլետարականի վերածելու տեսակետի վրա։*

*Հոկտեմբերի սկզբին Ալեքսանդրոպոլում տեղի ունեցավ նույն գավառի գյուղացիական համագումար, որը հրավիրել էր բանվորների, զինվորների*



*պատգամավորների Սովետը։ Համագումարին մասնակցում էին հայ, թուրք, ռուս և հույն գյուղացիները։ Համագումարում բոլշևիկների ներկայացուցիչները պահանջում էին իշխանությունը անհապաղ հանձնել Սովետներին, Կերենսկու կառավարությունը համարել ժողովրդի թշնամի կառավարություն, բանվորների վերահսկողություն հաստատել արտադրության վրա և հողը հանձնել գյուղացիներին («Բանվորի կռիվ», 1917 թ., հոկտեմբերի 9)։*

*Ալեքսանդրոպոլի կայազորի զինվորների հոկտեմբերի 9-ի ժողովը, որին մասնակցում էին 2000 մարդ, Ստ. Շահումյանի ղեկավարությամբ բողոքի բանաձև ընդունեց բուրժուական ժամանակավոր կառավարության դեմ։ Այդ մասին Ստ. Շահումյանը բոլշևիկների կենտրոնական օրգան «Ռաբոչի պուտ» թերթի խմբագրությանը հայտնում էր, որ տեղի «քսան հազարանոց կայազորը ամբողջությամբ բոլշևիկյան է» (Գ. Ղարիբջանյան, «Ալեքսանդրոպոլի բոլշևիկյան կազմակերպությունը 1917—1920 թթ.», էջ 53—54)։*

*Բոլշևիկների կողմն էին նաև Բաքվի կայազորը և նավաստիները։ Հոկտեմբերի 29-ի ընտրություններին «Նրանք ձայն տվեցին պրոլետարիատի պարտիային, բոլշևիկներին»,— գրում էր Ստ. Շահումյանը։*

*Իրենց միտինգներում համանման բանաձևեր ընդունեցին նաև Անդրկովկասի մյուս արդյունաբերական կենտրոնների աշխատավորները։*

*Աշխատավորությունը մասսայական շրջադարձ էր կատարում դեպի բոլշևիկները։*

***

*1917 թվականի հոկտեմբերի 25-ի (նոյեմբերի 7-ի) Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։ Դա պատմության մեջ առաջին ռևոլյուցիան էր, որ ազատություն և իրավահավասարություն տվեց ճնշված ու կեղեքված ժողովուրդներին։*

*Իշխանությունը բանվորների ու գյուղացիների ձեռքն անցնելու լուրը կայծակի արագությամբ տարածվեց ամբողջ երկրում։*

*Անդրկովկասի տարբեր քաղաքներում ու ռազմաճակատում տեղի էին ունենում աշխատավորների ու զինվորների բազմամարդ միտինգներ, որտեղ որոշումներ էին ընդունում ճանաչել Սովետական Ռուսաստանի կառավարությունը և կրծքով պաշտպանել այն։*

*1917 թվականի նոյեմբերի 4-ի (17) Բաքվի Սովետի ընդունած կոչում ասված էր. «Բոլորը, ովքեր ցանկանում են ժողովրդի բարօրության, խաղաղության և կարգի ամենաշուտ հաստատում տանջված ու խոշտանգված երկրում, պետք է անհապաղ և վճռականորեն կանգնեն Լենինի գլխավորած Ժողովրդական Կոմիսարների նոր կառավարության կողմը...» («Լենինյան ուղիով», 1957 թ., № 4, էջ 41)։*

*Համանման որոշումներ են ընդունում նաև Անդրկովկասի զինվորական և բանվորական դեպուտատների Սովետները։*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո Հայաստանի աշխատավորները Անդրկովկասի աշխատավորության հետ միասին ձեռք-ձեռքի տված, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պայքարում էին հանուն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի Անդրկովկասում։*

*Անդրկովկասի բոլոր վայրերում տեղի էին ունենում մասսայական միտինգներ և ցույցեր։ Աշխատավորներն իրենց բանաձևերում Անդրկովկասի*

Հատուկ Կոմիտեից պահանջում էին ճանաչել Սովետական իշխանությունը։ Առանձնապես աղմկալից միտինգներ տեղի ունեցան Անդրկովկասի ռազմաճակատում, որտեղ կես միլիոնից ավելի ռուսական բանակ էր կանգնած։

Անդրկովկասի բանվորների, գյուղացիների և զինվորների ռևոլյուցիոն տրամադրություններն ու ելույթներն ինքնըստինքյան ապացուցում էին, որ արագորեն հասունանում էին սոցիալիստական ռևոլյուցիայի նախապայմանները Անդրկովկասում։

Ռևոլյուցիոն շարժմանը մեծ չափով նպաստում էր Բաքվի հերոսական պրոլետարիատը, որը Սովետների համար իր անձնվեր պայքարով օրինակ էր ծառայում և, որպես փարոս, լուսավորում էր Անդրկովկասի պրոլետարիատի պայքարի ուղին։ Բաքվի պրոլետարիատի օրինակին հետևելով, Անդրկովկասի մյուս արդյունաբերական կենտրոնների բանվորներն ու աշխատավորական լայն մասսաները ամենուրեք սկսել էին գործադուլային շարժումներ։

Չնայած կառավարության և մենշևիկների անասելի բռնություններին՝ գործադուլավորներն իրենց բանաձևերում վճռականորեն խնդիր էին դնում խզել կապերը Անդրկովկասի բուրժուական իշխանության հետ։

Թիֆլիսի երկաթուղային բանվորներն իրենց բանաձևում կտրուկ կերպով պահանջում էին տեղում և ամենուրեք հռչակել բանվորների, զինվորների և գյուղացիների պատգամավորների Սովետների իշխանություն։

Սոցիալիստական ռևոլյուցիայից ահաբեկված վրացական մենշևիկները պայմանավորվելով դաշնակների, մուսավաթականների և էսեռների հետ, որոշեցին Կովկասյան Հատուկ Կոմիտեի փոխարեն կազմակերպել, այսպես կոչված, Անդրկովկասյան կոմիսարիատ, որը չպետք է ճանաչեր Ռուսաստանի Կենտրոնական սովետական իշխանությունը և պետք է վարեր արտաքին և ներքին «ինքնուրույն» քաղաքականություն։

Մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան, երբ Ռուսաստանում տիրապետում էր բուրժուական ժամանակավոր կառավարությունը, Անդրկովկասի բուրժուական պարտիաները կողմնակից էին «միացյալ Ռուսաստանին», ընդունում էին Ռուսաստանի կոնտրռևոլյուցիոն ժամանակավոր կառավարության տիրապետությունը և ենթարկվում էին նրա բոլոր որոշումներին։ Սակայն, երբ Հոկտեմբերյան ռևոլյուցիան պատմության աղբակույտը նետեց բուրժուական ժամանակավոր կառավարությանը և Ռուսաստանի կենտրոնական իշխանությունն անցավ Սովետների ձեռքը, Անդրկովկասի հակառևոլյուցիոն պարտիաները «երեսները թեքեցին» կենտրոնից, Անդրկովկասը փաստորեն անջատեցին Սովետական Ռուսաստանից և, ներքին ռևոլյուցիոն շարժումների դեմ հակառևոլյուցիոն ճակատ կազմակերպելու համար, անմիջապես ձևակերպեցին ռեակցիոն ուժերի կոալիցիան՝ ժամանակավոր Անդրկովկասյան կոմիսարիատ կոչված կառավարությունը։

Անդրկովկասյան կոմիսարիատի արտաքին քաղաքականությունն ամբողջապես ուղղված էր Սովետական Ռուսաստանի դեմ։ Ռուսաստանից անկախ Թուրքական բանակի հետ նրա վարած հաշտության բանակցությունները, 1917 թվականի դեկտեմբերին Թուրքերի հետ կնքած Երզնկայի սեպարատ դաշնագիրը և այլն ուղղված էին Սովետական Ռուսաստանի դեմ։

Վրացիների, հայերի և ադրբեջանցիների միջև ցարիզմի սերմանած ազգային ատելությունը Անդրկովկասի կոմիսարիատի օրոք ծայր աստիճանի սրվեց։ Հայկական ազգային խորհրդի կարգադրությամբ գաղանաբար ոչնչացվում էր Երևանի նահանգի ադրբեջանցի ազգաբնակչությունը։ Հայերի նկատմամբ նույն միջոցներին էին դիմում մուսավաթականները՝ Ադրբեջանում, մենշևիկները՝ Վրաստանում։



Բաքվի պրոլետարիատի հերոսական պայքարը Անդրկովկասի աշխատավորության ջերմ համակրանքն էր վայելում։ Շահումյանը դեկտեմբերի 6-ին հայտնում էր, որ կայազորի մեծամասնությունը բոլշևիկների կողմն է, որի միջոցով Բաքվի Սովետը կարող է զենքի ուժով տապալել Անդրկովկասի հակառևոլյուցիոն կոմիսարիատը։

1917 թվականի դեկտեմբերի 10—23-ին Անդրկովկասի բոլշևիկների կոմիտեի պահանջով հրավիրվում է բանակի երկրորդ համագումարը, որի պատգամավորների մեծամասնությունը ընտրված էր բոլշևիկներից և նրանց համակրողներից։ Համագումարը ղեկավարում էր Ստ. Շահումյանը։ Տասն օր տևող համագումարի ընթացքում բոլշևիկները դառն փաստերով մերկացրին էսեռների, մենշևիկների և մյուս ազգայնական պարտիաների վարած կոնտրռևոլյուցիոն քաղաքականությունը և, ստանալով ձայների մեծամասնությունը, Երկրային Սովետի ղեկավարությունը իրենց ձեռքը վերցրին։

1918 թվականի մարտի 30-ից մինչև ապրիլի 1-ը (նոր տոմարով) Բաքվում տեղի ունեցան քաղաքացիական կատաղի կռիվներ։ Անդրկովկասի կոնտրռևոլյուցիայի և թուրք-գերմանական իմպերիալիզմի նեցուկ մուսավաթականությունը ջախջախվեց, և Բաքվում ստեղծվեց սովետական իշխանությունը՝ **Կոմունան**։

1918 թվականի ապրիլի 25-ին Բաքվի Սովետը կազմեց Բաքվի Ժողովրդական Կոմիսարների Սովետ՝ Ստեփան Շահումյանի նախագահությամբ։ Գավառային կոմիսար ընտրվեց Մ. Ազիզբեկովը, ներքին գործերի կոմիսար՝ Ա. Ջափարիձեն, ժողովրդական տնտեսության Սովետի նախագահ՝ Ի. Ֆիոլետովը, Ռազմա-ծովային գործերի կոմիսար՝ Գ. Կորգանովը, աշխատանքի կոմիսար՝ Յա. Զևինը, հողագործության կոմիսար՝ Մ. Վեզիրովը և ուրիշներ։

Բաքվի կոմունան կարճ ժամանակամիջոցում ստեղծեց Կարմիր Բանակ, ազգայնացրեց նավթարդյունաբերությունը, բանկերը, նավատորմը, ձկնորսարանները, բռնագրավեց կալվածատերերի և բեկերի հողերը, վերացրեց հին դատարանը, կազմակերպեց ժողովրդական կրթության գործը և այլն։

Բաքվի պրոլետարիատը երեք ամսվա ընթացքում Սովետական Ռուսաստանին ուղարկեց մոտ 80 միլիոն փութ նավթ։

1918 թվականին Անդրկովկասն ապրում էր տնտեսական և քաղաքական սուր ճգնաժամ։ Անդրկովկասի բնակչությունը սովի էր դատապարտվել։ Գործազրկությունն անասելի չափերի էր հասել։ Չնայած 1918 թվականի թղթադրամների քանակը 1913 թ. համեմատությամբ ավելացել էր 11,2 անգամ և 77 միլիոնից հասել էր 864 միլիոն ռուբլու, բանվորներն ու ծառայողները ամիսներով աշխատավարձ չէին ստանում։ Նոր թղթադրամները շրջանառության մեջ դնելը ո՛չ միայն չնպաստեց երկրի տնտեսական դրության ամրապնդմանը, այլև, ընդհակառակն, ավելի ևս խորացրեց տնտեսական փլուզումը։ Կոմիսարիատի օրով մասսաների դժգոհությունն ընդդեմ կովկասյան բուրժուազիայի գնալով ուժեղանում էր։

Փետրվարյան ռևոլյուցիայից հետո Անդրկովկասի գյուղացիության դրությունը ոչնչով չբարելավվեց։ Թիֆլիսի, Գանձակի և Բաքվի նահանգներում կային շատ ճորտատեր թուրք բեկեր ու վրացի իշխաններ, որոնք հսկայական

կալվածքներ ունեին և անողոքաբար շահագործում էին Անդրկովկասի գյուղացիությանը։

Գյուղացիությունն անհամբեր սպասում էր հողային հարցի լուծմանը, իսկ Կոմիսարիատը զբաղված էր բանվորների և գյուղացիների ռևոլյուցիոն ելույթները ճնշելով։

1918 թվականի հունվարին գյուղացիական ուժեղ շարժումներ սկսվեցին ամբողջ Անդրկովկասում։ Թիֆլիսի, Երևանի, Գանձակի նահանգի գյուղացիները այդ օրերին ո՛չ միայն բռնի կերպով մասսայաբար գրավում էին կալվածատերերի հողերը, քարուքանդ անում նրանց կալվածքները, այլև կալվածատերերից շատերին ու նրանց ընտանիքներին ֆիզիկապես ոչնչացնում էին։ Գյուղացիական ելույթներին մեծ չափով նպաստեցին ռազմաճակատից վերադարձող, ռևոլյուցիոն տրամադրություններով համակված զինվորները։

Կոմիսարիատի վարած կոնտրռևոլյուցիոն քաղաքականության հետևանքով ռուսական բանակը մասսայական կերպով թողեց Անդրկովկասի ռազմաճակատը և գնաց հյուսիս՝ պայքարելու ընդդեմ կոնտրռևոլյուցիայի, հանուն Ռուսաստանի Սովետական իշխանության ամրապնդման։

Անդրկովկասյան կոմիսարիատը վախենալով ռազմաճակատից վերադարձող, բոլշևիկորեն տրամադրված ռուսական զինվորներից՝ նրանց զինաթափ էր անում և զինում ազգային զորամասերը։

Ն. Ժորդանիայի և Ն. Ռամիշվիլու անմիջական կարգադրությամբ 1918 թվականի հունվարի 9—12-ին (22—25) Թիֆլիսի և Գանձակի (Կիրովաբադի) միջև, Շամխոր կայարանում, Կոմիսարիատի թելադրանքով մուսավաթականների և մենշևիկների 10 հազար դարանամուտ բանդաները ո՛չ միայն զինաթափարին ռուսական զինվորներին, այլև կատարեցին ամենանենգ եղեռնագործությունը. նրանք մասսայաբար ջարդեցին, խոշտանգեցին ռուս զինվորներին և նրանցից խլեցին 15 հազար հրացան, 70 գնդացիր, 20 թնդանոթ և մեծ քանակությամբ ռազմամթերք։ Շամխորում տեղի ունեցած սառը դնդակոծման դեմ Սովետական կառավարության և Անդրկովկասի աշխատավորության անունից բողոքեց Շահումյանը։ Նա գրում էր. «Ռուսաստանի Ռեսպուբլիկայի Կենտրոնական Կառավարության անունից ես բողոքում եմ այդ չլսված չարագործության դեմ։ Թափվում է այն զինվորների անմեղ արյունը, որոնք երեք տարվա ընթացքում անձնուրացությամբ պաշտպանել են Կովկասի սահմանները, թողնելով մարտադաշտում և Հայաստանի քաղաքներում տասնյակ հազարավոր իրենց եղբայրներին. անողոք կերպով հափշտակվում է Ռուսաստանի Ռեսպուբլիկային պատկանող զենքը։

Այդ ծանր ոճրագործության մեղավորները չեն կարող անպատիժ մնալ» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, էջ 536)։

1917 թվականի դեկտեմբերի 9-ին Բրեստ-Լիտովսկում սկսվեցին հաշտության բանակցությունները, մի կողմից՝ Սովետական Ռուսաստանի և մյուս կողմից՝ Գերմանիայի ու նրա դաշնակիցների միջև։

Սովետական կառավարության առաջարկով ժամանակավորապես դադարեցվեցին ռազմաճակատների ռազմական գործողությունները, նույնը կատարվեց նաև Անդրկովկասի ռազմաճակատում։

Բրեստի հաշտության հարցում մենշևիկներն ու դաշնակները և բուրժուական մյուս պարտիաները պաշտպանում էին գերմանացիների և թուրքերի



վարքագիծը, ինչ գնով էլ ուզում է լինի՝ վիժեցնել հաշտությունը, դրդել գերմանացիներին հարձակվելու և տապալելու Սովետական իշխանությունը։

Թուրքերի առաջխաղացմանը առանձնապես մեծ չափով նպաստում էր Կոմիսարիատի հակաժողովրդական այն քաղաքականությունը, որ նա, փոխանակ զբաղվելու թուրքերի առաջխաղացման առաջն առնելու խնդրով, առաջխաղացում, որն Անդրկովկասի ժողովուրդների ֆիզիկական գոյությանն էր սպառնում, նրանք իրենց բոլոր ուժերը մոբիլիզացրել էին բոլշևիկներին հալածելու և Անդրկովկասի աշխատավորության ռևոլյուցիոն շարժումները ճնշելու համար։

1918 թվականի փետրվարի 8-ին Անդրկովկասյան կոմիսարիատը փակեց բոլշևիկյան թերթերը՝ «Кавказский Рабочий», «Բրձոլա» ու «Բանվորի կռիվ» և միաժամանակ բանտարկեց աչքի ընկնող մի շարք բոլշևիկների։ Մի քանի քաղաքներում հայտարարվեց զինվորական դրություն։

1917—1918 թվականներին Անդրկովկասում սկսեց զարգանալ ու խորանալ բոլշևիկների ղեկավարած ռևոլյուցիոն շարժումը։ Բաքվում, Թիֆլիսում, Բաթումում, Ալեքսանդրոպոլում, Ղարսում, Երևանում և, հատկապես, Կովկասյան ռազմաճակատում ծավալվեցին բոլշևիկյան պարտիական ու մարտական կազմակերպությունները, որոնց ազդեցությունը աշխատավոր մասսաների վրա աճում էր օրավուր։

Ահաբեկված այդ շարժման թափից՝ Անդրկովկասի կոնտրռևոլյուցիոն կառավարությունը դաշնակների, մուսավաթականների և մենշևիկների ղեկավարությամբ նոր հալածանքներ սկսեցին բոլշևիկների դեմ։ Նրանք հսկայական ջանքեր թափեցին՝ գլխատելու առաջին հերթին բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարներին։

Անդրկովկասի Կոմիսարիատը 1918 թվականի փետրվարի 4-ին որոշեց ձերբակալել Անդրկովկասի արտակարգ կոմիսար Ստեփան Շահումյանին։

Բաքվի, Թիֆլիսի, Ալեքսանդրոպոլի, Դիլիջանի և այլ վայրերի աշխատավորները մի շարք միտինգներում բողոքի բանաձևեր ընդունեցին Ստ. Շահումյանի կալանքի մասին որոշման դեմ։ Այսպես, օրինակ, Ալեքսանդրոպոլի աշխատավորների միտինգի բանաձևում Շահումյանի ձերբակալման մասին ասված է.

«Հոգու անհուն զզվանքով բողոքում ենք նրա (Անդրկովկասի կոմիսարիատի) մի նոր ոճրագործ քայլի՝ ընկ. Շահումյանի ձերբակալման որոշման դեմ։ Ով դեմ է Շահումյանին, դեմ է մեզ՝ պրոլետարներին, ով դեմ է Շահումյանին, դեմ է Ռուսիայի մեծ ռևոլյուցիային, Կարմիր Պետերբուրգին, որովհետև նրան է, որ նշանակել են Կովկասի ժամանակավոր կոմիսար, մինչև խորհուրդներ գումարելը, որպեսզի երկիրն անարխիայի և հակառևոլյուցիայի գրկից ազատի» («Բանվոր», 1918 թ., № 4, մարտի 4)։

Այդ հալածանքներին Անդրկովկասի պրոլետարիատը պատասխանեց մասսայական գործադուլներով և բողոքի միտինգներով։

1918 թվականի փետրվարի 9-ին (22) տեղի ունեցավ Թիֆլիսի երկաթուղայինների հսկայական միտինգ, որտեղ որոշվեց ընդհանուր գործադուլ հայտարարել։ Բանվորները միաժամանակ պահանջում էին ազատել բանտարկված բոլշևիկներին և վերահրատարակել բոլշևիկյան թերթերը։ Երկաթուղայինների որոշմանը միացան Թիֆլիսի մյուս գործարանների բանվորները։

«Գործադուլավորները, ի պատասխան հակառևոլյուցիայի հարձակման,

հանդես գալով կազմակերպված ձևով, ընտրում են ընդհանուր գործադուլային կոմիտե։ Բոլշևիկները «Кавказский Рабочий» թերթի փոխարեն հրապարակում են «Кавказская Правда»-ն, որը կոչ է անում բանվորներին, գյուղացիներին և զինվորներին՝ ամուր կերպով պաշտպանել ռևոլյուցիան և թույլ չտալ, որ Սեյմը հրավիրվի»։

Անդրկովկասի սեյմի հրավիրման նախօրյակին բոլշևիկյան Երկրային Կոմիտեն բանվորներին, գյուղացիներին ուղղված իր կոչում ասում էր. «Սեյմն իրենից ներկայացնում է նոր կեղծիք, նոր խաբեություն ժողովրդի համար, ի հաճույս մուսուլմանական բեկերի և խաների, վրացական իշխանների և հայկական բուրժուազիայի, ռևոլյուցիան Անդրկովկասում խեղդելու»։

1918 թվականի փետրվարի 10 (23)-ին, Սեյմի բացման օրը, բոլշևիկյան Երկրային Կոմիտեն Ալեքսանդրյան այգում նշանակեց բանվորական բողոքի խաղաղ միտինգ՝ ընդդեմ Սեյմի բացման, որը պիտի ձևակերպեր Անդրկովկասի անջատումը Սովետական Ռուսաստանից։ Ալեքսանդրյան այգում տեղի ունեցող միտինգը, որին մասնակցում էին Թիֆլիսի մի քանի հազար աշխատավորներ, ո՛չ միայն բողոքում էր Սեյմի այդ որոշման դեմ, այլև իշխանությունից պահանջում էր ազատել բանտարկված բոլշևիկներին։

Անդրկովկասի կոմիսարիատի ղեկավարները լավ էին հասկանում այդ միտինգի քաղաքական նշանակությունը. նրանք գիտեին, որ այդ միտինգը բանվորական գործադուլները կվերածի ապստամբության։ Դրա համար էլ Կոմիսարիատը, մենշևիկների և մյուս պարտիաների համաձայնությամբ մի քանի զորամասեր կանչել տվեց և նրանց ղեկավար նշանակելով արյունարբու Իմնադձեին ու Կիպիանուն, որը ցերեկով գնդակոծեց խաղաղ և անզեն միտինգավորներին։ Զոհվածների մեջ կային նաև կանայք ու անչափահաս երեխաներ, որոնք հետաքրքրության համար եկել էին միտինգը դիտելու։ Այդ գնդակոծումը, որը տեղի ունեցավ այդպիսի նենգ ու ստոր ձևով, նոր զայրույթ առաջացրեց աշխատավորների մեջ։

Ալեքսանդրյան այգու արյունալի դեպքերից հետո, նույն օրը, փետրվարի 10-ին, Թիֆլիսում մեծ հանդիսավորությամբ բացվեց, այսպես կոչված՝ Անդրկովկասյան Սեյմը։ Նա կազմված էր ցրված Սահմանադիր ժողովի՝ մենշևիկների, մուսավաթականների, դաշնակցականների, էսեռների և կադետների ներկայացուցիչներից։ Սեյմում վրացական մենշևիկներն ունեին 36 ներկայացուցիչ, մուսավաթականները՝ 30, դաշնակները՝ 27, էսեռները՝ 19, իսկ մյուս պարտիաներն ունեին համեմատաբար ավելի քիչ թվով ներկայացուցիչներ։ Միայն բոլշևիկների պարտիան էր, որ բոյկոտի էր ենթարկել Սեյմը և ո՛չ միայն չէր մասնակցում նրա աշխատանքներին, այլև անողոք պայքար էր մղում այդ կոնտրռևոլյուցիոն օրգանի դեմ։

Սեյմը բոլոր միջոցները գործ էր դնում, որպեսզի ըստ կարելույն շուտ լիկվիդացնի բանվորների ու զինվորների Սովետները։ Իրենց դիկտատուրան ամրապնդելու համար անդրկովկասյան կոնտրռևոլյուցիոն պարտիաները սերտ դաշինքի մեջ մտան միջազգային իմպերիալիզմի հետ։

Հենց այդ անգլո-ամերիկյան իմպերիալիստները բոլոր միջոցները գործադրում էին, դաշնակների, մենշևիկների և մուսավաթականների «ռեսպուբլիկաները» օգտագործել իբրև պրոլետարական ռևոլյուցիայի դեմ կռվելու պլացդարմ։

Անդրկովկասի այդ ծանր օրերին Վ. Ի. Լենինը, հետևելով Կովկասի դեպքերին, քաջալերում էր Կովկասի բոլշևիկներին և այդ նպատակով 1918 թ. փետրվարի 14-ին Ստ. Շահումյանին գրում էր.



«Թանկագին ընկեր Շահումյան։

Շատ շնորհակալ եմ նամակի համար։ Մենք հրճվանքի մեջ ենք Ձեր հաստատակամ և վճռական քաղաքականությունից։ Կարողացեք դրան միացնել այն ամենազգույշ դիվանագիտությունը, որն անպայման թելադրվում է այժմյան դժվարագույն դրությամբ,— և մենք կհաղթենք։

Դժվարություններն անհաշիվ են։ Առայժմ մեզ փրկում են միայն իմպերիալիստների հակասությունները, կոնֆլիկտներն ու պայքարը։ Կարողացեք օգտագործել այդ կոնֆլիկտները. առայժմ հարկավոր է դիվանագիտություն սովորել։ Լավագույն ողջույններ ու ցանկություններ և ողջույն բոլոր բարեկամներին» (Երկեր, հ. 35, էջ 359)։

Թուրքիայի առաջխաղացման ճգնաժամային օրերին միայն բոլշևիկյան պարտիան էր, որ մտահոգված էր ժողովրդի պաշտպանության խնդրով։ Բոլշևիկների Անդրերկրային Կոմիտեն 1918 թվականի փետրվարի 26-ին իր գաղտնի նիստում, ելնելով ստեղծված նոր պայմաններից, մենշևիկների իշխանության տապալման ու սովետական իշխանության հաստատման լոզունգին զուգընթաց, առաջադրեց իմպերիալիստների առաջխաղացման դեմ պայքարելու լոզունգը։

Երկրային Կոմիտեն, անդրկովկասյան ժողովուրդներին ուղղած իր կոչում ասում էր. վճռականորեն պաշտպանել սոցիալիստական ռևոլյուցիան, Սովետական իշխանությունը և զենքը ձեռքին մինչև արյան վերջին կաթիլը պայքարել իմպերիալիզմի դեմ՝ հանուն սոցիալիզմի։

Բոլշևիկները պայքարն ընդդեմ առաջխաղացող թուրք զորքերի, դիտում էին իբրև պայքար միջազգային իմպերիալիզմի դեմ, հանուն պրոլետարական ռևոլյուցիայի պաշտպանության ու հաղթանակի։

Երբ Անդրկովկասյան Սեյմը զբաղված էր Թուրքիային զիջումներ անելով, թուրքական զինված ուժերը առանց որևէ դիմադրության մեկը մյուսի ետևից գրավում էին Անդրկովկասի տարբեր շրջանները, բարբարոսաբար հրի ու սրի ենթարկում հայ և վրացի բնակչությանը։ Թուրքական բանակի առաջխաղացման վտանգն ավելի քան ակնբախ էր դառնում։ Անդրկովկասյան Սեյմի ֆրակցիաները, 1918 թվականի ապրիլի 7-ին Սեյմի միացյալ նիստում արտահայտվեցին Թուրքիայի պահանջներն ընդունելու օգտին։ Մուսավաթականները նույնիսկ սպառնում էին, որ եթե չընդունվեն Թուրքիայի առաջարկները, իրենք դուրս կգան Անդրկովկասի ֆեդերացիայից և Արևելյան Անդրկովկասը կհայտարարեն անկախ։ Նույնպիսի դիրք էին բռնել նաև մենշևիկները։ Դաշնակցության ներկայացուցիչները, որոնք նոր էին վերադարձել Ալեքսանդրոպոլից, առաջարկում էին շարունակել պատերազմը։ Բայց Ռուսաստանի սովետական իշխանության ուժեղացման, Անդրկովկասի ռևոլյուցիոն շարժման վերելքի և Բաքվում բոլշևիկների տարած հաղթանակի հետևանքով, Անդրկովկասի հակառևոլյուցիոն ուժերը համախմբելով և միասնական ճակատ կազմելով, աշխատեցին երկաթյա ցանցերով պատել երկիրը պրոլետարական ռևոլյուցիայի վտանգից և 1918 թվականի ապրիլի 10-ին Սեյմն իր ճնշող մեծամասնությամբ ընդունեց թուրքերի բոլոր առաջարկությունները, մասնավորապես Անդրկովկասը Ռուսաստանից անջատ և անկախ հայտարարելու մասին։

Մենշևիկները և մուսավաթականները նախօրոք հող էին պատրաստել, երաշխիք էին տվել թուրքերին և գերմանացիներին՝ Անդրկովկասը նրանց հանձնելու համար։ Ստ. Շահումյանը 1918 թվականի հունիսի 7-ին Բաքվի բանվորների, նավաստիների և գյուղացիների Սովետի նիստում զեկուցելիս ասում էր, որ մենշևիկները նախքան Բրեստի հաշտությունը թուրքերի համար արդեն հող էին պատրաստել Անդրկովկասի վրա արշավելու։ Մենշևիկների լիդեր Չխենկելին գտնում էր, որ «լավ է տաճիկների գիրկն ընկնել, քան բոլշևիկներին հարել» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, էջ 639)։

Անդրկովկասի Սեյմի գլխավորած ֆեդերացիան իր «անկախություն» հայտարարելուց մեկ և կես ամիս հետո, 1918 թվականի մայիսի 26-ին տապալվեց։ Սեյմի վերջին ժողովում Անդրկովկասի ազգայնական պարտիաները Թուրքիայի հետ պատերազմի և պարտության պատճառները մեկը մյուսի վրա բարդեցին, իսկ Չխենկելին հայտարարեց Անդրկովկասյան Սեյմը ցրված։ Մի քանի րոպեից հետո նույն դահլիճում տեղի ունեցավ վրացական ազգային խորհրդի նիստը, որն ընդունեց Վրաստանի «անկախության» ակտը և ընտրեց «ազգային» կառավարություն՝ Նոյ Ռամիշվիլու գլխավորությամբ։

Մյուս օրը, մայիսի 27-ին, մուսավաթականները Ադրբեջանը հայտարարեցին «անկախ» ռեսպուբլիկա՝ Գյանջա (այժմ Կիրովաբադ) մայրաքաղաքով։

1918 թվականի մայիսի 28-ին Հայաստանի Կենտրոնական Ազգային խորհուրդը, որը դեռ շարունակում է մնալ Թիֆլիսում, Հայաստանը հայտարարեց «անկախ» ռեսպուբլիկա, իսկ իրեն՝ նրա գերագույն իշխանություն։ 1918 թվականի հունիսի 17-ին Հայաստանի ազգային խորհուրդը և «Հայկական կառավարությունը» դաշնակցական լիդեր Հովհ. Քաջազնունու գլխավորությամբ Թիֆլիսից Երևան մեկնեցին թուրքական և գերմանական սպաների ուղեկցությամբ։ Այս քաղաքական ակտով հակառևոլյուցիան ժամանակավորապես հաղթանակեց Անդրկովկասում։

1918 թվականի մայիսին թխված Անդրկովկասի ազգային երեք «անկախ» բուրժուական պետությունները շատ ջանքեր թափեցին իրենց համար իմպերիալիստական հովանավորներ և տերեր գտնելու նպատակով։ Սակայն այդ տերերն էլ անզոր էին կասեցնելու Հոկտեմբերի հորձանքը։ Հայ կոնտրռևոլյուցիոն դաշնակցությունը իր երկար տարիների ավանտյուրիստական և լակեյական քաղաքականության հետևանքով Հայաստանը հասցրեց աղետալի վիճակի։ Տխրահռչակ հանրապետությունը ընդամենը ուներ 6 կիլոմետր երկաթուղի։

1918 թվականի վերջերին Անդրկովկասի բոլոր «անկախ» ռեսպուբլիկաները փաստորեն գտնվում էին իմպերիալիստական պետությունների գարշապարի տակ։

Անդրկովկասի ժողովուրդները ևս երկու տարի տառապեցին ավերածության, բռնությունների և անլուր կեղեքումների մագիլներում։

Շուտով Անդրկովկասի ժողովուրդներն էլ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ թոթափեցին բուրժուական բախտախնդիրների ոհմակի լուծը՝ հաստատեցին սոցիալիստական սովետական կարգեր։

---

# ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԱԿԱՆԱՎՈՐ ՄԱՏԵՐԻԱԼԻՍՏ ԼՅՈՒԴՎԻԳ ՖՈՅԵՐԲԱԽԸ

*Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ*

## 1.

Հաճախ այն կարծիքն են հայտնում, թե Ֆոյերբախը քաղաքականության նկատմամբ բոլորովին անտարբեր փիլիսոփա է եղել։ Գերմանական այդ նշանավոր մատերիալիստի մասին եղած այդպիսի պատկերացումը բնավ չի համապատասխանում իրականությանը։ Ֆոյերբախն ապրել է սոցիալական մեծ իրադարձություններով լի այնպիսի մի դարաշրջանում, երբ առաջավոր մարդիկ չէին կարող քաղաքական կյանքին անմիջականորեն չմասնակցել։ «Մենք ապրում ենք,— գրում էր նա,— այնպիսի մի ժամանակ, երբ քաղաքական շահը կլանում է ամեն ինչ և քաղաքական իրադարձություններն անմիջական լարման ու գրգռման մեջ են պահում մեզ, այնպիսի մի ժամանակ, երբ հատկապես մեզ՝ ոչ-քաղաքական գերմանացիներիս վրա պարտականություն է դրվում՝ մոռանալ ամեն ինչ հանուն քաղաքականության» (Երկեր, հ. 2, էջ 493)։ Այս տողերից հետևում է, որ Ֆոյերբախը չէր կարող չհետաքրքրվել և նրան չէին կարող չհուզել ժամանակի քաղաքական պրոբլեմները։ Դեռ ավելին, նա ոչ միայն մեծ հետաքրքրություն էր ցուցաբերում քաղաքական պրոբլեմների նկատմամբ, այլև հենց ինքն էլ ձգտում էր ձևակերպել այն ժամանակվա գերմանական հասարակության քաղաքացիական պահանջները։

Ֆոյերբախը սուր քննադատում էր ֆեոդալական պետությունը, որտեղ, նրա խոսքերով ասած, «ամեն ինչ կախված է ինքնակալի ողորմածությունից ու քմահաճույքից» (Երկեր, հ. 1, էջ 643)։ Թագավորի իշխանության աստվածային ծագման մասին եղած տեսակետը, ասում էր նա, կատարյալ ցնդաբանություն է։ Պետությունը ստեղծում են մարդիկ, և նրանց կամքով ու ցանկությամբ է պայմանավորված նրա գոյությունը։ Դասային անսահմանափակ միապետությունը «անբարոյական» պետություն հայտարարելով՝ Ֆոյերբախը հանդես էր գալիս բուրժուա-դեմոկրատական ռեսպուբլիկայի օգտին։ Իր այդ պահանջը նա հիմնավորում էր նրա համար բնորոշ անթրոպոլոգիական փաստարկներով. դեմոկրատական ռեսպուբլիկան, նշում էր նա, ամենից ավելի ադեկվատ է համապատասխանում մարդու «բնությանը»։

Սակայն Ֆոյերբախը գործնական մասնակցություն չունեցավ իր հայրենիքում բուրժուա-դեմոկրատական կարգեր հաստատելու համար մղած պայքարին, երբ դրա հնարավորությունը կար 1848 թվականի ռևոլյուցիայի ժամանակ։ Ուստի Վ. Ի. Լենինը նշում է, որ Ֆոյերբախը չհասկացավ այդ ռևո-

*լյուցիան։ Եվ դա, անտարակույս, ճիշտ է։ Այնուհանդերձ այդ ժամանակաշրջանի իրադարձությունների գնահատման հարցում գերմանական մատերիալիստն անհամեմատ ավելի բարձր էր կանգնած ժամանակի շատ բուրժուական լիբերալներից ու ռադիկալներից։*

*1848 թվականի ռևոլյուցիայի պարտությունից հետո բուրժուական գործիչների մեծամասնությունը, այդ թվում նաև Ֆոյերբախի նախկին ընկերներից շատերը, «ձախ» հեգելականներ Դ. Շտրաուսը, Բ. Բաուերը, Ա. Ռուգեն և ուրիշներ անցան կոնտրռևոլյուցիայի ճամբարը և իրենց ամենևին էլ վատ չէին զգում հաղթանակած ռեակցիայի պայմաններում։ Բոլորովին այլ կերպ էր իրեն զգում Ֆոյերբախը։ «Աշխարհը բանտ է,—բացականչում է նա Կապպին ուղղած իր նամակում։— Ազատի ու կալանավորի տարբերությունը զուտ քանակական է, այն, որ առաջինն ավելի ընդարձակ բանտախցիկ ունի։ Գոնե ես միշտ էլ ինձ կալանավոր եմ զգում»։*

*Բայց Ֆոյերբախի գործունեության հիմնական բնագավառը քաղաքականությունը չէր։ Քաղաքականության այլ և այլ հարցերի շուրջը նրա հայտնած մտքերը թեև մեծ հետաքրքրություն են ներկայացնում, բայց դրանք չեն որոշում նրա գործունեության հիմնական էությունը։ Ֆոյերբախի հիանալի տաղանդը ծավալվեց գլխավորապես փիլիսոփայության ոլորտում։ Սակայն նրա ամբողջ փիլիսոփայական գործունեությունը ևս հետապնդում էր մի նպատակ, որպիսին նա ցանկանում էր իրականացած տեսնել պրակտիկայում ու քաղաքականության մեջ, այն է՝ մարդու ազատագրումը ֆեոդալական նորմաներից ու սահմանափակություններից։ Ֆոյերբախը գտնում էր, որ այդ խնդրի կատարման համար հսկայական, նույնիսկ վճռական նշանակություն ունի մարդու ազատագրությունը իդեալիստական փիլիսոփայությունից ու կրոնական սնոտիապաշտություններից։*

2.

*Լյուդվիգ Ֆոյերբախը ծնվել է 1804 թ. հուլիսի 28-ին Բավարիայի Լանդսգուտ քաղաքում։ Նրա հայրը՝ Անսելմը, շատ կրթված և այն ժամանակվա համար առաջադեմ քրեագետ էր։ Ընդհանրապես գրեթե բոլոր Ֆոյերբախները շնորհալի մարդիկ էին։*

*Իր սկզբնական կրթությունը Լ. Ֆոյերբախը ստացավ տեղի գիմնազիայում, իսկ հետո սովորեց Հայդելբերգի, այնուհետև՝ Բեռլինի համալսարանում, որտեղ փիլիսոփայության դասընթացը Հեգելն էր ավանդում։ 1830 թվականին անստորագիր լույս տեսավ Ֆոյերբախի «Մտքեր մահվան և անմահության մասին» երկը։ Սակայն շուտով հայտնի դարձավ, թե ով է այդ համարձակ երկի հեղինակը։ Այդ գիրքը խսկույն ևեթ բռնագրավվեց, իսկ նրա հեղինակի դեմ հալածանքներ սկսվեցին։ Բանն այն է, որ այդ աշխատության հիմնական բովանդակությունը հակառակ էր ուղղափառ քրիստոնեության ուսմունքին։ Ֆոյերբախը ժխտում էր անձնական անմահությունը։ Նրա տեսակետով մարդու անմահությունը լոկ մարդու կյանքի շարունակությունն է մարդկանց հիշողության մեջ։ Նա այդ ժամանակ քրիստոնեության դեմ պայքարում էր օբյեկտիվ իդեալիզմի դիրքերից։ Հավերժական է, անմահ է, ասում էր նա, ցեղային, ընդհանուր բանականությունը։*

*Այդ գրքի լույս ընծայումից հետո Ֆոյերբախի շուրջն այնպիսի մթնոլորտ ստեղծվեց, որ վերջ ի վերջո նա հարկադրված եղավ հրաժարվել մանկա-*



*վարժական գործունեությունից։ Նա բնակություն հաստատեց Թյուրինգիայի Բրուկբերգ փոքր գյուղում, Գերմանիայի կուլտուրական կենտրոններից հեռու, որտեղ նա ապրեց 25 տարի։ Սակայն Ֆոյերբախի այս առանձնանալը չէր նշանակում, թե նա հաշտվել էր այն ժամանակվա զազրելի գերմանական իրականության հետ։ Զլինելով քաղաքական մարտիկ՝ նա Գերմանիայում տիրող սոցիալական ճնշման դեմ պասսիվ բողոքի մի յուրովի ձև էր ընտրել։*

*Բայց Ֆոյերբախը վայր չէր դրել զենքերը։ Իր խուլ գյուղից նա ամենագործունյա մասնակցությունն էր ունենում երկրի հոգևոր կյանքին։*

*Ֆոյերբախը մտավոր էվոլյուցիա ապրեց իդեալիզմից դեպի մատերիալիզմ։ Նրա ստեղծագործության նոր, մատերիալիստական շրջանը սկսվեց 1839 թվականին, երբ նա իր «Հեգելի փիլիսոփայության քննադատության շուրջը» աշխատությամբ կանգնեց մատերիալիզմի դիրքերում։ Ֆոյերբախի «Քրիստոնեության էությունը» հռչակավոր գիրքը (1841 թ.) արդեն մատերիալիստական փիլիսոփայության կատարյալ հաղթանակն էր։ Թարգմանվելով շատ լեզուներով՝ այդ աշխատությունը բացառիկ խոշոր դեր խաղաց առաջավոր հասարակական գիտակցության զարգացման գործում։ «Հարկավոր էր զգալ այդ գրքի ազատագրող ներգործությունը,— գրում էր Էնգելսը,— նրա մասին պատկերացում կազմելու համար։ Ոգևորությունն ընդհանուր էր. մենք բոլորս էլ ֆոյերբախականներ դարձանք»։ Ֆոյերբախի անունը դարձավ խավարամտության, սնահավատության ու դեսպոտիզմի դեմ մղվող պայքարի նշանաբան։*

*Ծերության տարիներին Ֆոյերբախը մեծ կարիքի մեջ էր ապրում։ Նա այդ ժամանակ եռանդով ուսումնասիրում էր Կ. Մարքսի «Կապիտալ»-ը և 1870 թվականին մտավ գերմանական սոցիալ-դեմոկրատական պարտիայի շարքերը։ Ֆոյերբախը վախճանվեց 1870 թվականի սեպտեմբերի 13-ին։*

3.

*Ֆոյերբախը, ինչպես նշել է Մարքսը, խսկական հայտնագործություններ կատարեց և «ռոհասարակ ինչպես հարկն է հաղթահարեց հին (այսինքն՝ իդեալիստական, հեգելյան — Մ. Գ.) փիլիսոփայությունը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հ. 3, էջ 634)։ Մարքսը երիտասարդ հեգելականների ճամարտակություններին, իբր թե մինչև այժմ անհայտ ինչ-որ «ճշմարտությունների» հայտնագործման վերաբերյալ նրանց դատարկ հավակնություններին հակադրում էր Ֆոյերբախի այն լուրջ ու մեթոդիկ աշխատանքը, որ նա կատարել էր աշխարհի նկատմամբ իսկապես նոր մատերիալիստական հայացքը հիմնավորելու գործում։ Ֆոյերբախը իդեալիզմի դեմ մղած պայքարում գերմանական միջավայրում պաշտպանեց ու զարգացրեց իր նախորդների՝ 17—18-րդ դարերի մատերիալիստների ուսմունքը։*

*Հանդես գալով իդեալիզմի դեմ՝ Ֆոյերբախն ամեն կերպ ապացուցում էր մարդկային օրգանիզմի միասնությունը։ Նա խորապես համոզված էր, որ իդեալիստների բոլոր խորամանկումներն էլ հիմնված են այդ միասնության ժխտման վրա։ Մտածողությունը, ասում էր նա, մատերիա ստեղծող մի աստվածային ուժի է վերածվում, երբ իդեալիստն այն վերցնում է մարմնից անջատ։ Հիշատակելով դուալիստների այն տեսակետը, թե մարմինը պետք է համարել մատերիայի արդյունք, իսկ հոգին՝ աստծո, Ֆոյերբախը բացականչում է. «Այդ ի՞նչ կիսատ-պռատություն է, այդ ի՞նչ երկճեղքում է, այդ ի՞նչ շիլա-փլավ է» (Երկեր, հ. 2, էջ 662)։*

Այսպիսով, Ֆոյերբախը ջերմորեն պաշտպանում էր անթրոպոլոգիական սկզբունքը, որը նրա մոտ փիլիսոփայության հիմնական հարցը մատերիալիզմի ոգով լուծելու մեթոդ էր։ Ֆոյերբախի այդ սկզբունքի նշանակությունն այն է, որ նա վերացնում է ոգու և մարմնի միջև իդեալիստական ու դուալիստական փիլիսոփայության ստեղծած ճեղքվածքը։ Հերքելով իդեալիզմի այն թեզը, թե գիտակցությունը պրիորիտետ ունի մատերիայի նկատմամբ, Ֆոյերբախը գիտակցությունը նյութական սուբստրատի՝ ուղեղի, յուրահատկություն էր համարում։

Փիլիսոփայության հիմնական հարցի լուծմանը մոտենալով անթրոպոլոգիայի տեսանկյունով՝ Ֆոյերբախը մատերիալիզմը հիմնավորելու համար ձգտում էր օգտագործել նաև այլ գիտություններ, ինչպես, օրինակ՝ կենսաբանությունը, ֆիզիոլոգիան, հոգեբանությունը, որոնք այն ժամանակ արդեն զարգացել էին։ Նա իդեալիզմի դեմ մղած պայքարում մատերիալիստական փիլիսոփայությունը հարստացրեց նոր փաստարկումներով ու զենքերով։

Մեկնակետ ունենալով մարդուն՝ Ֆոյերբախը նրան չէր կտրում բնությունից և չէր հակադրում նրան։ Անթրոպոլոգիական սկզբունքը ճիշտ կիրառելու դեպքում, ասում էր Ֆոյերբախը, մենք անխուսափելիորեն կհանգենք այն բանին, որ բնությունը, մատերիան մարդուց դուրս գոյություն ունեցող ու նրան ծնող միակ ու իսկական սուբստանցիան է։ Ի՞նչ է մարդու մարմինը, մեր բնության միասնության այդ հիմքը։ Ֆոյերբախը դրան պատասխանում էր, որ այդ մարմինը, ի հակադրություն վերացական Ես-ի, օբյեկտիվ աշխարհի մի մասն է և մի որոշ չափով էլ ներառում է նրա կեցությունը։ Այսպիսով, անթրոպոլոգիական մոնիզմը տանում է դեպի մոնիստական մատերիալիստական հայացքը բնության նկատմամբ։

Ուստի փիլիսոփայությունը, Ֆոյերբախի կարծիքով, պետք է իր սկզբունքը դարձնի ոչ սոսկ մարդուն։ «Նոր փիլիսոփայությունը,— գրում էր նա,— մարդուն, ներառյալ նաև բնությունը որպես մարդու բազիսի, դարձնում է փիլիսոփայության միակ, ունիվերսալ ու բարձրագույն առարկա, հետևապես՝ անթրոպոլոգիան, այդ թվում նաև ֆիզիոլոգիան դարձնելով ունիվերսալ գիտություն» (Երկեր, հ. 1, էջ 202)։

Բնությունը բնութագրելիս Ֆոյերբախն ամենից առաջ մատնանշում էր նրա նյութական բնույթը։ Բնությունը, ասում էր նա, մարմնական է, նյութական։ Մատերիան ստեղծված չէ, այլ հավիտենական ու անսահման է։ Ֆոյերբախն ապացուցում էր, որ բնության պատճառը պետք է բուն իսկ բնության մեջ փնտրել։ «Բնությունն... ինքն իր պատճառն է», կրկնում էր նա Սպինոզայի հայտնի դրույթը։ Բնությունը նախորդում է ոգուն, անգիտակից գիտակցությանը, նպատակի աննպատակությանը։ Անբանականությունից դեպի բանականություն գնալը, ասում էր Ֆոյերբախը, իմաստության ուղին է, բայց բանականությունից դեպի անբանականություն գնալը ուղիղ դեպի աստվածաբանության գժատունը տանող ճանապարհն է։ «Ֆոյերբախը,— ասում էր Լենինը,— կտրեց փիլիսոփայական իդեալիզմի չինական հյուսքը, այսինքն՝ որպես հիմք վերցրեց բնությունն առանց որևէ «ընդարկման»» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 14, էջ 306)։

Ֆոյերբախը բնությունն ըմբռնում էր որպես կոնկրետ, զգայարար ընկալվող որակական էություն։ Աշխարհի բազմորակության այդպիսի հաստատումն էլ հենց նրա մատերիալիզմը տարբերում է մատերիալիզմի բոլոր հին մեխանիստական ձևերից։ Բնությունը, մատերիան Ֆոյերբախի մոտ այնպիսի վերացական երկրաչափական մեծություն չէ, ինչպես Հոբսի մոտ, այնպիսի անշարժ ու ժամանակից դուրս գտնվող վերացական սուբստանցիա չէ, ինչպես Սպինոզայի մոտ։ «Բնությունը բազմազան, մարդու համար մատչելի, բոլոր զգայարաններով ընկալվող էություն է։ Որքան որ անհեթեթ է այն հարցը, թե որևէ բանը առհասարակ ինչու գոյություն ունի, նույնքան էլ անհեթեթ է այն հարցը, թե որևէ բանը ինչու հենց այդպիսի տրված, որոշակի էություն է» (Երկեր, հ. 2, էջ 635)։



Ֆոյերբախի կարծիքով ժամանակն ու տարածությունը զգայական բովանդակության ապրիորի ձևեր չեն, ինչպես պնդում էր Կանտը, այլ գոյի «արմատական պայմաններ», «ձևեր»։ Ժամանակը և տարածությունը միաժամանակ նաև մտածողության ձևեր են, որքանով որ վերջիններս ճիշտ են արտացոլում օբյեկտիվ աշխարհը։ Մատերիան ո՛չ միայն գոյություն ունի, այլև շարժվում ու զարգանում է, իսկ շարժումն ու զարգացումն անհնարին են առանց ռեալ ժամանակի։ Ասել թե հնարավոր է զարգացում առանց ժամանակի, նշանակում է ասել, թե հնարավոր է զարգացում առանց զարգացման։ Չկա մատերիա առանց ժամանակի և տարածության։ Սրանք «գոյություն ունեցող ամեն ինչի ձևերն են կազմում» (Երկեր, հ. 1, էջ 122)։ Ֆոյերբախը պաշտպանում էր օրինաչափությունների օբյեկտիվ գոյության գաղափարը։ Ոչ թե բանականությունն է իր օրենքները թելադրում կեցությանը, բնությանը, այլ ընդհակառակը, հենց իրականության օրենքներն են հանդիսանում նաև մտածողության օրենքներ։

«Այսպես ուրեմն,— գրում էր Վ. Ի. Լենինը,— Ֆոյերբախն ընդունում է օբյեկտիվ օրինաչափությունը բնության մեջ, օբյեկտիվ պատճառականությունը... Բնության օբյեկտիվ օրինաչափության ճանաչումը Ֆոյերբախի մոտ գտնվում է անխզելի կապակցության մեջ մեր գիտակցությամբ արտացոլվող արտաքին աշխարհի, առարկաների, մարմինների, իրերի օբյեկտիվ ռեալության ճանաչման հետ։ Ֆոյերբախի հայցքները հետևողականորեն մատերիալիստական են» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 14, էջ 196)։

Մատերիալիստ Ֆոյերբախը մերժում էր իդեալիստների այն պնդումը, թե անօրգանական բնության և օրգանական աշխարհի միջև ինչ-որ անանցանելի սահման գոյություն ունի։ Նա ապացուցում էր, որ կյանքը ուրիշ ոչ մի բանից ծագել չէր կարող, քան մատերիայից։ Այժմ բնությունը անկենդան նյութից կյանք չի արտադրում ոչ թե այն պատճառով, որ նա այդ անել չի կարող, ասում էր նա, այլ, որովհետև երկրագունդն այլևս այն չէ, ինչ որ կյանքի ծագման շրջանում։

Ֆոյերբախի մատերիալիզմն իր սուր ծայրով ուղղված էր իդեալիզմի, բայց ոչ մետաֆիզիկայի դեմ։ Չնայած նրա մի շարք դիալեկտիկական ասույթներին, նա այնպես էլ չհասկացավ դիալեկտիկան։ Ֆոյերբախն իր ուշադրության կենտրոնում դրել էր՝ ապացուցել բնության օբյեկտիվությունը, բայց ո՛չ նրա փոփոխականությունը, օրինաչափության ու անհրաժեշտության օբյեկտիվ նշանակությունը, բայց ո՛չ նրանց պատմականությունը։ Մարդուն վերցնելով որպես իր մատերիալիզմի հիմք՝ նա, սակայն, ընդգծում էր մարդու կեցության գլխավորապես բնական պայմանները, վերանալով, որպես կանոն, նրա հասարակական պայմաններից։ Ֆոյերբախը, ընդհանրապես ասած, չկարողացավ հաղթահարել իր նախորդների՝ 17—18-րդ դարերի մատերիա-

լիստների մետաֆիզիկությունը։ Նրա անթրոպոլոգիական մատերիալիզմը մետաֆիզիկական մատերիալիզմի մի այլատեսակությունն է։

4.

Ֆոյերբախը նշանակալի քայլեր կատարեց մատերիալիստական իմացաբանության մշակման գործում։ Եվ դա պատահական չէր։ Բանն այն է, որ նրան են վիճակվել էր պայքարել Կանտի դեմ, որն արդեն լայնորեն մշակել էր ագնոստիկական իմացաբանությունը։ Հերքելով Կանտի դրույթները՝ Ֆոյերբախը շատ ավելի հստակ կերպով, քան այդ կարող էին անել նրա նախորդ մատերիալիստները, ձևակերպեց և իդեալիզմին հակադրեց մատերիալիստական գնոսեոլոգիայի հիմնական սկզբունքները։ Ահա թե ինչու Լենինը մախիզմի սուբյեկտիվ-իդեալիստական փիլիսոփայության դեմ մղած իր պայքարում օգտագործում էր ո՛չ միայն Մարքսի և Էնգելսի ասույթները, այլև մատերիալիստ Ֆոյերբախի փաստարկները։

Ֆոյերբախը խիստ խարազանել է Կանտին այն բանի համար, որ նա բացարձակ սահմաններ էր դնում մարդկային իմացության առջև։ Իմացության պատմությունը, մատնանշում էր նա, վկայում է իմացության սահմանների մշտական ընդլայնման մասին, այն մասին, որ մարդկային բանականությունն ընդունակ է իր զարգացման մեջ բացահայտել բնության ամենախոր գաղտնիքները։ Մարդկության պատմությունն իրենից ներկայացնում է անընդմեջ հաղթանակ պատմականորեն սահմանափակ իմացության նկատմամբ։ Ֆոյերբախը համաձայն չէր այն պնդումներին, թե բնությունն իբր այնպես է կառուցված, որ ընդհանրապես ենթակա չէ ճանաչման։ Ճիշտ է, մենք դեռևս չգիտենք իրականության շատ կողմերն ու հատկությունները, բայց մի՞թե կարելի է դրանից բնության անճանաչելիության եզրակացության հանգել, ինչպես այդ անում է ագնոստիկը։

Ֆոյերբախը իմացության ելակետ էր համարում զգայությունը։ Իր փիլիսոփայությունն էլ նա զգայականության հաստատում էր համարում։ Ընթանալով անգլիական և ֆրանսիական մատերիալիստների հետքերով՝ նա ընդգծում էր զգայականության ճշմարիտ ու գիտական բնույթը։ Նա շատ լավ հասկանում էր, որ զգայությունները մարդուն կապում են արտաքին աշխարհի հետ։ Փորձի և զգայությունների սուբյեկտիվ-իդեալիստական ըմբռնմանը Ֆոյերբախը հակադրում էր փորձի ու զգայությունների պատմական ըմբռնումը որպես մարդկային գիտելիքների աղբյուրի։

Ֆոյերբախը միաժամանակ և հասկանում էր, որ գիտական իմացությունը դիտումով ու հայեցումով լոկ միայն սկսվում է։ Երբ Ֆոյերբախն ասում է, թե ինքը իմացության հիմքում դնում է զգայականությունը, ապա նա, իհարկե, նկատի ունի «ոչ թե առանց գլխի, առանց բանականության ու մտածողության զգացումները» (Նույն տեղում, էջ 270)։ Մարդը, Ֆոյերբախի փաստերի համաձայն, պետք է ելնի «զգայականից, որպեսզի հանգի բարդ, վերացական, աչքից հեռու առարկաներին» (Երկեր, հ. 2, էջ 697)։ Ելնելով փորձից, որպես իմացության սկզբից, Ֆոյերբախը շեշտում էր բանականության կարևոր դերը իմացության պրոցեսում։

Ի՞նչն էր բանականության ֆունկցիա համարում Ֆոյերբախը։ Նա ապացուցում էր, որ բանականությունն ըստ էության ոչ մի այնպիսի բան չի տալիս, որը չլիներ զգայություններում։ Մեր բոլոր գաղափարներն ու հասկացությունները ծագում են փորձից, զգայությունից։ Սակայն Ֆոյերբախը գտնում է, որ փորձնական, զգայական իմացությունը սահմանափակ զգայություն է այն իմաստով, որ նա առանձին երևույթների հետ է գործ ունենում։ Բանականության դերն այն է, որ նա ամբողջական կապակցության մեջ է վերցնում այն, ինչ որ զգայարանները մասնատված, անջատ-անջատ են ներկայացնում։ Ինչպես որ բառերի կապակցությունը իմաստ է տալիս նրանց, այնպես էլ զգայական տվյալները միայն այն ժամանակ են ըմբռնվում, երբ բանականությունը կապակցում է նրանց։ «Զգայարաններով... մենք կարդում ենք բնության գիրքը, բայց այն ըմբռնում ենք ոչ զգայարաններով» (Երկեր, հ. 1, էջ 271)։



Հակառակ Կանտի, որը ճշմարտության չափանիշը «մաքուր» բանականության մեջ էր որոնում, Ֆոյերբախն այն տեսնում էր կյանքում, իրականության մեջ, պրակտիկայում։ «Թեորիայի չլուծած տարակուսանքները,— գրում էր նա,— քեզ համար կլուծի պրակտիկան» (Նույն տեղում, էջ 266)։ Ընդմին պետք է նկատի ունենալ, որ Ֆոյերբախը ելնում էր ոչ առանձին ինդիվիդուումի պրակտիկայից, այլ ամբողջ մարդկության պրակտիկայից։ Առանձին մեկուսացած անհատը, ասում էր նա, չէր կարող ստեղծել լեզու, պետություն, բարոյականություն, զարգացնել իմացությունը, կատարելագործել բանականությունը։ Այն ամենը, ինչ ստեղծել է մարդկությունը — դա մարդկանց ամբողջ գործունեության, նրանց կոլեկտիվության, ընդհանրության արդյունքն է։ Լենինը նշում էր, որ Ֆոյերբախը «իմացաբանության հիմք է դարձնում մարդկային պրակտիկայի ամբողջության հաշվառումը» (Երկեր, հ. 14, էջ 179)։

Ֆոյերբախը, իհարկե, չհասավ մարդկանց հասարակական հարաբերությունների ու պրակտիկայի հետևողական մատերիալիստական ըմբռնմանը։ Նրա մոտ մարդը բնության դեմ կանգնած է որպես մարդկային «ցեղի» անդամ։ Ֆոյերբախը մարդկությանը, որպես «ցեղի» չէր անջատում բնությունից, մարդկությունը ենթակա է նրա օրենքներին, ապրում է բնության մեջ և նրա շնորհիվ։ Ֆոյերբախի «ցեղային» մարդու պրակտիկան առավելապես սպառողական պրակտիկա է, ինչպես ինքն է ասում, «ուտելիքի ու խմելիք»-ի և ոչ արտադրության, ոչ ակտիվ գործողության, չենք ասում արդեն՝ ռևոլյուցիոն գործունեության պրակտիկա։ Բայց այդ պրակտիկան արդեն մտահայեցողական, զուտ-տեսական, իրականությունից կտրված, վերացական ուղեղային չէր, ինչպես իդեալիստների մոտ։

Այսպիսով, պրակտիկայի ֆոյերբախյան ըմբռնման վրա դեռևս կար անթրոպոլոգիզմի ու նատուրալիզմի ծանր դրոշմը։ Մարքսը նշում էր, որ նա չէր հասկացել ռևոլյուցիոն, պրակտիկ-քննադատական գործունեության նշանակությունը։

5.

Ֆոյերբախը մատերիալիզմը պաշտպանում էր իդեալիզմի ու կրոնի դեմ մղած անհաշտ պայքարում։ Նա անհերքելիորեն ապացուցում էր նրանց գաղափարական ազգակցությունը և գտնում էր, որ ինչպես իդեալիզմի, այնպես էլ կրոնի արմատական աղբյուրը մտածողության անջատումն է կոնկրետ, զգայական կեցությունից։ Իդեալիզմը, ինչպես և կրոնը, մարդկային գաղափարները անկախ սուբստանցիաներ դարձնելով, հենց դրանից էլ, ինչպես

*մի աստվածային, ամենազոր աղբյուրից, արտածում են ամբողջ կոնկրետ էմպիրիկ աշխարհը։ Ինչպես աստվածաբանությունը, այնպես էլ իդեալիզմը շուռ տված է վերցնում բնությունը։*

*Կրոնը և իդեալիզմը մեկը մյուսին պաշտպանող ու աջակցող դաշնակիցներ են։ Կրոնը իդեալիզմի արդարացումն է, և ընդհակառակը։ Եթե աստվածաբանը հավատում է աստծո գոյությանը, ապա դա իդեալիզմի աստվածաբանական հիմնավորումն է։ Ճիշտ այդպես էլ մատերիայից անկախ ինչ-որ հոգևոր սուբստանցիայի օգտին իդեալիստի բերած փաստարկումները աստծո օգտին բերած փաստարկումներ են, կրոնի սպեկուլյատիվ, փիլիսոփայական հիմնավորումն են։*

*Նոր ժամանակների իդեալիստական փիլիսոփայության նշանակությունը Ֆոյերբախը տեսնում էր այն բանում, որ այդ փիլիսոփայությունը վերացական, անդրաշխարհային աստծո փոխարեն դրել էր բանականությունը, մտածողությունը, դրանց մոտեցնելով մարդկային Ես-ի ըմբռնմանը։ Սակայն իդեալիզմը բանականության վրա տարածեց այն բոլոր հատկությունները, որպիսիք կրոնը վերագրում էր աստծուն։ Ի՞նչ է, օրինակ, Ֆիխտեական Ես-ը կամ Հեգելի բացարձակ իդեան, եթե ոչ մարդու ակտիվ, մտածող էության վերածված աստվածաբանական էություն։ Ի՞նչ է կանտական իդեալիզմը, որտեղ իրերն են համակերպվում բանականությանը և ոչ թե բանականությունը իրերին, եթե ոչ միայն աստվածային նախախնամության աստվածաբանական պատկերացումը, որը ոչ թե որոշվում է իրերով, այլ ընդհակառակը, որոշում է այդ իրերը։ Ֆոյերբախն այս ամենից եզրակացնում է, որ սպեկուլյատիվ իդեալիստական փիլիսոփայությունը աստվածաբանության «ռացիոնալ մշակումն է»։ Ով ժխտում է դրանցից մեկը, պետք է ժխտի նաև մյուսը։ «Եթե դուք ժխտում եք իդեալիզմը, ապա ժխտեցեք նաև աստծուն։ Չէ՞ որ աստվածը իդեալիզմի նախահայրն է» (Երկեր, հ. 1, էջ 159)։*

*Հեգելյան իդեալիզմի ֆոյերբախյան քննադատությունը, անտարակույս, մինչմարքսյան մատերիալիստական փիլիսոփայության ամենանշանակալի երևույթներից մեկն է։ Այդ քննադատության պրոցեսում նա շատ բանով հարստացրեց մատերիալիզմը։ Հերքելով Հեգելի այն պնդումը, թե մարդկությունն իր փիլիսոփայության մեջ իբր թե հասել է բացարձակ ճշմարտության, Ֆոյերբախն ապացուցում էր, որ մարդիկ միայն իրենց ամբողջ պատմական զարգացման մեջ են ճանաչում այդ ճշմարտությունը։ Հեգելյան փիլիսոփայությունը «բացարձակ» փիլիսոփայություն չէ։ Նա իրականում «երևան եկավ մի որոշ ժամանակ… նա պետք է ունենա որոշ և, հետևապես, վերջնական բնույթ» (նույն տեղում, էջ 59)։ Այնուամենայնիվ Ֆոյերբախին չհաջողվեց ճշտորեն պարզել Հեգելի պատմական դերը և տեղը։ Մասնավորապես, նա չկարողացավ զատել, փրկել ու քննադատաբար օգտագործել Հեգելի փիլիսոփայության «ռացիոնալ հատիկը», նրա դիալեկտիկան։*

*Եվ դա պատահական չէր։ Ֆոյերբախը հեգելյան իդեալիզմը քննադատում էր գլխավորապես վերացական հումանիզմի և անթրոպոլոգիզմի դիրքերից։ Հեգելի փիլիսոփայության պատմական դերի լրիվ, գիտական սահմանումն առաջին անգամ տվեցին Մարքսը և Էնգելսը, որոնք ռևոլյուցիոն պրոլետարիատի գաղափարական դիրքերից էին ծավալել նրա փիլիսոփայության քննադատությունը։*



*Ֆոյերբախը շատ և երկար է զբաղվել կրոնի քննադատությամբ։ Դա նրա գործունեության թերևս գլխավոր, կենտրոնական առանցքն էր։*

*Ֆոյերբախն իր բոլոր նախորդներից ու ժամանակակիցներից շատ ավելի առաջ գնաց։ Կրոնական պատկերացումների աղբյուրը նա որոնում էր ոչ թե վերացական գաղափարներում, այլ մարդկանց կենսապայմաններում, նրանց իրական ու երկրային պահանջմունքներում, ցանկություններում ու շահերում։ Կրոնը բնածին զգացում չէ, բայց դրա հետ մեկտեղ նա պատահականորեն չի առաջացել։ Կրոնական պատրանքներն ու մոլորությունները ունեն իրենց օբյեկտիվ պատճառները մարդկանց կյանքում։*

*Հայտնի է, թե ինչ նշանակություն ունի բնությունը մարդու կյանքում։ Նա մարդուն կերակրող մայրն է։ Հենց այդ էլ այն բանի պատճառն է, որ բնությունը դարձավ մարդու երկրպագության առաջին առարկան, նրա առաջին աստվածը։ Մարդկանց ամենահին կրոնը բնությունը աստվածացնող «բնական» կրոնն էր՝ հեթանոսությունը։ Նախնադարյան մարդու համար կրոնական երկրպագման միակ օբյեկտը բնությունն էր։ Ուստի չպետք է զարմանալ, ասում էր Ֆոյերբախը, որ հնագույն ժողովուրդները պաշտում էին իրենց գետերը, լեռներն ու ծովերը։ Նրանց աստվածների թվում մենք տեսնում ենք նաև կենդանական աշխարհի ներկայացուցիչներին։ Կենդանիների պաշտամունքի պատճառը նույնն է, ինչ որ ֆիզիկական բնության պաշտամունքի պատճառը, այն է՝ կախվածության զգացումը։*

*Բայց, նշում է Ֆոյերբախը, իրականության երևույթները կրոնի օբյեկտ են դառնում ոչ այն պատճառով, որ նրանք ադեկվատ, ճիշտ են արտացոլվում մարդու հոգեբանության մեջ, այլ ուղիղ հակառակը. մարդը նրանց պաշտում է հենց այն պատճառով, որ նրանք աղավաղվում, խեղաթյուրվում են մարդու գիտակցության մեջ։ Ֆոյերբախն ապացուցում էր, որ բնությունը, մարդկանց հասարակական կյանքը լոկ հում նյութ են աստծո գաղափարի համար, իսկ այդ նյութը աստվածային էության վերափոխող ձևը տալիս է ֆանտազիան, երևակայության ուժը։ Կրոնի մեջ, նշում էր Ֆոյերբախը, աչքերը մարդուն ծառայում են միայն այն բանին, որ նա չտեսնի, որ նա անհուսալի կույր լինի, բանականությունը՝ միայն այն բանին, որ նա չմտածի, որ նա անհուսալի տխմար լինի։*

*Կրոնի էվոլյուցիան շարադրելիս Ֆոյերբախը հայտնել է նաև որոշ ճիշտ սոցիոլոգիական մտքեր։*

*Նա ասում էր, որ երբ մարդը գնալով ավելի ու ավելի է իրեն տարբերում բնությունից, նա այնքան ավելի ու ավելի սոցիալական էակ է դառնում։ Հեթանոսը ևս, իհարկե, սոցիալական էակ է, բայց «հոգևոր» կրոն ունեցող ժողովուրդների հասարակական կյանքը շատ ավելի բարդ է։ Բնության ուժերի հետ մեկտեղ նրանց կյանքում ավելի ու ավելի մեծ նշանակություն են ձեռք բերում նաև սպեցիֆիկ սոցիալական ուժերը։ Եթե հեթանոսը զգում է իր կախումը բնությունից, ապա «հոգևոր» կրոնի տեսակետի վրա կանգնած մարդն էլ շարունակ զգում էր իր կախումը հասարակական ուժերից։ Եթե արեգակի ճառագայթները, ասում էր Ֆոյերբախը, այնքան են կուրացնում բնության ստրուկին, որ սա ամեն օր աղոթում է աստծուն, ապա քաղաքական ստրուկն այնքան է կուրացած արքայի թագի փայլից, որ նա ծնկաչոք երկրպագում է արքային, իբրև մի ինչ-որ աստվածային ուժի, որից կախված է իր գոյությունը։ Արքան մեկ է, հետևաբար, մեկ է նաև աստվածը։ Ինչպես որ ստրուկի*

պատկերացման մեջ առանց տիրոջ, առանց արքայի կարգ լինել չի կարող հասարակության մեջ, այնպես էլ նա տիեզերական կարգի աղբյուր և բնության արարիչ ու տեր է համարում աստծուն։ Այստեղից էլ Ֆոյերբախն անում է հետևյալ եզրակացությունը. ոչ թե աստվածն է ստեղծել մարդուն, այլ հասարակության մեջ ապրող մարդն է ստեղծել իր աստծուն։

Ամեն մի կրոն, ինչպես ապացուցում է Ֆոյերբախը, կապված է մտավոր լճացման ու քարացածության հետ։ Կրոնը անխուսափելիորեն պասիվության ու անգործության է դատապարտում մարդուն։ Ինչպե՞ս կարող է մարդ բռնի կերպով փոխել շրջապատող աշխարհը, եթե կրոնի դրույթների համաձայն աստված այդ աշխարհը լավ ու իմաստուն կառուցվածքով է ստեղծել։ Ինչպե՞ս կարող է մարդն աստծո ստեղծումը ենթարկել իր մարդկային նպատակներին։ Ինչպե՞ս կարող է մարդն ամբարտակ բարձրացնել ջրի հոսանքի առջև, դրանով իսկ ռիսկ չանելով հերքել նախասահմանման կրոնական թեորիան։ Կրոնը չի կարող պրոգրեսի ու կուլտուրայի հակառակորդ չլինել։ Մինչդեռ մարդը չի կարող գոյություն ունենալ առանց առաջընթաց շարժման։

Կրոնը հակադրվում է կուլտուրային, գիտությանը, տեխնիկային։ Ֆոյերբախը շեշտում էր. քանի որ ժամանակակից կյանքում սովորական երևույթ է դարձել բանականության ու սնոտիապաշտության, քաղաքական ազատությունների ու կրոնական ստրկության, բնական գիտությունների ու արդյունաբերության առաջընթացի զուգահեռ գոյակցությունը, ապա ուրեմն դրանից այն եզրակացությունն են հանում, թե կրոնի գոյությունը բոլորովին անվնաս է պրակտիկ կյանքի համար։ Ֆոյերբախը բնավ էլ համաձայն չէ դրան։ Նա հայտարարում էր, որ մի գրոշ անգամ չէր տա այն քաղաքական ազատությանը, որի ժամանակ մնում են կրոնական նախապաշարումների ստրուկներ։ Իսկական ազատություն միայն այնտեղ կարող է լինել, որտեղ մարդը կրոնական տեսակետից ևս ազատ է։ Պետք է կրթությունն ու կուլտուրան իշխեն անբաժան կերպով։ Գիտություն ունեցող մարդը կրոնի կարիք չի զգում, ասում էր Ֆոյերբախը, վկայակոչելով Գյոթեին։ Այստեղից էլ փիլիսոփայի ծրագրային պահանջը, այն է՝ լուսավորել մարդուն, կրթություն տարածել բոլոր մարդկանց, բոլոր դասերի ու դասակարգերի մեջ։

Ֆոյերբախի այդ պահանջն իր պրոգրեսիվությամբ հանդերձ նաև նեղ-լուսավորչական բնույթ ունի։ Այդ հայացքը ուտոպիական է, որովհետև մարդկանց ազատության ու երջանկության բանալին նա տեսնում էր հասարակության բոլոր կարգերի խաղաղ կուլտուրական պրոգրեսի մեջ։

Ֆոյերբախը սուր քննադատության է ենթարկել կրոնական-իդեալիստական բարոյականությունը։ Նա նշել է, որ գերմանական փիլիսոփաները, առանձնապես Կանտը, ամեն կերպ ձգնել են բարոյականությունը անջատել մարդու երջանկության ձգտումներից։ Ասկետական, կեղծ, կրոնական բարոյականությանը Ֆոյերբախը հակադրում էր երջանկության հասնելու, իր պահանջմունքները բավարարելու հարցում մարդու ունեցած ձգտումների վրա հիմնված բարոյականությունը։ Ապացուցելով այդ բանը, նա, այնուամենայնիվ, հեռու էր բիրտ էգոիզմից։ Իսկական բարոյականությունը, ասում էր նա, ոչ մի մեկուսացած երջանկություն չի ճանաչում։

Բայց ինչպե՞ս հասնել մարդկանց անհատական ու հասարակական շահերի ներդաշնակության, պարտքի ու երջանկության ներդաշնակության։ Ֆոյերբախը, իհարկե, տեսնում էր, որ իր ժամանակակից հասարակությունը տրոհ-



ված է) տարբեր սոցիալական խմբերի, որ պայքար է տեղի ունենում դասակարգերի միջև, բայց և այնպես նա չկարողացավ ճիշտ բացատրել դրանք։ Նրա կարծիքով ճիշտ է այն բարոյականությունը, որը խարսխված է «ընդհանրապես» մարդկային բնության վրա, մարդկանց՝ իրար նկատմամբ տածած սիրո վրա, որ իրական կյանքի ամբողջ չարիքը կարելի է հաղթահարել իբր թե «սիրո բարոյականության» միջոցով, որը և նա ցանկանում էր «նոր» կրոնի աստիճանի բարձրացնել։

Ֆոյերբախի բարոյագիտությունն ամբողջապես վերացական է։ Նա բոլորովին կտրված է հասարակական կյանքի բարդ հակասություններից, դասակարգային պայքարից, պատմական պրոցեսից, որի բացատրության հարցում նա, ինչպես հայտնի է, իդեալիստ էր մնացել։ Ֆոյերբախի բարոյագիտությունը «ձևած է բոլոր ժամանակների համար, բոլոր ժողովուրդների համար, բոլոր կացությունների համար և հենց այս պատճառով երբեք նա կիրառելի չէ և ոչ մի տեղ» (Էնգելս, «Լ. Ֆոյերբախը...», Հայպետհրատ, 1954 թ., էջ 45)։

Ֆոյերբախը փայլուն ու համոզիչ կերպով ցույց տվեց կրոնական գերբնական աշխարհի մարդկային հիմքը։ Կրոնական ֆանտաստիկայի աղբյուրը երկնքից տեղափոխելով երկիր, անմիջականորեն մարդկանց կյանքի մեջ, Ֆոյերբախը դրանով իսկ նախադրյալ ստեղծեց կրոնի հիրավի գիտական մատերիալիստական քննադատության համար, որ առաջին անգամ կատարեց մարքսիզմը։

Ֆոյերբախը սահմանափակվում էր կրոնի իմացաբանական հիմունքների բացահայտումով, այդպիսիք մեկնաբանելով գլխավորապես անթրոպոլոգիական տեսակետից։ «Բայց մարդը,— գրում էր երիտասարդ Մարքսը,— աշխարհից դուրս ինչ-որ տեղում պատսպարված վերացական էակ չէ։ Մարդը մարդու աշխարհն է, պետությունն է, հասարակությունը։ Այդ պետությունը, այդ հասարակությունն են ծնում կրոնը՝ խեղաթյուրված այդ աշխարհայացքը, քանի որ դրանք իրենք խեղաթյուրված աշխարհ են» (Երկեր, հ. 1, էջ 414. ռուս.)։ Ուստի և Մարքսը գտնում էր, որ կրոնի դեմ հաջող պայքար մղելու համար անհրաժեշտ է լիովին ոչնչացնել ու հաղթահարել այն ծնող սոցիալ-դասակարգային պայմանները։ Դրական մեծ նշանակություն տալով կրոնի ֆոյերբախյան քննադատությանը՝ Մարքսը միաժամանակ կոչ էր անում ավելի առաջ գնալ և «երկնքի» քննադատությունը վերածել «երկրի» քննադատության, «կրոնի» քննադատությունը՝ «իրավունքի» քննադատության, «աստվածաբանության» քննադատությունը՝ «քաղաքականության» քննադատության։

Սա արդեն բոլորովին նոր հայացք էր, մի իսկական հեղաշրջում ո՛չ միայն կրոնի, նրա պատճառների ըմբռնման հարցում, այլև ամբողջությամբ վերցրած, բոլոր հասարակական երևույթների բացատրման հարցում։

## 6.

Լ. Ֆոյերբախը 19-րդ դարի 40-ական թվականների ռևոլյուցիոն իրադրության շրջանում եղել է ռադիկալ գերմանական բուրժուազիայի իդեոլոգը։ Նա հանդես էր գալիս հասարակության դեմոկրատական նորոգման օգտին, իր մատերիալիստական փիլիսոփայությունն օգտագործելով որպես զենք ընդդեմ ֆեոդալական հոգևոր սիստեմի։

Ֆոյերբախը խոշոր դեր է խաղացել, ամենից առաջ, իր ժողովրդի հոգևոր
զարգացման ասպարեզում: Նա խիզախ պայքար էր մղում Գերմանիայում դա-
րերի ընթացքում տիրապետող կրոնական-աստվածաբանական ու իդեալիստա-
կան իդեոլոգիայի դեմ: Մինչև այժմ էլ չի կորցրել իր նշանակությունը Ֆոյեր-
բախի պայքարն այն ժամանակվա գերմանական իրականության մութ կողմե-
րի դեմ, դեսպոտիզմի ու բիրտ ուժի հանդեպ Գերմանիայի ունևոր դասակար-
գերի ցուցաբերած ստրկամտության, նրանց կեղծ բարեպաշտության, երես-
պաշտության ու խավարամտության դեմ, նրա պայքարը հանուն սոցիալական
պրոգրեսի ու լուսավորության, հանուն առաջավոր մատերիալիստական աշ-
խարհայացքի:

Ֆոյերբախը միայն Գերմանիայի մտավոր կյանքում չէ խոր հետքեր թո-
ղել. նրա մատերիալիստական փիլիսոփայությունը մեծ համակրանքով ընկա-
լեցին նաև մյուս ժողովուրդների առաջավոր ներկայացուցիչները:

Ֆոյերբախի ազդեցությունը շատ բազմազան ու բեղմնավոր եղավ նաև
Ռուսաստանում: Անցյալ դարի 30-ական թվականներին, երբ Ֆոյերբախը նոր
էր միայն սկսում գրել իր մատերիալիստական երկերը, նրա մասին ջերմ ար-
տահայտվեց երիտասարդ հասակում մեռած ռուս լուսավորիչ Նիկոլայ Ստան-
կևիչը: 40-ական թվականներին Ֆոյերբախն զգալի ազդեցություն ունեցավ
Բելինսկու, Գերցենի, Օգարյովի վրա: Ռուսական ռևոլյուցիոն մտքի վրա Ֆո-
յերբախի թողած ազդեցությունն է՛լ ավելի ուժեղացավ 60-ական թվականնե-
րին, հանձին Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի և Անտոնովիչի:

Ֆոյերբախը մեծ ազդեցություն է ունեցել նաև Միքայել Նալբանդյանի
փիլիսոփայական հայացքների ձևավորման վրա:

Սակայն Ֆոյերբախի ստեղծած մատերիալիստական փիլիսոփայության
պատմական նշանակությունը բնորոշվում է ամենից առաջ այն բանով, որ այդ
փիլիսոփայությունը եղել է մարքսիզմի մեծ ուսմունքի թեորիական աղբյուր-
ներից մեկը: Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները իդեալիստական փիլիսոփա-
յության դեմ մղած իրենց պայքարում հաճախ հիշատակում էին նաև Ֆոյեր-
բախի մատերիալիստական փաստարկումները: Լենինն ընդգծում էր, որ Ֆո-
յերբախը բնության օբյեկտիվ գոյության վերաբերյալ իր ասույթներով հերքում
է սուբյեկտիվ իդեալիստ Ավենարիուսի սոֆիզմը՝ «չգիտենալով «նորագույն
պոզիտիվիզմը», բայց լավ գիտենալով իդեալիստական հին սոֆիզմները» (Եր-
կեր, հ. 14, էջ 90):

Ֆոյերբախի մատերիալիստական ուսմունքը այժմ ևս օգտագործվում է
հասարակության առաջավոր ուժերի կողմից այն պայքարում, որ նրանք մղում
են ընդդեմ ժամանակակից հոգևոր ռեակցիայի, հանուն կուլտուրայի, հանուն
պրոգրեսի:

---

# ԲԱՐԵԼԱՎԵԼ ՊԱՐՏԻԱՅԻ ԱՐԹԻԿԻ ՇՐՋԿՈՄԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՃԸ

Ս. ԻՍԿԱՆԴԱՐՅԱՆ

Այժմ, ավելի քան երբևէ, բարձրացել է պարտիայի գյուղական շրջանա-
յին կոմիտեների դերն ու պատասխանատվությունը՝ գյուղատնտեսության բո-
լոր ճյուղերի շեշտակի վերելքն ապահովելու, մթերքների առատություն ստեղ-
ծելու գործում:

Պարտիայի շրջանային կոմիտեն, նրա բյուրոն պետք է խորապես գիտե-
նան ո՛չ միայն իրենց շրջանի, այլև յուրաքանչյուր կոլտնտեսության, բրիգա-
դայի և անասնապահական ֆերմայի էկոնոմիկան, սահմանեն նրա զարգաց-
ման կոնկրետ հեռանկարները և քաղաքական ու կազմակերպական աշխա-
տանքի միջոցով ապահովեն կոլտնտեսությունների առջև դրված խնդիրների
լուծումը: Եթե այս առումով նայենք պարտիայի Արթիկի շրջկոմի և նրա
բյուրոյի գործունեությանը, ապա կտեսնենք, որ նրանց աշխատանքում կան
մի շարք լուրջ թերություններ: Սկսենք կադրերի ընտրությունից ու դաստիա-
րակությունից:

Հայտնի է, որ կադրերի ճիշտ ընտրությունը տնտեսական հաջողություն-
ների երաշխիքն է: Սակայն կադրերը ճիշտ ընտրելուց հետո անհրաժեշտ է
նաև նրանց հետ աշխատել, բարձրացնել նրանց մեջ պարտիական ու պե-
տական պատասխանատվության զգացումը, վերահսկել նրանց աշխատանքը,
ժամանակին ուղղել թույլ տված սխալները: Կադրերի դաստիարակու-
թյան գործում կարևոր նշանակություն ունի ղեկավար ընկերների պահանջ-
կոտությունը ինչպես իրենց, այնպես էլ իրենց ենթակա աշխատողների նկատ-
մամբ: Միշտ պետք է հիշել, որ կադրերի դաստիարակության հիմնական մի-
ջոցներից մեկն էլ ղեկավար ընկերոջ անձնական օրինակն է:

Արթիկի շրջանային կոմիտեի բյուրոն անտեսել է այս բոլորը և վերջին
տարիներս կադրերի ընտրության, տեղադրման ու դաստիարակության գոր-
ծում թույլ է տվել լենինյան նորմերի կոպիտ խախտում: Այստեղ կադրերն
ընտրված էին ոչ գործիմացության, այլ շրջանի ղեկավարներին մոտ լինե-
լու և անձնական նվիրվածություն ցուցաբերելու սկզբունքով:

Բերենք բազմաթիվ օրինակներից միայն մի քանիսը: Արթիկի շրջկենտ-
րոնի կոլտնտեսության նախագահ Վ. Ցռանդյանը 1956 թվականի սկզբներին
պարտշրջկոմի բյուրոյի որոշմամբ աշխատանքից հանվեց այն բանի համար,
որ նա ձախողել էր կոլտնտեսային աշխատանքները, կոլտնտեսությունում
թույլ էր տվել մեծ թվով անասունների անկման, գողության, հանրային
ունեցվածքի հափշտակման ու շռայլման դեպքեր: Սակայն կարճ ժամանակից
հետո շրջանային կոմիտեի քարտուղար ընկ. Տ. Վարդանյանի օգնությամբ ու

միջամտությամբ Վ. Ֆռանգյանը, հակառակ կոմունիստների մի մասի ցանկության, ընտրվում է Արթիկի ՄՏ կայանի սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոյի ազատված քարտուղար: Որպես քարտուղար նա մինչև օրս շրջանային կոմիտեի բյուրոյի կողմից չի հաստատվել, բայց շարունակում է աշխատել:

Լեռնակերտ գյուղի կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայի վարիչ է հաստատվել (այն էլ համատեղության կարգով) դպրոցի ֆիզմաթի դասատու Ե. Հովհաննիսյանը, որն անասնաբուծության տարրական հարցերի մասին պատկերացում չունի:

Արթիկի ՄՏ կայանի գոտում մոտ երկու և կես տարվա ընթացքում փոխվել են պարտշրջկոմի 6 հրահանգիչ, իսկ Մանթաշի ՄՏ կայանի գոտում՝ 10 հրահանգիչ, որոնցից յուրաքանչյուրն աշխատել է ընդամենը 1—8 ամիս, ըստ որում Ռափյանը և Փթուկյանը հրահանգիչ են նշանակվել ու հետո աշխատանքից ազատվել միմիայն շրջկոմի քարտուղար ընկ. Տ. Վարդանյանի կամքով:

Նորաշեն գյուղի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունը բաղկացած է 16 կոմունիստից: Նրանցից յուրաքանչյուրը վերջին երկու տարում 1—2 անգամ արդեն վարել է գյուղի բոլոր պաշտոնները:

Այս բոլորից հետո հասկանալի է դառնում, թե ինչու վերջին երկու և կես տարում շրջանում փոխվել են անասնապահական ֆերմաների վարիչների 30 տոկոսը, դաշտավարական բրիգադների բրիգադավարների 37 տոկոսը, կոլտնտեսության նախագահների 36 տոկոսը և սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների 86 տոկոսը:

Արթիկի շրջանային կոմիտեի ղեկավար ընկերները մոռացության են տվել պարտիայի Կանոնադրության այն պահանջը, թե պետք է «պարտիայի հանձնարարած ամեն մի պոստում անշեղորեն կիրառել պարտիայի ցուցումները կադրերն ըստ նրանց քաղաքական ու գործնական հատկանիշների ճիշտ ընտրելու վերաբերյալ: Այս ցուցումների խախտումը, աշխատողներին ըստ մտերմական հարաբերությունների, անձնական նվիրվածության, հայրենակցության և ազգակցության հատկանիշների ընտրելը անհամատեղելի է պարտիայի մեջ գտնվելու հետ»:

Պարտիայի շրջանային կոմիտեն քիչ աշխատանք է կատարել կոմունիստներին հենց այդ ոգով դաստիարակելու, կադրերի ընտրության գործը բարելավելու ուղղությամբ: Կադրերի ընտրության գործում շրջկոմի ցուցաբերած ոչ պարտիական մոտեցումը հասցրել է այն բանին, որ բազմաթիվ կադրեր տապալել են գործը և պարտիական պատասխանատվության կանչվել: Բավական է ասել, որ պարտիական և պետական կարգապահությունը խախտելու, վերադաս օրգանների որոշումները չկատարելու և այլ հանցանքների ու զանցանքների համար շրջանային կոմիտեի բյուրոն վերջին երեք տարվա ընթացքում պարտիական տույժի է ենթարկել 173 կոմունիստի, որից 30-ը հեռացվել են պարտիայի շարքերից:

Շրջանի պարտիական կազմակերպությունը չի հասել այն բանին, որ կոլտնտեսային որոշ ղեկավարներ, և առաջին հերթին կոմունիստներ, գիտակցեն իրենց սխալները և գործնական աշխատանքում բարելավեն կադրերի ընտրության ու դաստիարակության գործը: Դրա հետևանքով էլ շրջանում զգալի թվով կոմունիստներ փոխանակ տնտեսության վճռական տեղամասերում, բուն արտադրության մեջ աշխատելու, ջանում են «համապատասխան» պաշտոն գտնել: Այլապես ինչո՞վ բացատրել, որ շրջանի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպություններում հաշվառման մեջ եղած 709 կոմունիստներից կոլտնտեսություններում շարքային աշխատանք են կատարում միայն 349-ը: Իսկ Գետափ, Արևշատ, Փոքր ու Մեծ Մանթաշ, Նորաշեն, Լեռնակերտ գյուղերի կոլտնտեսությունների ամեն մի պարտկազմակերպությունում կան 16—44 կոմունիստ, որոնցից և ոչ մեկը կաթնապրանքային ֆերմաներում շարքային աշխատանք չի կատարում:



Կոլտնտեսության անասնապահական ֆերման, դաշտավարական բրիգադան այն օղակներն են, որտեղ անմիջականորեն աշխատում են նյութական բարիքներ ստեղծող մարդիկ, հենց այդտեղ էլ որոշվում է արտադրության և պետական առաջադրանքների կատարման բախտը: Այդ գործում մեծ դեր է պատկանում պարտիական խմբերին, որոնք անմիջականորեն գործում են մասսայի մեջ, մոտ են կանգնած արտադրությանը: Հետևապես, եթե նրանք լավ են աշխատում, կարող են ապահովել պարտիայի որոշումների հաջող և պրակտիկ կենսագործումը: Չնայած դրան, պարտիայի Արթիկի շրջանային կոմիտեն և կոլտնտեսային սկզբնական կազմակերպություններն անբավարար են զբաղվում պարտիական խմբերի կազմակերպման և ղեկավարման գործով: Բավական է նշել, որ շրջանում եղած 63 անասնապահական և 93 դաշտավարական բրիգադներից միայն 18-ում են պարտիական խմբեր կազմակերպված:

Պարտիական կազմակերպական աշխատանքում իր կարևոր տեղն է գրավում որոշումների կատարման ստուգումը: Կատարման ճիշտ ստուգման կազմակերպումը ղեկավար աշխատողների մեջ դաստիարակում է իրենց և ուրիշների նկատմամբ բարձր պահանջկոտություն, բարձրացնում է պատասխանատվության զգացումը գործի նկատմամբ, ամրապնդում է պարտիական, պետական և աշխատանքային կարգապահությունը: Երբ աշխատողները գիտեն, որ պարտիայի և կառավարության դիրեկտիվների որևէ խախտում չի վրիպի ուշադրությունից, որ մարդկանց գնահատելու են ոչ թե նրանց հայտարարություններով և խոստումներով, այլ նրանց աշխատանքի կոնկրետ արդյունքով, այդ դեպքում կատարման ստուգումը կծառայի իր նպատակին:

ՀԿՊ Արթիկի շրջանային կոմիտեի բյուրոն բազմիցս քննության է առել գյուղատնտեսության զարգացման հարցերը և որոշումներ ընդունել: Սակայն շրջանի տնտեսական և քաղաքական աշխատանքի ներկա վիճակը վկայում է, որ շրջկոմի բյուրոն որոշումներ ընդունելուց բացի այն կողմ չի գնացել: Այսպես, օրինակ, շրջկոմի բյուրոն 1956 թվականի ապրիլի 27-ին քննության է առել Նորաշեն, Գեղանիստ և Լեռնակերտ գյուղերի կոլտնտեսությունների տնտեսապես ետ մնալու հարցը և յուրաքանչյուր կոլտնտեսության համար ընդունել ընդարձակ որոշումներ: Այդ որոշումներից անցել է ավելի քան մեկ տարի, բայց ոչ շրջկոմի քարտուղարները և ոչ էլ բաժինները չեն հետաքրքրվել այդ որոշումների կատարման ընթացքով:

Այսպես, Նորաշենի կոլտնտեսության մասին ընդունված որոշմամբ նախատեսված է ընթացիկ տարում կառուցել մեկ խոզանոց՝ 109 գլխի համար, մեկ թռչնանոց՝ 500 հավի համար և սիլոսի խրամատներ՝ 300 տոննա տարողությամբ: Սակայն դրանցից և ոչ մեկը չի կառուցված: Բացի այդ, նույն որոշմամբ կոլտնտեսության վարչության ու Մանթաշի ՄՏ կայանի դիրեկ-

ցիայի վրա պարտավորություն է դրված գործնական միջոցներ ձեռնարկել կոլտնտեսությունում աշխատանքային կարգապահությունը բարձրացնելու համար։ Բայց որոշումից հետո կոլտնտեսությունում աշխօրերի պարտադիր մինիմումը չկատարող կոլտնտեսականների թիվը ո՛չ միայն չի պակասել, այլև 53 հոգով ավելացել է։

Լենինակերտի կոլտնտեսության մասին ընդունված որոշմամբ նախատեսված էր մինչև մայիսի 10-ը լրիվ ավարտել 200 հեկտար աշնանացանի և 160 հեկտար կորնգանի ցանքատարածությունների սնուցման, վաղ գարնան փոցխման և քարհավաքի աշխատանքները։ Սակայն սրանցից ոչ մեկը չի կատարված։ Չեն կատարված նաև նույն որոշման մի շարք այլ կետեր։

ՄՏ կայանների գոտիներում շրջկոմի հրահանգչական խմբերի ամբողջ գործունեության մեջ գլխավորը եղել ու մնում է պարտիական-կազմակերպական, պարտիական-քաղաքական աշխատանքը։ Անհրաժեշտ է, որ հրահանգչական խմբերը մոտիկից ուսումնասիրեն յուրաքանչյուր կոլտնտեսության էկոնոմիկան, առաջավոր բրիգադների, անասնապահական ֆերմաների, օղակների ու կոլտնտեսականների աշխատանքի փորձը, կոնկրետ միջոցներով այն ամենուրեք արմատավորեն և այդպիսով ետ մնացողներին հասցնեն առաջավորների մակարդակին։

ՄՏ կայանների գոտիներում պարտիայի շրջկոմների հրահանգչական խմբերի ստեղծումից անցել է ավելի քան երեք ու կես տարի և տնտեսության ղեկավարման բնագավառում շատ հրահանգչական խմբեր ձեռք են բերել մեծ փորձ։ Բայց այդ չի կարելի ասել Արթիկի շրջկոմի հրահանգչական խմբերի մասին։

Պարտշրջկոմի Մանթաշի և Արթիկի ՄՏ կայանների գոտիների հրահանգչական խմբերը շարունակում են աշխատել հին, պարտիայի կողմից վաղուց դատապարտված մեթոդներով։ Նրանք իրենց ամբողջ գործունեությունը հաճախ սահմանափակում են կոլտնտեսությունից-կոլտնտեսություն թեթևակի շրջագայություններով, հարցափորձով և որոշ տեղեկություններ հավաքելով։ Հրահանգիչները և նրանց ղեկավարող շրջկոմի քարտուղարները խիստ անբավարար են աշխատում սկզբնական պարտիական կազմակերպությունների հետ, չեն հենվում նրանց վրա, չեն բարձրացնում նրանց դերն ու պատասխանատվությունը կոլտնտեսային արտադրության ղեկավարման գործում։ Այդ խմբերը դաստիարակչական լուրջ աշխատանք չեն կազմակերպում կոլտնտեսության կադրերի, կոմունիստների և կոլտնտեսականների հետ։

Սկզբնական պարտիական կազմակերպություններում թույլ է ծավալված գործարար քննադատությունը և ինքնաքննադատությունը, շատ կոմունիստներ իրենց հասցեին արված քննադատական ճիշտ դիտողություններն ընդունում են հիվանդագին և զբաղվում են անսկզբունք պայքարով։

Ջնայած կոլտնտեսությունների և առանձին օղակների միջև սոցիալիստական մրցության պայմանագրեր են կնքված, սակայն դրանք ձևական բնույթ են կրում. ժամանակին չեն կազմակերպվում պայմանագրերի կատարման փոխադարձ ստուգումներ, մրցման մեջ շահողները պատշաճ կերպով չեն խրախուսվում, մրցության հիմքում չի դրված կոլտնտեսային արտադրության ներքին ռեզերվների հայտաբերումը և օգտագործումը, աշխատանքի առաջավոր մեթոդների ուսումնասիրումը և արմատավորումը, գյուղատնտեսական բոլոր ճյուղերի բերքատվության և մթերատվության բարձրացումը։



Կոլտնտեսություններում տարվող քաղաքական-մասսայական անբավարար աշխատանքով է բացատրվում այն, որ տարեցտարի մեծանում է կոլտնտեսություններում չաշխատող և աշխօրերի մինիմումը չկատարող աշխատունակ կոլտնտեսականների թիվը։ Եթե 1953 թվականին 9799 աշխատունակ կոլտնտեսականներից պարտադիր աշխօրերի մինիմումը չեն կատարել և ոչ մի աշխօր չեն վաստակել 3030 հոգի, ապա 1956 թվականին դրանց թիվը հասնում է 3388 հոգու, որոնցից ոչ մի աշխօր չեն վաստակել 1978 հոգի։

Մեր պարտիայի ուժը մասսաների ակտիվության և ինքնագործունեության մեջ է։ Այս գործում որքան բարձր լինի սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքի մակարդակը, այնքան հաջողությամբ կլուծվեն տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրները։

Մասսաների հետ կապի միջոցներից մեկը պարտիական պրոպագանդան ու ագիտացիան է, որը սերտորեն պետք է կապված լինի կոմունիստական շինարարության հետ, օգնի տվյալ կոլտնտեսության, բրիգադայի, անասնապահական ֆերմայի և օղակի առջև դրված խնդիրների կատարմանը, նպաստի նյութական բարիքների արտադրության ավելացմանը։ Պարտիական ղեկավարման արվեստի բնորոշ առանձնահատկությունը, նրա էությունը կենդանի և գործարար ղեկավարության մեջ է։ Կենդանի ղեկավարման մեթոդը հիմնված է կյանքի խոր ճանաչողության վրա, մասսաների հետ պարտիական ղեկավարների անմիջական շփման վրա։ Մինչդեռ Արթիկի շրջանի ղեկավար ընկերները իրենք անձամբ չեն զբաղվում կոլտնտեսային կադրերի և աշխատավորության կոմունիստական դաստիարակության հարցերով։ Այդ կարևոր աշխատանքը վստահված է միայն գյուղական աշխատողներին։ Պարտիայի շրջանային կոմիտեի զեկուցողների խմբի 45 անդամներից և ոչ մեկը շրջանի պարտիական-սովետական ղեկավար աշխատող չէ։ Որպես կանոն շրջանի ղեկավարները դեպքից-դեպք են ելույթ ունենում աշխատավորության շրջանում, իսկ Հոռոմ, Լեռնակերտ, Գեղաձոր, Նորաշեն և այլ գյուղերում մեկ տարվա ընթացքում շրջանի ղեկավարներից ոչ մեկը հանդես չի եկել քաղաքական զեկուցումով։

Մասսաների մեջ քաղաքական-դաստիարակչական աշխատանքի նկատմամբ նման վերաբերմունքը իր արտահայտությունն է գտել պրոպագանդիստական կադրերի և ագիտատորների ընտրության և նրանց հետ կատարվող աշխատանքում։ Փ. Պարնիի յոթնամյա դպրոցի դիրեկտոր Հ. Ջնդոյանը նույն գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպության կողմից նշանակված էր պրոպագանդիստ, սակայն նա չգիտեր, թե ինչպիսի խնդիրներ են դրված կոլտնտեսության առջև և նա ինչի համար է պայքարում 1957 թվականին։ Այստեղ ագիտատորների միջոցով աշխատավորության շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը առարկայազուրկ է, կտրված է կյանքից, կոլտնտեսությունների խնդիրներից։

Տնտեսական հաջողությունները կախված են պարտիական-կազմակերպական, պարտիական-քաղաքական աշխատանքը տնտեսական խնդիրների հետ ճիշտ զուգակցումից։ Այդ զուգակցման բացակայությունը Արթիկի շրջանի պարտիական կազմակերպությանը հասցրել է այն բանին, որ շրջանը տարեցտարի որոշ ճյուղերում տնտեսապես հետադիմում է։

Անհեթեթ է շրջանի ղեկավարների այն միտումը, որ կրճատելով գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները և անասունների

գլխաքանակը, կարող են բարձրացնել եղած տարածությունների բերքատվությունը և անասնաբուծության մթերքների արտադրությունը։ Տարվելով այս վնասակար մտայնությամբ՝ նրանք տարեցտարի կրճատել են ցանքատարածությունները, անասունների գլխաքանակը և դրա հետ միասին աչքաթող արել բերքատվությունը և անասնաբուծության մթերատվության բարձրացումը։ Ահա թե ինչու հացահատիկային կուլտուրաների համախառն արտադրանքը 1956 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, իջել է 51,1 հազար ցենտներով, նույն ժամանակաշրջանում մեկ հեկտարի բերքատվությունը իջել է. հացահատիկինը՝ 2,4 ցենտներով, կարտոֆիլինը՝ 9,1 ցենտներով, շաքարի ճակնդեղինը՝ 26,6 ցենտներով և այլն։

Գյուղատնտեսական կուլտուրաների ցածր բերքատվությունը հետևանք է այն բանի, որ ցանքը կատարվում է ո՛չ սահմանված ժամկետներին, անորակ և չեն ստեղծվում լիարժեք հեկտարներ։ Վատ է կատարվում նաև ցանքերի մշակումը և սնուցումը։ Բավական է նշել, որ վերջին տարիներին պլանով նախատեսված տեղական և հանքային պարարտանյութի միայն 20—30 տոկոսն է օգտագործված։ Գյուղատնտեսական աշխատանքներում ներդրված չեն այնպիսի պրոգրեսիվ ձևեր, ինչպիսիք են նեղշար և խաչաձև ցանքը։

Հացահատիկային տնտեսության և մյուս կուլտուրաների այսպիսի վիճակը իր խիստ բացասական հետևանքն է թողել անասնաբուծության զարգացման և նրա մթերատվության բարձրացման վրա։ 1956 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների թիվը պակասել է 1600 գլխով, մանրինը՝ 2400 գլխով, խոզերինը՝ 500 գլխով, հավերինը՝ 3200 թևով։ 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, շրջանում պակաս են ստացել միս՝ 958 ցենտներ, կաթ՝ 895 ցենտներ և ձու՝ 15 000 հատ։

Շրջանում գյուղատնտեսության այդպիսի ետ մնալը չի անհանգստացրել պարտիայի շրջանային կոմիտեի, շրջսովետի գործկոմի և ՄՏ կայանների ղեկավարներին, որոնք տնտեսության ղեկավարման գործում թույլ են տվել լուրջ սխալներ։

Շրջանային կոմիտեի և շրջսովետի գործկոմի հիմնական և կոպիտ սխալներից մեկն էլ այն է, որ պարտիական կազմակերպություններին և կոլտնտեսություններին ճիշտ չեն կողմնորոշել նրանց գործունեության մեջ, որ պլանավորման հիմքում դրվել են ոչ թե կոլտնտեսությունների և ամբողջությամբ վերցրած շրջանի ռեալ հնարավորությունները, այլ նախորդ տարիների ոչնչով չարդարացված ցածր ցուցանիշները, որի հետևանքով արմատացել է տարեկան արտադրական պլանների սիստեմատիկ իջեցման արատավոր ոճը։

Պլանավորման այս սխալ պրակտիկան փոխանցվել է նաև ներքին օղակները։ Փարոս գյուղի կոլտնտեսությունը 100 հեկտար հողային տարածության դիմաց ստացվող կաթի և բրդի արտադրությունը պլանավորել է հետևյալ կերպ. կաթ 1955 թվականին պլանավորել է 98,8 ցենտներ, ստացել է 114,3, մինչդեռ 1956 թվականին պլանավորել է 105,8 ցենտներ, փաստացի ստացել է 124 ցենտներ, բուրդ—1955 թվականին պլանավորված 243,6 կիլոգրամի դիմաց ստացել է 419 կիլոգրամ, մինչդեռ 1956 թվականին պլանավորել է 243 կիլոգրամ, իսկ փաստացի ստացել է 461 կիլոգրամ։

Արևշատի «Նոր կյանք կառուցող» կոլտնտեսության 1956 թվականի հոկտեմբերի 7-ի ընդհանուր ժողովում, ուր քննության է առնվել գյուղատնտեսական աշխատանքների պլանավորման հարցը, առանց տնտեսական հաշ-



վարկի որոշել են բանջարանոցային կուլտուրան, պտղատու այգին, խոզաբուծությունը և մեղվաբուծությունը հանել պլանավորումից և լիկվիդացնել այդ ճյուղերը։ Որոշման մեջ անհիմն կերպով նշված է, թե իբր այդ ճյուղերն իրենց չեն արդարացնում։

Արթիկի պարտիական և սովետական կազմակերպությունների ղեկավար ընկերները շատ են լինում կոլտնտեսություններում, բայց դա անհրաժեշտ արդյունք չի տալիս, որովհետև նրանք խոր չեն թափանցում կոլտնտեսությունների էկոնոմիկայի մեջ և անտեսում են տնտեսության ղեկավարման գլխավոր նախապայմանը՝ հաշվարկը։ Միայն սրանով պետք է բացատրել այն դատապարտելի փաստը, որ շրջանում խոզաբուծությունը, մեղվաբուծությունը և, մանավանդ, թռչնաբուծությունը գրեթե լիկվիդացվել են։

ՀԿՊ Կենտկոմի բյուրոն վերջերս քննության առավ Արթիկի շրջանային կոմիտեի և շրջսովետի գործկոմի կողմից գյուղատնտեսությունը ղեկավարելու հարցը։ Կենտկոմի բյուրոն Արթիկի շրջկոմի քարտուղար ընկ. Տ. Վարդանյանին՝ աշխատանքները չգլխավորելու ու ձախողելու համար հանեց աշխատանքից և ձեռնարկեց կազմակերպական մի շարք միջոցառումներ, որից Արթիկի շրջանային պարտիական կազմակերպությունը լուրջ եզրակացություն պետք է հանի և արմատապես բարելավի գյուղատնտեսության ղեկավարման գործը։

Անվիճելի է, որ Արթիկի շրջանում տեղ գտած այս թերությունները ավելի կամ պակաս չափով գոյություն ունեն նաև մեր ռեսպուբլիկայի մի շարք այլ շրջաններում։ Մնում է, որ այդ շրջանների պարտիական կազմակերպությունները նույնպես լուրջ եզրակացություններ հանեն և միջոցներ ձեռնարկեն իրենց աշխատանքում եղած թերությունները վերացնելու համար։

Արթիկի շրջանում բոլոր հնարավորությունները կան մոտակա ժամանակաշրջանում բարձրացնելու գյուղատնտեսությունը և կենսագործելու պարտիայի կողմից առաջադրված խնդիրը՝ մոտակա տարիներում մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրության գործում հասնել ԱՄՆ-ին։ Դրա համար անհրաժեշտ է արմատապես հաղթահարել գյուղատնտեսության ղեկավարման գործում պարտիայի շրջանային կոմիտեի և շրջսովետի գործկոմի կողմից թույլ տրված սխալներն ու թերությունները, բարձրացնել յուրաքանչյուր կոմունիստի և շրջանի ամբողջ պարտիական կազմակերպության պատասխանատվությունը, մոբիլիզացնել ողջ աշխատավորության ուժերը՝ պատվով կատարելու համար պարտիայի և կառավարության դիրեկտիվները։

# ԱՌԱՎԵԼ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆԸ

Հ. ՔՈԹԱՆՋՅԱՆ

Երևանի պարտիական կազմակերպությունն անշեղորեն կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները և «Պարտիական լուսավորության սիստեմի ուսումնական տարվա արդյունքների ու նոր ուսումնական տարում պարտիական կազմակերպությունների խնդիրների մասին» մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1956 թվականի օգոստոսի 21-ի որոշումը, վերակառուցեց կոմունիստների քաղաքական ուսուցման գործը։ 1956—57 թթ. ուսումնական տարում գլխավոր ուշադրությունը կենտրոնացվեց պարտիական լուսավորության ցանցում ուսման մակարդակն է՛լ ավելի բարձրացնելու և կյանքից, տնտեսական ու կուլտուրական շինարարության գործնական խնդիրներից պրոպագանդայի կտրվածությունը հաղթահարելու վրա։

Կատարված աշխատանքի արդյունքները ցույց են տալիս, որ քաղաքի պարտիական կազմակերպությունները նախորդ տարիների համեմատությամբ զգալիորեն բարելավել են քաղաքական լուսավորության ղեկավարումը, մեծ չափով աճել է կոմունիստների և անկուսակցական աշխատավորների հետաքրքրությունը մարքս-լենինյան տեսության, պարտիայի ու կառավարության որոշումների, Սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության հարցերի ուսումնասիրության ասպարեզում։

Մեծ թափ ու ծավալ ստացավ կադրերի տնտեսագիտական ուսուցումը։ Կադրերի տնտեսագիտական կրթությունը կազմակերպելու գործում դրական փորձ են կուտակել Կիրովի անվան, Էլեկտրալամպերի, Ալյումինի, Վերանորոգման, Հայէլեկտրո գործարանների, Տրամվայ-տրոլեյբուսի վարչության, Գյուղատնտեսության մինիստրության և բազմաթիվ այլ հիմնարկ-ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները։

Այդ պարտկազմակերպություններին կից ստեղծված խմբակներում ու սեմինարներում ընդգրկված կոմունիստները խնամքով ուսումնասիրել են մարքսիստական-լենինյան տնտեսագիտությունը, կոնկրետ էկոնոմիկան, ինչպես նաև արտադրության կազմակերպման տարբեր հարցերը։

Հաջող է գործել Տրամվայ-տրոլեյբուսի վարչության պարտկազմակերպության կոնկրետ էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրող կոմունիստների սեմինարը, որտեղ ընդգրկված էր 33 մարդ՝ գլխավորապես ինժեներա-տեխնիկական անձնակազմից։ Սեմինարի ղեկավարն էր գլխավոր ինժեներ ընկ. Ա. Միրզոյանը։

Ուսումնական տարվա ընթացքում այստեղ ուսումնասիրել են հետևյալ կարևոր հարցերը. էլեկտրատրանսպորտի զարգացումը վեցերորդ հնգամյակում, տեխնիկական պրոգրեսի ուղիները տրանսպորտում, տնտհաշվարկի կազմակերպումը և այլն։ Սեմինար պարապմունքների ժամանակ զեկուցումներով ու ռեֆերատներով հանդես են եկել աշխատանքի և աշխատավարձի բաժնի պետ Ա. Կարապետյանը, գլխավոր հաշվապահ ընկ. Ս. Հարությունյանը, վագոնանորոգման դեպոյի պետ Գ. Բաղալյանը և ուրիշներ։



Սեմինարի մասնակիցները չսահմանափակվելով դասախոսություններ լսելով, կարդացել են նաև հանձնարարվող գրականությունը, խնամքով ուսումնասիրելով առանձին ցեխերի ու տեղամասերի վիճակն ու էկոնոմիկան։ Սեմինար պարապմունքներին նախապատրաստվելիս և այդ պարապմունքների ժամանակ աշխատանքի արտադրողականության հարցերն ուսումնասիրելիս ունկնդիրները մի շարք թերություններ բացահայտեցին այդ բնագավառում և իրենց առաջարկներն արին։ Նրանց առաջարկները քննության առնվեցին պարտբյուրոյում, որտեղ կոնկրետ միջոցառումներ նշվեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղղությամբ։ Սեմինար պարապմունքները նպաստեցին ռացիոնալիզատորական մտքի զարգացմանը, տեխնիկայի լավ տիրապետմանը և աշխատանքի կազմակերպմանը։ Բավական է ասել, որ սեմինարի մասնակիցները միայն 1957 թվականի հինգ ամսում արել են 19 ռացիոնալիզատորական առաջարկություն։

Ուսումնական տարվա սկզբից իր պարապմունքները կանոնավոր սկսեց Հայէլեկտրո գործարանի արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակը, որտեղ ընդգրկված էին ցեխերի պետերը, վարպետները և առաջավոր բանվորները։ Պրոպագանդիստ Ա. Եփրեմյանը խնամքով նախապատրաստվում էր յուրաքանչյուր պարապմունքին։ Տարվա ընթացքում խմբակում ուսումնասիրել են հետևյալ թեմաները. «Արդյունաբերական ձեռնարկությունների կառավարումը», «Աշխատանքի արտադրողականության բարձրացումը», «Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման օրենքները», «Արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիները» և այլն։ Ուսումնասիրված նյութերի ամփոփմանը նվիրված վերջին պարապմունքների ժամանակ պրոպագանդիստն ունկնդիրների ուշադրությունը հրավիրեց «Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի բարելավելու մասին» ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայի ընդունած օրենքի վրա, հանգամանորեն ցույց տալով այն նշանակությունը, որ ունի այդ օրենքը ժողովրդական տնտեսության հետագա զարգացման համար։

Ձեթ-օճառ կոմբինատում գործող կոնկրետ էկոնոմիկայի հարցերը ուսումնասիրող խմբակը (պրոպագանդիստ Ա. Բարսեղյան), չսահմանափակվելով միայն տեսական հարցերով, պարապմունքները հաճախ անց էր կացնում հենց ցեխերում, նյութը կապելով պրակտիկ խնդիրների հետ։ Իր պրոպագանդիստական աշխատանքում ընկ. Բարսեղյանը օգտագործում էր ձեռնարկության տվյալները և կոնկրետ օրինակներով ու փաստերով ցույց տալիս ավտոմատացման ու մեքենայացման դերը աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։

Տեսական հարցերը գործնական աշխատանքի հետ կապակցելու լավ օրինակներ կան հատկապես կոնկրետ էկոնոմիկայի և քաղաքատնտեսության հարցերն ուսումնասիրող խմբակների աշխատանքում։ Այսպես, օրինակ, Երևանի Ավտոդողերի գործարանի կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող կոմունիստների խմբակը հաջողությամբ ուսումնասիրում էր էկոնոմիկայի հար-

ցերը։ Առանձին թեմաներ մշակելիս ունկնդիրներն այս կամ այն տեսական դրույթը հիմնավորում էին գործարանի առանձին ցեխերի պրակտիկայից վերցրած փաստերով ու թվական տվյալներով։ Կոնկրետ էկոնոմիկայի հարցերի խոր ուսումնասիրությունը հնարավորություն տվեց ունկնդիրներ Վ. Առուստամյանին, Ս. Զոհրաբյանին, Ա. Խաչատրյանին անելու մի շարք արժեքավոր առաջարկություններ, որոնց շնորհիվ զգալիորեն բարելավվեց արտադրության կազմակերպումը և նոր տեխնիկայի արմատավորումը։ Այս բոլորը նպաստեցին արտադրական պլանների կատարմանը տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներով։

Անցած ուսումնական տարում զգալի ուշադրություն դարձվեց պարտիական-սովետական ղեկավար կադրերի տնտեսագիտական կրթությանը։ Կիրովյան, Ստալինյան, Միկոյան պարտշրջկոմներին կից կազմակերպվեցին շրջանի արդյունաբերության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարներ։

Ուշագրավ է Ստալինյան շրջանում կոնկրետ էկոնոմիկայի գծով սեմինարներ կազմակերպելու փորձը։ Այստեղ էկոնոմիկայի հարցերով զբաղվում էին, հաշվի առնելով արդյունաբերության առանձին ճյուղերի առանձնահատկությունները և ձեռնարկությունների պրոֆիլը։ Շրջանում կոնկրետ էկոնոմիկայի գծով գործում էր 9 սեմինար, այդ թվում՝ մեքենաշինական ձեռնարկությունների, քիմիական արդյունաբերության, ավտոտրանսպորտի, շինարարական կազմակերպությունների աշխատողների սեմինարները և այլն։ Պարտշրջկոմը և սեմինարների ղեկավարները, ըստ յուրաքանչյուր սեմինարի պրոֆիլի, համատեղ մշակեցին ուսումնական պլաններն ու ծրագրերը, ինչը հնարավորություն տվեց ավելի բազմակողմանիորեն ուսումնասիրել տեսական ու գործնական հարցերը, հաշվի առնելով արտադրության առանձին ճյուղերի առանձնահատկությունները։ Միկոյանի պարտշրջկոմին կից ստեղծվեց տեխնիկական պրոպագանդայի կաբինետ, որտեղ կանոնավոր կերպով դասախոսություններ ու զեկուցումներ են կազմակերպվում գիտության ու տեխնիկայի նվաճումների վերաբերյալ, ընդհանրացվում ու պրոպագանդվում է շրջանի արդյունաբերության առանձին ճյուղերի աշխատանքի առաջավոր փորձը։

Պարտիական ղեկավար աշխատողների համար պարտիայի Երևանի քաղկոմը կազմակերպեց արդյունաբերական ձեռնարկությունների էկոնոմիկան ուսումնասիրող տնտեսագիտական դպրոց։ Ուսումնական պլանի համաձայն լսվել են մի շարք դասախոսություններ և կազմակերպվել սեմինար պարապմունքներ։ «ՍՄԿՊ XX համագումարը վեցերորդ հնգամյակում սոցիալիստական արդյունաբերության հետագա զարգացման խնդիրների մասին» թեմայի շուրջ դասախոսությամբ հանդես եկավ Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Թովմասյանը։

«Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի արտադրողականությունը և նրա բարձրացման ուղիները» թեմայով դասախոսություն է կարդացել ընկ. Ա. Զրաղացպանյանը, «Էներգետիկայի զարգացումը վեցերորդ հնգամյակում» թեմայով՝ ընկ. Ս. Վարդանովը։

Տեսական սեմինարներ են կազմակերպվել նաև Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի Պետական ակադեմիական թատրոնի, Հայֆիլհարմոնիայի, Պատանի հանդիսատեսի թատրոնի, Սայաթ-Նովայի անվան երաժշտական ուսումնարանի պարտիական կազմակերպություններում։

Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի գրականության ինստի-



տուտի պարտիական կազմակերպության կից տեսական սեմինարում կոմունիստներն ուսումնասիրում էին մարքս-լենինյան գրականության ու արվեստի առանձին պրոբլեմներ։ Մասնավորապես քննարկվել են՝ Վ. Ի. Լենինը պրոլետարական կուլտուրայի մասին, Վ. Ի. Լենինը Գորկու գրական ստեղծագործության մասին և այլ թեմաներ։

Այս տարի բավական մեծ թվով խմբակներում կոմունիստները ուսումնասիրում էին ընթացիկ քաղաքականության հարցերը։ Առանձնապես աշխույժ էին ընթանում «Աշխարհի քարտեզի առաջ» խմբակների պարապմունքները։ Այս տեսակետից կազմակերպված ու բովանդակալից էին, հատկապես, Կոնսերվի գործարանի, Տրամվայ-տրոլեյբուսի վարչության և էլեկտրալամպերի գործարանի սկզբնական պարտկազմակերպությունների խմբակների պարապմունքները։

Երևանի քաղաքային պարտիական կազմակերպությունում քաղաքական ինքնակրթությամբ զբաղվող կոմունիստների և անպարտիականների թիվն այս տարի հասնում էր 8 հազարի։ Այս հանգամանքը պահանջում էր, որ քաղաքի պարտիական կազմակերպություններն անհամեմատ ավելի մեծ ուշադրություն դարձնեին կոմունիստների ինքնուրույն ուսուցումը կազմակերպելու ու ղեկավարելու կարևորագույն գործին, ամենօրյա հսկողությամբ ճիշտ ուղղություն տային նրանց աշխատանքներին։

Առանձնապես պետք է նշել ինքնուրույն ուսումնասիրողների հետ տարվող լավ աշխատանքը Հայէներգոյի պարտիական կազմակերպությունում։ Այստեղ մարքսիստական-լենինյան թեորիայի հարցերը ուսումնասիրող սեմինարի մասնակիցների համար կազմակերպվող դասախոսությունների հետ մեկտեղ լայնորեն կազմակերպվում էին ռեֆերատների ընթերցումներ ու քննարկումներ և տեսական զրույցներ, որոնց ակտիվ մասնակցություն էին ունենում ունկնդիրները։

Կոմունիստների կողմից մարքս-լենինյան տեսության ինքնուրույն ուսումնասիրության հաջողությունը մեծ չափով կախված է այն բանից, թե պարտիական կազմակերպությունները որքանով կոնկրետ են օգնում ու ղեկավարում ինքնուրույն ուսումնասիրման աշխատանքները։

Պրակտիկան ցույց է տվել, որ տնտեսական հարցերը ինքնուրույն ուսումնասիրողներին ցույց տրվող օգնության լավագույն ձևերից մեկը դասախոսությունների սիստեմատիկ կազմակերպումն է։ Հաջող դասախոսությունն օգնում է ուսումնասիրվող հարցերի ավելի լավ ու խոր յուրացմանը։ Բայց ինքնուրույն ուսուցումը չպետք է սահմանափակվի սոսկ դասախոսություններ լսելով։ Դասախոսությունը միայն մի միջոց է ունկնդիրներին ընդհանուր գաղափար տալու տվյալ թեմայի, հարցի վերաբերյալ, իսկ գլխավորը պետք է լինի գրքի ինքնուրույն ուսումնասիրությունը։

Ընթացիկ տարում մարքսիստական-լենինյան տեսությունն ինքնուրույն ուսումնասիրողներին օգնելու համար քաղաքում կարդացվեցին մի շարք ցիկլային դասախոսություններ։ ՀԿՊ Երևանի քաղկոմի Ստեփան Շահումյանի անվան քաղաքական լուսավորության տանը հենց տարեսկզբից կազմակերպվեց լեկտորիում, որտեղ մարքս-լենինյան տեսությունն ուսումնասիրողներին օգնելու նպատակով հերթականորեն ցիկլային դասախոսություններ էին կարդացվում ՍՄԿՊ պատմության, քաղաքատնտեսության, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի, կոնկրետ էկոնոմիկայի, ՍՍՌՄ արտաքին քա-

ղաքականության և արդի միջազգային հարաբերությունների հարցերի շուրջը։ Դասախոսություններով հանդես են եկել բուհերի դասախոսներ, քաղաքի պարտիական ու սովետական ղեկավար աշխատողներ, ձեռնարկությունների դիրեկտորներ ու գլխավոր ինժեներներ։

Մարքս-լենինյան տեսությունն ինքնուրույն ուսումնասիրողներին ցույց տրվող օգնության մյուս կարևոր ձևն են խմբակային և անհատական կոնսուլտացիաները, տեսական հարցերի շուրջ կազմակերպվող զրույցները և ռեֆերատների քննարկումը։ Պետք է նշել, որ ուսումնական տարում կոնսուլտանտները որոշ չափով բարելավեցին իրենց աշխատանքը։ Նրանք ունկնդիրների հետ անցկացվող զրույցների ընթացքում ո՛չ միայն շոշափում և պարզաբանում էին այս կամ այն թեմայի հարցերը, այլև մեթոդական ցուցումներ էին տալիս, թե ինչպես պետք է ուսումնասիրել այս կամ այն թեման, ինչպես կազմել կոնսպեկտը, ինչ գրականություն օգտագործել և այլն։

Ինչպես հայտնի է, ինքնուրույն ուսուցման ձևերը բազմազան են։ Այդ ձևերից մեկն էլ տեսական սեմինարներն են։ Սեմինարները կազմակերպվածություն և պլանայնություն են մտցնում մարքս-լենինյան տեսությունն ինքնուրույն ուսումնասիրողների հետ տարվող աշխատանքում, քանի որ այդ դեպքում յուրաքանչյուր կոմունիստի անհատական ուսուցումը զուգակցվում է տեսական հարցերի կոլեկտիվ քննարկման հետ։ Այդ ձևը միանգամայն արդարացնում է իրեն և դրա համար էլ այս տարի զգալիորեն ավելացավ քաղաքում կազմակերպվող տեսական սեմինարների թիվը, ավելի նպատակասլաց դարձավ ինքնուրույն ուսուցման գործը։

Երևանի քաղաքային կոմիտեի քաղաքական լուսավորության տանը և պարտշրջկոմների կաբինետներում դասախոսական պրոպագանդային զուգընթաց՝ մարքս-լենինյան տեսությունն ինքնուրույն ուսումնասիրողներին օգնելու նպատակով կազմակերպվում են խմբային ու անհատական կոնսուլտացիաներ, կատարվում է տեղեկատու-բիբլիոգրաֆիական աշխատանք։

Իր պրակտիկ աշխատանքում պարտիայի Երևանի քաղաքային կոմիտեն բավականին ուշադրություն է նվիրում պրոպագանդիստական աշխատանքի փորձի ուսումնասիրմանն ու ընդհանրացմանը։ Ուսումնական տարվա ընթացքում կանոնավոր կերպով գումարվում էին սեմինարներ ու խորհրդակցություններ՝ նվիրված կոնկրետ էկոնոմիկայի, ընթացիկ քաղաքականության գծով գործող խմբակների ու սեմինարների աշխատանքի լավագույն փորձի փոխանակությանը։ Այսպես, օրինակ, քաղկոմը վերջերս հրավիրեց կոնկրետ էկոնոմիկայի սեմինարների և խմբակների ղեկավարների խորհրդակցություն, որտեղ իրենց աշխատանքի փորձի մասին պատմեցին ընկ. ընկ. Ե. Բաղասյանը (Կիրովի անվան գործարան), Ա. Բարսեղյանը (Ջեթ-օճառ կոմբինատ) և ուրիշներ։

Պարտիական և սովետական աշխատողների և ինտելիգենցիայի քաղաքական-տեսական մակարդակի բարձրացման գործում կարևոր դեր է խաղում պարտիայի Երևանի քաղաքային կոմիտեին կից Մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանը, որտեղ այս տարի սովորում էին 470 մարդ։

ՍՄԿՊ Կենտկոմի որոշմանը համապատասխան՝ երեկոյան համալսարանի աշխատանքը վերակառուցվել է, զգալիորեն ավելացել են քաղաքատնտեսության և արդյունաբերության էկոնոմիկայի ուսումնասիրությանը հատկացվող ժամերը։



Մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանի նախկին շրջանավարտներից շատերը ներկայումս աշխատում են որպես պրոպագանդիստներ, կոնսուլտանտներ, տեսական սեմինարների ղեկավարներ, ձեռնարկություններում, հիմնարկներում և բնակչության մեջ հանդես են գալիս դասախոսություններով ու զեկուցումներով։

Պրոպագանդիստների հետ կատարվող աշխատանքի դրական փորձ ունեն Կիրովյան և Միկոյանի պարտշրջկոմները, որոնք պրոպագանդիստների սեմինարները, խորհրդակցությունները գումարել են կանոնավոր կերպով, որտեղ տեսական հարցերի հետ մեկտեղ քննության են առնվել նաև պրոպագանդիստական աշխատանքի մեթոդիկայի և փորձի փոխանակության հարցերը։

Պարտիայի քաղաքային կոմիտեն ուսումնական տարվա ընթացքում կազմակերպել է պրոպագանդիստների մի շարք սեմինարներ ու խորհրդակցություններ։

Պրոպագանդիստների, դասախոսների և կոնսուլտանտների համար քաղաքային կոմիտեն կազմակերպեց ակադեմիկոս Ա. Իոսիֆյանի դասախոսությունը՝ «Արդյունաբերության և գործիքաշինության զարգացման հեռանկարները ռեսպուբլիկայում» թեմայով, ՍՄԿՊ Կենտկոմի դասախոս Դ. Սիդորովի դասախոսությունը՝ «ՍՍՌՄ միջազգային դրության մասին» թեմայով, պրոֆեսոր Լ. Լոկշինի դասախոսությունը՝ «Սոցիալիստական տնտեսության ղեկավարման լենինյան սկզբունքների մասին» թեմայով և այլն։

Հաշվի առնելով պարտիական կազմակերպություններում կոնկրետ էկոնոմիկայի հարցերի ուսումնասիրության նկատմամբ եղած հետաքրքրությունը՝ քաղկոմը և շրջկոմները դասախոսական կազմը համալրեցին տնտեսական և ինժեներա-տեխնիկական ղեկավար աշխատողներով ու գիտնականներով։ Դասախոսական աշխատանքի ներգրավվեցին՝ ակադեմիկոսներ Ա. Իոսիֆյանը, Մ. Կասյանը, գիտությունների թեկնածուներ Ա. Ջրաղացպանյանը, Կ. Պալյանը, պրոֆեսոր Ղ. Շաքարյանը, ձեռնարկությունների դիրեկտորներ Ա. Դովլաթյանը, Մ. Ծատուրյանը, քաղաքի գլխավոր ճարտարապետ Գ. Աղաբաբյանը, ինժեներներ Ռ. Թումանյանը, Գ. Կանեցյանը և ուրիշներ։

Բավական մեծ հետաքրքրություն առաջացրին «Սովետական և արտասահմանյան գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները և դրանց օգտագործումը ժողովրդական տնտեսության մեջ», «Արտադրողական ուժերի տեղաբաշխումը ՍՍՌՄ-ում՝ վեցերորդ հնգամյակում», «Միջազգային բանվորական շարժումը ժամանակակից էտապում» և մի շարք այլ թեմաներով քաղկոմի քաղաքական լուսավորության տանը կազմակերպված դասախոսությունները։

Սակայն, այս ամենի հետ մեկտեղ չի կարելի ասել, որ քաղաքի պարտիական կազմակերպությունների քաղաքական լուսավորության աշխատանքներում չկան թերություններ ու վրիպումներ։ Կոմունիստների քաղաքական ուսուցման գործում լուրջ թերությունն այն է, որ ինքնուրույն ուսուցման կազմակերպումը շատ տեղերում դեռևս անբավարար է։ Չնայած որոշ բարելավմանը, պարտիական կազմակերպությունները դեռևս բեկում չեն ստեղծել կոմունիստների քաղաքական ինքնակրթության գործում։ Քաղկոմ-շրջկոմները և մի շարք սկզբնական պարտիական կազմակերպություններ լուրջ վերահսկողություն չեն սահմանել ինքնուրույն ուսուցման նկատմամբ և անհրաժեշտ օգնություն չեն կազմակերպել այդ գործում։ Քիչ չեն դեպ-

քերը, երբ կոմունիստները փաստորեն չեն զբաղվում իրենց քաղաքական գի-
տելիքների բարձրացմամբ։ Որոշ պարտիական կազմակերպություններ ուսում-
նական տարվա սկզբին խնամքով կազմեցին քաղաքական ինքնակրթությամբ
զբաղվող կոմունիստների ցուցակները, որից հետո մոռացության մատնեցին
դրանք, ղեկավարություն և ուղղություն չտվին նրանց աշխատանքներին։

Շատ պարտիական կազմակերպություններում ինքնուրույն ուսումնասի-
րողների հետ տարվող աշխատանքում չեն օգտագործվում այնպիսի ակտիվ
ձևեր, ինչպիսիք են՝ տեսական հարցերի շուրջը կազմակերպվող զրույցները,
տեսական կոնֆերանսները, դասախոսությունները, անհատական և խմբակա-
յին կոնսուլտացիաները։

Թերություններ կան նաև կադրերի տնտեսագիտական կրթության գոր-
ծում։ Քիչ չեն դեպքերը, երբ սեմինար պարապմունքների ժամանակ բավակա-
նաչափ ուշադրություն չի դարձվում տեսական հարցերի վրա, որի հետևան-
քով հաճախ այդ սեմինարները վեր են ածվում արտադրական խորհրդակցու-
թյունների, խոր կերպով չեն բացահայտվում պարտիայի և կառավարության
որոշումների տեսական հիմքերը։

Պարտիական կազմակերպությունների հրատապ խնդիրն է՝ վերացնել կո-
մունիստների քաղաքական լուսավորության գործում եղած թերությունները,
սիստեմատիկ աշխատանք տանել բոլոր կոմունիստներին մարքսիզմ-լենինիզ-
մի վեհ գաղափարներով զինելու, նրանց գաղափարական-քաղաքական մա-
կարդակն անընդհատ բարձրացնելու համար։

Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ կոմունիստների ուսուցումը միշտ
գտնվի պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։
Պարտիական կազմակերպությունները պետք է շարունակ բարելավեն քաղ-
ուսուցման աշխատանքի ղեկավարումը, սիստեմատիկորեն վերահսկեն այն,
ամեն կերպ բարձրացնեն կոնսուլտանտների, տեսական սեմինարների ղեկա-
վարների և մարքս-լենինյան տեսությունն ինքնուրույն ուսումնասիրող բոլոր
կոմունիստների պատասխանատվությունը։ Յուրաքանչյուր կոմունիստ պետք
է անդուլ կերպով աշխատի իր գիտելիքները հարստացնելու և մարքսիզմ-
լենինիզմի հիմունքները յուրացնելու համար։

Նոր ուսումնական տարում պարտիական լուսավորության աշխատանք-
ները լավ կազմակերպելու համար պարտիական կազմակերպությունները
հենց այժմ պետք է միջոցառումներ մշակեն քաղաքատնտեսության, արդյու-
նաբերության կոնկրետ էկոնոմիկայի խմբակների և սեմինարների ընդարձակ-
ման, ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակների ստեղծման,
դրանք որակյալ պրոպագանդիստներով ապահովելու ուղղությամբ, ՍՄԿՊ
պատմության, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի կարևորա-
գույն հարցերի ուսումնասիրությունը օրինակելիորեն կազմակերպելու համար։

Ավարտելով պարտիական լուսավորության ցանցի ուսումնական տարին,
պարտիական կազմակերպությունները պետք է բազմակողմանիորեն հանրա-
գումարի բերեն իրենց կատարած աշխատանքը, ընդհանրացնեն պարտիական
պրոպագանդայի դրական փորձը, վճռականորեն վերացնեն այդ բնագավա-
ռում եղած թերությունները և նոր ուսումնական տարում ավելի բարձր մա-
կարդակի վրա դնեն պարտիական լուսավորության գործը։

---

# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ

Հ. ԻԿԻԼԻԿՅԱՆ

Մեր պարտիան միշտ էլ մեծ ուշադրություն է դարձրել կոմունիստների,
մեր բոլոր կադրերի ակտիվության ու ստեղծագործական նախաձեռնության
բարձրացման վրա։ Կոմունիստների ակտիվության բարձրացման գործում
որոշիչ նշանակություն ունի ներպարտիական դեմոկրատիայի ծավալումը,
պարտիական կյանքի լենինյան նորմերի խստիվ պահպանումը։ Դա բարձ-
րացնում է սկզբնական պարտիական կազմակերպությունների մարտունակու-
թյունը, կոմունիստներին դաստիարակում է թերությունների նկատմամբ ան-
հանդուրժողականության ոգով, տնտեսական ու կուլտուրական շինարարու-
թյան հարցերի լուծման համար բարձր պատասխանատվության ոգով։

ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեն և սկզբնական պարտիական
կազմակերպություններն առաջնորդվելով պարտիայի XX համագումարի որո-
շումներով՝ զգալի աշխատանք են կատարել կոմունիստների ակտիվության
ու ստեղծագործական նախաձեռնության զարգացման ուղղությամբ և հասել
են լուրջ հաջողությունների։ 1956 թվականի տնտեսական տարվա համախառն
արտադրանքի թողարկման պլանը Լենինականի արտադրական ձեռնարկու-
թյունները կատարեցին 102,7 տոկոսով, ժամկետից 7 օր շուտ։ Պլանից դուրս
երկրին տրվեց 16 միլիոն 600 հազար ռուբլու արտադրանք։ Զգալի հաջողու-
թյուններ ձեռք բերվեցին նաև 1957 թվականի առաջին եռամսյակում։

Կոմունիստների ակտիվության բարձրացման և նախաձեռնության զար-
գացման ձևերն ու մեթոդները բազմազան են։ Դրանցից մեկը պարտիական-
ներին հանձնարարություններ տալն է և դրանց կատարման ստուգումը։ Կո-
մունիստներին հանձնարարություններ տալը և դրանց կատարման ստուգումը
կադրերի դաստիարակության փորձված մեթոդներից մեկն է։ Այս ուղղությամբ
լավ աշխատանք է կատարում Մանարան ֆաբրիկայի սկզբնական պարտիա-
կան կազմակերպությունը։ Այստեղ կոմունիստներին պարտիական հանձնա-
րարություններ տալու և դրանց կատարումն ստուգելու գործը լավ հիմքերի
վրա է դրված. Հաշվառման մեջ եղած բոլոր կոմունիստներն էլ հանձնարա-
րություններ ունեն։

Պարտիական կազմակերպության բյուրոն արտադրական աշխատանքի
հետ կապված մի շարք հանձնարարություններ տվեց կոմունիստներին, որոնք
խոր և բազմակողմանի ուսումնասիրելով ֆաբրիկայի ցեխերի գործունեու-
թյունը, պարզեցին, որ թեև ֆաբրիկան կատարում և գերակատարում էր պե-
տական պլանային առաջադրանքները, բայց ցածր էր թողարկվող արտա-
դրանքի որակը։ Այդ հետևանք էր այն բանի, որ մանող ցեխի աշխատողները,
հատկապես հերթի վարպետները անհրաժեշտ պատասխանատվություն չէին

կրում մանվածքի որակի համար և հաճախակի խախտում էին տեխնոլոգիական պրոցեսները, վատ էր կազմակերպվում մեքենաների և սարքավորումների խնամքը։ Այդ թերությունները վերացնելու և արտադրանքի որակը բարելավելու համար կոնկրետ հանձնարարություններ տրվեց ցեխերի պետերին, հերթի վարպետներին և մանող ցեխի կոմունիստներին, վերադասավորվեցին պարտիական ուժերը, արտադրության ետ մնացող ճյուղերն աշխատանքի ուղարկվեցին ավելի գործիմաց և ձեռներեց մարդիկ։

Ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունը լուրջ ուշադրություն դարձրեց ո՛չ միայն կոմունիստների, այլև բոլոր աշխատողների ստեղծագործական ակտիվությունը բարձրացնելու վրա, ամբողջ կոլեկտիվի եռանդն ուղղեց նոր տեխնիկան արմատավորելու, տեխնոլոգիական պրոցեսները կատարելագործելու, արտադրանքի թողարկման առաջադրանքներն անթերի կատարելու նպատակին։ Բավական է նշել, որ անցած տարվա երրորդ կիսամյակում ֆաբրիկայում տեղադրվեցին 44 նոր գզող, սանրող, մանող և փաթաթող մեքենաներ։

Այս և մյուս միջոցառումների շնորհիվ ֆաբրիկայի կոլեկտիվը անցած տնտեսական տարում խոշոր հաջողությունների հասավ. համախառն արտադրանքի պլանը կատարվեց 104,2, իսկ ապրանքայինը՝ 105,2 տոկոսով։ Առաջին տեսակի մանվածքի արտադրանքը, պլանավորված 52 տոկոսի փոխարեն, կազմեց 54 տոկոս։

Չկալովի անվան կարի ֆաբրիկայի, Էլեկտրատրեստի, Վագոնային և Էլեկտրաքարշային դեպոների սկզբնական պարտիական կազմակերպությունները հատուկ ուշադրություն դարձնելով որոշումների կատարման վրա՝ զգալի հաջողություններ են ձեռք բերել կոմունիստների ակտիվությունը բարձրացնելու, նրանց ձեռներեցությունը զարգացնելու ուղղությամբ։

Սակայն պետք է նկատել, որ ո՛չ բոլոր պարտիական կազմակերպություններն են անհրաժեշտ ուշադրություն դարձնում կոմունիստներին տրվող հանձնարարություններին և դրանց կատարման ստուգմանը։ Հեծանիվի, Մեխանիկական, Հացի № 1 և № 2 գործարանների, Կահույքի և Հրուշակեղենի ֆաբրիկաների, Ճաշարանների տրեստի, «Կենցաղ» արտելի պարտիական կազմակերպություններում թերագնահատվում է պարտիական հանձնարարությունների նշանակությունը։

Հրուշակեղենի ֆաբրիկայի պարտբյուրոն, հաշվի չառնելով առանձին կոմունիստների ընդունակությունները, հանձնարարությունները միշտ տալիս է միևնույն մարդկանց։ Այստեղ 25 կոմունիստից 20-ը ոչ մի հանձնարարություն չունի։

Կահույքի ֆաբրիկայի պարտբյուրոն ընկ. Ս. Խաչատրյանին առաջադրել է ցեխի ագիտատոր, իսկ Ա. Սարգսյանին՝ պատի թերթի խմբկոլի նախագահ։ Սրանք երկուսն էլ թերանում են իրենց վրա դրված հանձնարարությունները կատարելու գործում, իսկ պարտիական կազմակերպությունը լռությամբ է անցնում այդ փաստի կողքով։ Նշված պարտիական կազմակերպությունները մոռանում են, որ միայն պարտիական լայն ակտիվի միջոցով կարելի է բարելավել պարտիական-քաղաքական, պարտիական-կազմակերպական աշխատանքը, բարձրացնել կոմունիստների ակտիվությունը, ապահովել նրանց ավանգարդային դերը արտադրության մեջ։

Պարտիական մասսաների ակտիվությունն անշեղորեն աճում է այն կազ-



մակերպություններում, որտեղ ղեկավարները զգայուն կերպով ունկնդրում են կոմունիստների ձայնին, պաշտպանում նրանց նախաձեռնությունը, օգտագործում են նրանց փորձը։ Այս տեսակետից ուշագրավ է Գուլպա-տրիկոտաժ ֆաբրիկայի սկզբնական պարտիական կազմակերպության աշխատանքը։ Պարտբյուրոն և նրա քարտուղարները հետևում են, որպեսզի կոմունիստներն իրենց ակտիվությամբ, նախաձեռնությամբ և ինքնագործունեությամբ նպաստեն ֆաբրիկայի առջև դրված խնդիրների կատարմանը։ Ֆաբրիկայի աշխատողների ստեղծագործական նախաձեռնության զարգացման համար պարտբյուրոն կազմակերպում է արտադրության առաջավորների փորձի լայն պրոպագանդա։ Որպես գործող ցեխի պետ, կոմունիստ Հ. Խամբեկյանին մտահոգում էր գուլպա գործող մեքենաների կատարելագործման հարցը։ Նրա կատարած ուսումնասիրությունը ցույց տվեց, որ եթե գործող մեքենաների վրա դրվեն կոմպենսատորներ, ապա թելին կտրվի համաչափ ձգվածություն, և կստացվի բարձր որակի գործվածք։ Պարտբյուրոն վարպետների, առաջավոր բանվորների մասնակցությամբ քննության առավ Հ. Խամբեկյանի առաջարկությունը, որն արժանացավ ջերմ պաշտպանության և ներդրվեց արտադրության մեջ։ Այժմ կոմպենսատորներ են դրված ավելի քան 120 գործող մեքենաների վրա։

Պարտբյուրոյի ձեռնարկած միջոցառումները նոր խթան հանդիսացան կոմունիստների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական նախաձեռնության զարգացման համար։ Բավական է ասել, որ անցած մեկ տարում ստացվեց 90 նորարարական առաջարկություն, որից 60-ը կիրառվեց արտադրության մեջ և դրանից ստացվեց ավելի քան 300 հազար ռուբլի օգուտ։ Կոմունիստ նորարարներ Հ. Ֆրանգուլյանի, Հ. Շավորյանի, Յ. Ջանոյանի, Լ. Սահակյանի, Գ. Գալստյանի և ուրիշների ռացիոնալիզատորական առաջարկությունների կիրառման շնորհիվ մեքենայացվեցին մի շարք աշխատատար պրոցեսներ, բարձրացվեց աշխատանքի արտադրողականությունը, բարելավվեց թողարկվող արտադրանքի որակը։

Տեքստիլ կոմբինատի XVIII պարտհամագումարի անվան Մանարան ֆաբրիկայի սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոն իր պրակտիկ աշխատանքում հենվելով կոմունիստների վրա, լսելով նրանց ձայնը, պարտիական ժողովներում հաճախ քննության է առնում կոմունիստների առաջարկություններն ու դիտողությունները։ Այսպես, օրինակ, կոմունիստ ընկ. Ա. Այվազյանի պահանջով ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունը ուսումնասիրեց մանվածքի որակի հարցը։ Այդ ուսումնասիրությունը կատարվեց ինժեներա-տեխնիկական աշխատողների, բրիգադիրների և մի խումբ մանող բանվորների մասնակցությամբ։ Այնուհետև հարցը դրվեց պարտիական ժողովում, որտեղ ելույթ ունեցողները նշեցին, որ միջնաթելի բրիգադավարները, հերթի վարպետները, հինող բանվորները անհրաժեշտ պատասխանատվություն չեն զգում մանվածքի որակի համար։ Հարցի քննարկումը, ինչպես սպասվում էր, տվեց իր դրական արդյունքը։ Ժողովը նշեց մի շարք միջոցառումներ, որոնց կիրառմամբ ուժեղացվեց հսկողությունը արտադրական աշխատանքների վրա, հատկապես պատրաստի թելը հանելու և կապելու գործում, բարելավվեցին տեխնոլոգիական պրոցեսները։ Դրանց արդյունքը եղավ այն, որ բարելավվեց թելի որակը, 90 տոկոսով կրճատվեց խոտանը։

Կոմունիստների ակտիվության և նախաձեռնության զարգացման գործում

վճռական նշանակություն ունի սոցիալիստական գործարար մրցության ծավալումը։ Քաղաքի շատ պարտիական կազմակերպություններ լուրջ ուշադրություն են դարձնում այդ գործի վրա։ Տոդեքարշային դեպոյի պարտիական կազմակերպությունը մեծ աշխատանք է տանում ծանրաքարշայինների շարժումը մասսայական դարձնելու համար։ Պարտիական ժողովում քննարկվեց այդ հարցը, որի նախապատրաստումը հանձնարարվել էր հրահանգիչ-մեքենավար, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ա. Խաչատրյանին, հրահանգիչ-մեքենավար Ս. Սիմոնյանին, մեքենավար Խ. Ավոյանին և ուրիշների։ Ժողովում հարցի քննարկումն անցավ աշխույժ, գործարար մթնոլորտում։ Նշվեց, որ դեպոյում բոլոր պայմանները կան ծանրաքարշայինների շարժումը լայնորեն ծավալելու համար, սակայն դեպոյի պարտիական ու պրոֆմիութենական կազմակերպությունները վատ են զբաղվում այդ խնդրով։ Հետագայում, ելնելով պարտժողովի որոշումից, անհրաժեշտ ուշադրություն դարձվեց մրցության ծավալմանը և առաջավորների փորձի մասսայականացմանը, կազմակերպվեց լուրջ օգնություն ետ մնացողներին։ Արդյունքը եղավ այն, որ դեպոյի բոլոր մեքենավարները դարձան ծանրաքարշայիններ։ 1956 թվականին տեղափոխվեց 230 հազար տոննա բեռ և տնտեսվեց 1016 տոննա վառելանյութ։ Դեպոյի օգուտները ավելացան 2 200 հազար ռուբլով։ Սոցիալիստական մրցության արդյունքները հաջող են նաև այս տարվա անցած ամիսներին։

Տոդեքարշային դեպոյի պարտիական կազմակերպության աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ լուրջ հաջողությունների կարելի է հասնել այն դեպքում, երբ պարտիական կազմակերպությունն իր գործունեության ընթացքում հենվում է լայն ակտիվի, շարքային կոմունիստների վրա, խորհրդակցում է նրանց հետ, լսում նրանց ձայնը, ապահովում նրանց մասնակցությունը պարտիայի ու կառավարության որոշումների իրականացմանը։

Կոմունիստների ակտիվությունը բարձր է այնտեղ, որտեղ պարտիական կազմակերպությունները ավելի ուշադիր և մոտիկից են զբաղվում նրանց քաղաքական աճի հարցերով։ Որքան բարձր է կոմունիստների քաղաքական գիտակցությունը, այնքան ավելի ակտիվաբար են նրանք մասնակցում պարտիական-քաղաքական աշխատանքներին, տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների կենսագործման համար մղվող պայքարին։ ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեն, սկզբնական պարտիական կազմակերպությունները, ղեկավարվելով իդեոլոգիական հարցերի վերաբերյալ պարտիայի XX համագումարի որոշումներով, որոշ աշխատանք են կատարել կոմունիստական շինարարության պրակտիկ հարցերից պարտիական պրոպագանդայի կտրվածությունը հաղթահարելու, կոմունիստների, բոլոր կադրերի քաղաքական ուսուցումը բարելավելու, բնակչության մեջ տարվող քաղաքական աշխատանքները նոր խնդիրների մակարդակին հասցնելու ուղղությամբ։

Սակայն Գարեջրի, Մեխանիկական գործարանների, միլիցիայի բաժանմունքի, Խնայդրամարկղի սկզբնական պարտիական կազմակերպությունները խիստ անբավարար են զբաղվում կոմունիստների մարքս-լենինյան դաստիարակության հարցով։ Գարեջրի գործարանի սկզբնական պարտիական կազմակերպությանը կից գործող քաղխմբակի պարապմունքներն անցած ուսումնական տարում բազմիցս ձախողվել են։ Բացակայել է հսկողությունը և օգնությունը մարքսիստական-լենինյան տեսությունը ինքնուրույն ուսում-



նասիրողների նկատմամբ։ Եվ պատահական չէ, որ գործարանում աշխատող կոմունիստները պասսիվ են պարտիական-քաղաքական աշխատանքներում, արտադրության մեջ չեն ապահովում իրենց ավանգարդային դերը։

Կոմունիստների ակտիվության բարձրացման և ստեղծագործական նախաձեռնության զարգացման համար սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է համառ աշխատանք կատարեն պարտիայի անդամների և թեկնածուների քաղաքական դաստիարակության ուղղությամբ, այնպես անեն, որ յուրաքանչյուր կոմունիստ անդուլ կերպով աշխատի իր գաղափարական-քաղաքական մակարդակն ամեն կերպ բարձրացնելու վրա։

Քննադատության և ինքնաքննադատության ծավալումը ներպարտիական դեմոկրատիայի ձևերից մեկն է, որը մեծապես նպաստում է կոմունիստների ակտիվության բարձրացմանը և օգնում բացահայտելու թերություններն ու նշելու նրանց վերացման միջոցները։ Սակայն պետք է նշել, որ Կահույքի ֆաբրիկայի, Սննդառի, Քարհանքների վարչությունների, Ջագոտզեռնոյի, № 38 դպրոցի, Բնակարանային վարչության սկզբնական պարտիական կազմակերպություններում թույլ է ծավալվում քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Այդ կազմակերպություններում անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծվում ինքնաքննադատության, հատկապես ներքևից եկող քննադատության ծավալման համար։ «Գորգագործ» արտելի սկզբնական պարտիական կազմակերպության անդամները, հաշտվելով իրենց հիմնարկի ղեկավարի քմահաճ վերաբերմունքի հետ, ժամանակին չբացահայտեցին նրա թերությունները և թույլ տված սխալները։ Դրա հետևանքով էլ արտելի վարչության նախագահ Ա. Զուռնաչյանը հետագայում ավելի խորացրեց այդ սխալները, որի համար հեռացվեց աշխատանքից։

Ջագոտզեռնոյի սկզբնական պարտիական կազմակերպությունում (բյուրոյի քարտուղար Մ. Մարգարյան) կոմունիստները զրկված են քննարկվող հարցերի մասին իրենց կարծիքը հայտնելու, առաջարկություններ և դիտողություններ անելու հնարավորությունից։ Այդ է վկայում թեկուզ այն փաստը, որ պարտիական կազմակերպության ժողովում, երբ քննարկվում էին ՀԿՊ Կենտկոմի երկրորդ պլենումի արդյունքները, կապված սկզբնական պարտիական կազմակերպության խնդիրների հետ, զեկուցումից անմիջապես հետո, առանց ելույթների և առանց որոշում ընդունելու ժողովը հայտարարվում է փակված։

Հացի № 1 և Գարեջրի գործարանների, Արդառի, Շահումյանի անվան Մեխանիկական գործարանի սկզբնական պարտիական կազմակերպություններում անուշադիր վերաբերմունք գոյություն ունի կոմունիստների քննադատական դիտողությունների և ահազանգումների նկատմամբ, որը բացասաբար է ազդում ներպարտիական դեմոկրատիայի ծավալման և կոմունիստների ակտիվության բարձրացման վրա։

Հարկավոր է համարձակ կերպով կոմունիստների քննարկմանը դնել տվյալ հիմնարկության, ձեռնարկության առօրյային վերաբերող բոլոր հարցերը։ Որովհետև միայն այդ ճանապարհով կարելի կլինի պարտիական կարգապահությունը դարձնել իսկապես գիտակցական և ամուր կարգապահություն, միայն այդ ճանապարհով կարելի կլինի բարձրացնել մասսաների քաղաքական ակտիվությունը։ Բայց, ցավոք սրտի, դեռևս կան պարտիական կազմակերպություններ, որոնք ժողովներում չեն քննարկում իրենց ներքին

*կյանքին վերաբերող հարցերը, դրանով իսկ կոմունիստներին զրկում են ձեռնարկության առջև դրված խնդիրների լուծմանը ակտիվ մասնակցելու հնարավորությունից։ Լենինականում այդպիսի պարտիական կազմակերպություններից են՝ Տեքստիլ կոմբինատի տնտեսության, № 2 բանվորական դպրոցի և ուրիշ կազմակերպություններ, որոնք բավարարվում են՝ իրենց ժողովներում միայն վերադաս պարտիական կոմիտեների երաշխավորած օրակարգերը քննարկելով։*

*Որպեսզի կոմունիստների ակտիվությունը շարունակ աճի, պարտիական կոմիտեները պետք է ապահովեն պարտիական ժողովների, պլենումների, ակտիվի ժողովների կանոնավոր գումարումը, դրանց քննարկմանը դնեն հրատապ հարցեր, նպաստեն քննադատության և ինքնաքննադատության լայն ծավալմանը։ ՀԿՊ Լենինականի քաղկոմի պլենումները, պարտիական ակտիվի ժողովները և քաղկոմի բյուրոյի նիստերը հրավիրվում են սահմանված ժամկետներին, որոնցում քննարկվում են քաղաքի տնտեսական ու կուլտուրական շինարարությանը վերաբերող բազմաթիվ հարցեր։ Քննարկվող հարցերը նախօրոք ուսումնասիրվում են քաղկոմի անդամների միջոցով։ Ակտիվի ժողովներում և պլենումներում կոմունիստների ուշադրությունը հրավիրվում է չլուծված խնդիրների վրա և կոլեկտիվի օգնությամբ միջոցառումներ են մշակվում աշխատանքների հետագա բարելավման համար։ Սակայն դեռևս կան առանձին սկզբնական պարտիական կազմակերպություններ, որտեղ սիստեմատիկ կերպով խախտվում են ժողովների հրավիրման ժամկետները։ Այսպես, օրինակ, Տեքստիլ կոմբինատի վարչության, Դատարան-դատախազության, № 3 հիվանդանոցի, Ս. Սպանդարյանի անվան դպրոցի, «Կարմիր նոյեմբեր» կահույքի ֆաբրիկայի սկզբնական պարտիական կազմակերպություններում պարտիական ժողովները հրավիրվում են մեծ ուշացումներով։ Քննարկվող հարցերը պարտիական ակտիվի միջոցով չեն նախապատրաստվում, առանձին դեպքերում կոմունիստները զրկված են լինում տվյալ տեղամասի աշխատանքների վիճակի մասին իրենց խոսքն ասելու, առաջարկություններ անելու հնարավորությունից։ Պարզ է, որ այսպիսի պայմաններում խոսք չի կարող լինել ղեկավարման կոլեկտիվ սկզբունքի ապահովման, կոմունիստների ակտիվության և նախաձեռնության զարգացման մասին։*

*Պարտիայի Լենինականի քաղաքային Կոմիտեի և սկզբնական պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ամեն կերպ ամրապնդել ղեկավարման կոլեկտիվ սկզբունքը, բարձրացնել պարտիական կազմակերպությունների քաղաքական ակտիվությունը, ուժեղացնել կապը մասսաների հետ, գաղափարական բարձր մակարդակով անցկացնել քաղկոմի պլենումները, ակտիվի և պարտիական կազմակերպությունների ժողովները, կոմունիստների, բոլոր աշխատողների աճող ակտիվությունն ուղղել տնտեսական ու կուլտուրական շինարարության անհետաձգելի խնդիրների լուծմանը։*

---

# ՀԱՏՈՒԿ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԴԱՍՏԻՐԱԿՈՒԹՅԱՆԸ

*Ս. ԱՐԻՍՏԱԿԵՍՅԱՆ*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր զարգացման բոլոր էտապներում մեծ ուշադրություն է դարձրել իր շարքերի աճին։ Նա հետևել է, որ պարտիայի շարքերն աճեն ո՛չ միայն քանակապես, այլև, որ գլխավորն է, որակապես։*

*Եթե երկրի ինդուստրացման տարիներին պարտիայի մեջ մեծ մասամբ ընդունվում էին բանվորների և գյուղացիների առաջավոր ներկայացուցիչներ, ապա Հայրենական Մեծ պատերազմի տարիներին՝ հիմնականում ընդունվում էին Սովետական Բանակի ու Նավատորմի ռազմիկներից ամենատոկունները, որոնք խիզախորեն մարտնչում էին ռազմաճակատներում։ Պարտիայի շարքերն էին ընդունվում նաև բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և սովետական ինտելիգենցիայի առաջավոր ներկայացուցիչներ, որոնք թիկունքում անձնուրաց աշխատանքով կոփում էին հաղթանակը թշնամու նկատմամբ։ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին պարտիայի շարքերն աճեցին արագ կերպով։*

*Պարտիան չէր կարող չնկատել, որ իր շարքերի արագ աճն ունի նաև իր մինուսները, որ այդ աճը տանում է դեպի պարտիայի շարքերի քաղաքական գիտակցականության մակարդակի որոշ իջեցում, որ այն կարող է որոշ անհամապատասխանություն ստեղծել պարտիայի շարքերի քանակական աճի և պարտիայի անդամների ու անդամության թեկնածուների քաղաքական մակարդակի միջև։ Ահա թե ինչու պարտիայի XX համագումարը պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց պարտիայի շարքերի կարգավորման, պարտիայի անդամների և անդամության թեկնածուների քաղաքական մակարդակի բարձրացման հարցերի վրա։ Անհրաժեշտ համարվեց, որ պարտիայի շարքերի հետագա աճը հիմնականում կատարվի բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության առաջավոր ներկայացուցիչներից, որոնք անմիջապես իրենց հանրօգուտ աշխատանքով նյութական բարիքներ են ստեղծում։*

*ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետվության առթիվ պարտիայի XX համագումարի ընդունած բանաձևում ասված է՝ «Համագումարը սխալ է համարում այն, որ որոշ պարտիական կազմակերպություններ թուլացրել են ուշադրությունը պարտիայի աճը կարգավորելու գործի նկատմամբ։ Ելնելով այն բանից, որ գլխավորը պարտիայի շարքերի ոչ թե քանակական, այլ որակական աճն է, համագումարը պարտիական կազմակերպություններին պարտավորեցնում է ուժեղացնել հոգատարությունը պարտիայի մեջ առաջավոր մարդկանց, ամե-*

նից առաջ բանվորների ու կոլտնտեսականների անհատական ընդունելության նկատմամբ»։

Երևան քաղաքի Սպանդարյան շրջանի սկզբնական պարտիական կազմակերպությունները ղեկավարվելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումներով՝ որոշ աշխատանք են տարել պարտիայի շարքերի որակական կազմի բարելավման ուղղությամբ։ Նրանցից շատերը խստորեն պահպանում են պարտիայի շարքերում ընդունելության անհատական մոտեցումը և պարտիայի մեջ են ընդունում բացառապես առաջավոր մարդկանց, որոնք բարձր են պահում կոմունիստի պատվավոր կոչումը։

Սակայն, շրջանի մի շարք սկզբնական պարտիական կազմակերպություններ ընդունելության գործում ցուցաբերում են մակերեսային մոտեցում։ Մասնավորապես շրջանի արտադրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները, նրանց բյուրոներն ու քարտուղարները անբավարար են զբաղվում արտադրության մեջ աշխատող առաջավոր մարդկանց պարտիայի մեջ ընդունելու գործով։

Կարի № 1 ֆաբրիկայում և «Արարատ» տրեստի գինու կոմբինատում աշխատում են մեծ թվով կոմերիտական ու արտամիութենական երիտասարդներ, որոնց զգալի մասը կատարում ու գերակատարում է արտադրական պլանները, ակտիվորեն մասնակցում է հասարակական աշխատանքներին։ Նրանց մեջ կան ոչ քիչ թվով արժանավորներ, որոնք բոլոր տվյալներն ունեն պարտիայի շարքերն ընդունվելու համար։ Բայց այդ գործի վրա լուրջ ուշադրություն չի դարձվում, որի հետևանքով էլ 1956 թվականին և 1957 թվականին առաջին երեք ամսվա ընթացքում այդ խոշոր ձեռնարկություններում աշխատող առաջավոր մարդկանցից պարտիայի շարքերն են ընդունվել միայն չորս բանվոր։

Պարտիայի շարքերում ընդունելության գործը վատ է դրված նաև Գարեջրի № 1 և № 2 գործարանների, «Նոր երկար», «Սմիչկա» արտելների, Կրուպսկայայի անվան, «Մարտի 8-ի» անվան կարի ֆաբրիկաների և այլ պարտիական կազմակերպություններում։

Առանձին սկզբնական պարտիական կազմակերպություններ լավ չեն ուսումնասիրում պարտիայի շարքերն ընդունվողներին, խորամուխ չեն լինում նրանց պրակտիկ աշխատանքի մեջ։ Դեռ ավելին, որոշ մարդկանց ընդունելության գործերը քննարկելիս հաշվի չեն առնում նրանց անցյալ գործունեությունը։ Այս բոլորի հետևանքը լինում է այն, որ երբեմն պարտիայի մեջ են ընդունվում առանձին անարժան մարդիկ։ Օրինակ՝ «Բաղնիք-լվացքատների» տրեստի սկզբնական պարտիական կազմակերպությունը, խախտելով պարտիայի շարքերում ընդունելության անհատական մոտեցման սկզբունքը, առանց խոր ուսումնասիրելու, 1956 թվականի հոկտեմբերին պարտիայի անդամության թեկնածու է ընդունել Մ-ին, որը պարտիայի մեջ ընդունվելու համար ոչ մի արժանիք չի ունեցել և բացի այդ, դատական օրգանների կողմից անցյալում քրեական պատասխանատվության է ենթարկվել։

Պարտիայի մեջ ընդունելության գործին առանձին սկզբնական պարտիական կազմակերպություններում ցույց տրվող ոչ լուրջ վերաբերմունքի հետևանքով է, որ շրջկոմի բյուրոն 1956 թվականին և 1957 թվականի առաջին եռամսյակում չի հաստատել 26 ընկերների ընդունելության վերաբերյալ սկզբնական պարտիական կազմակերպությունների որոշումները։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ հիմնովին



վերակառուցել իրենց աշխատանքը պարտիայի XX համագումարի պահանջներին համապատասխան և ձեռնարկել բոլոր միջոցառումները պարտիայի շարքերի աճի գործում գոյություն ունեցող թերություններն ու սխալները կարճ ժամանակում վերացնելու համար։

Պարտիայի որակական կազմի բարելավման գործում խոշոր նշանակություն ունի ո՛չ միայն պարտիայի անդամության թեկնածուների ընդունելությունը, այլև երիտասարդ կոմունիստների և թեկնածուների հետ տարվող ամենօրյա քաղաքական-դաստիարակչական աշխատանքը։

ՍՄԿՊ Կանոնադրությամբ՝ պարտիայի մեջ ընդունվել ցանկացող բոլոր անձինք անցնում են թեկնածուական մեկ տարվա ժամանակաշրջան, որը նրանց հնարավորություն է տալիս ծանոթանալու պարտիայի Ծրագրին ու Կանոնադրությանը։ Սակայն Ծրագրին ու Կանոնադրությանը ծանոթանալը բավական չէ։ Պարտիայի անդամության թեկնածուն պետք է պրակտիկ աշխատանքում դրսևորի իրեն, ապահովի իր ավանգարդային դերը, ակտիվորեն մասնակցի պարտիական կազմակերպության աշխատանքներին և այդպիսով նախապատրաստվի պարտիայի անդամ ընդունվելու համար։ Սխալ կլինի կարծել, որ դա կկատարվի ինքնահոսով, առանց պարտիական կազմակերպության միջամտության։ Ամեն մի սկզբնական պարտիական կազմակերպություն պարտավոր է ամենօրյա աշխատանք կատարել թեկնածուների հետ, օգնել նրանց նախապատրաստվելու ժամանակին պարտիայի անդամ ընդունվելու համար։ Անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունները թեկնածուներին ընդգրկեն պարտիական աշխատանքում, նրանց համապատասխան հանձնարարություններ տան, օգնեն քաղաքականապես պատրաստվելու, աշխատանքում ավանգարդային լինելու։ Այս բոլորից հետո միայն սկզբնական պարտիական կազմակերպությունը պետք է քննի թեկնածուի դիմումը և նրան ընդունի պարտիայի անդամ, հաստատ համոզված լինելով, որ նա կարդարացնի և բարձր կպահի Կոմունիստական պարտիայի անդամի վեհ կոչումը։

Երևանի Սպանդարյան շրջանի պարտիական կազմակերպությունները երիտասարդ կոմունիստների և պարտիայի անդամության թեկնածուների հետ տարվող աշխատանքում ունեն լուրջ թերություններ։ Այդ թերությունները ավելի ցայտուն են արտահայտվում Հաստոցագործիքաշինական տեխնիկումի, «Գեղարվեստագործ» արտելի, Ռադիոյի և մի քանի այլ սկզբնական պարտիական կազմակերպություններում, որոնք եզրակացություն չանելով պարտիայի շրջանային XX կոնֆերենցիայում իրենց հասցեին եղած քննադատությունից, շարունակում են թերագնահատել թեկնածուների հետ տարվող աշխատանքը։ Նրանց չեն ներգրավում հասարակական-քաղաքական ակտիվ աշխատանքի, հանձնարարություններ չեն տալիս և չեն նախապատրաստում ժամանակին պարտիայի անդամ ընդունելու համար։ Դրա հետևանքը լինում է այն, որ այդ կազմակերպություններում գնալով ավելանում է ժամկետանց թեկնածուների թիվը։ Կան նաև այնպիսի փաստեր, երբ որոշ պարտիական կազմակերպություններ լավ ճանաչելով թեկնածուներին, նրանց հարցը քննելիս մակերեսային մոտեցում են ցուցաբերում, բազմակողմանիորեն չեն ուսումնասիրում թեկնածուների արժանիքները, որի հետևանքով էլ ոչ ճիշտ որոշում են կայացնում։ Այդ առթիվ կարող ենք նշել հետևյալ փաստը։

Կարի № 1 ֆաբրիկայի սկզբնական պարտիական կազմակերպությունը 1954 թվականի փետրվարին պարտիայի անդամության թեկնածու էր ընդու-

նել կարգապահ, հասարակական-քաղաքական աշխատանքների ակտիվ մասնակից, արտադրության առաջավոր Լ. Ադամյանին։ Բայց, որովհետև կազմակերպության բյուրոն հետագայում նրա հետ ամենօրյա հոգատար աշխատանք չտարավ, նա դադարեց առաջավոր ու ակտիվ լինելուց։ Պարտիական կազմակերպությունը փոխանակ խորանալու գործի իսկական էության մեջ, պարզելու Ադամյանի ետ մնալու պատճառները և օգնելու նրան, բավլոք համարեց նրան հեռացնել պարտիայի անդամության թեկնածությունից։ Շրջկոմի բյուրոն, իհարկե, չէր կարող համաձայնվել կազմակերպության նման որոշմանը։

Պարտիայի անդամության թեկնածուների հետ տարվող քաղաքական-դաստիարակչական անբավարար աշխատանքի հետևանքով 1957 թվականի ապրիլի 1-ի տվյալներով շրջանի 75 պարտիայի անդամության թեկնածուներից 42-ը ժամկետանց են։ Պարտիայի Կանոնադրությունը պահանջում է, որ պարտիական կազմակերպությունները ժամանակին լուծեն թեկնածուին պարտիայի անդամ ընդունելու կամ չընդունելու հարցը, անկախ նրանից, թե թեկնածուն դիմել է թե ոչ։ Սակայն ՀՀԳ-ի, «Երկոոպառի», Ռադիոինֆորմացիայի գլխավոր վարչության և մի շարք այլ պարտիական կազմակերպություններ Կանոնադրության այդ պահանջը չեն կատարում։ «Երկոոպառի» սիստեմում աշխատող ընկ. Պ. Գունջուլյանը 1954 թվականի մարտ ամսից պարտիայի անդամության թեկնածու է։ Պարտիայի անդամ ընդունելու համար 1956 թվականին նրա հարցը քննության առնվեց շրջկոմի բյուրոյում։ Բյուրոյում պարզվեց, որ Գունջուլյանը քաղաքականապես անպատրաստ է և պասիվ մասնակցություն է ցույց տալիս հասարակական-քաղաքական աշխատանքներին, որի պատճառով էլ նրա թեկնածուական ժամկետը երկարացվեց ևս մեկ տարով։

ՍՄԿՊ պարտիայի XIX համագումարը թեկնածուների հետ տարվող աշխատանքի բարելավման նպատակով Կանոնադրության մեջ հետևյալ լրացումը կատարեց. «Պարտիական կազմակերպությունը պարտավոր է օգնել թեկնածուներին նախապատրաստվելու պարտիայի անդամ ընդունվելու համար։ Թեկնածուական ստաժը լրանալուց հետո պարտիական կազմակերպությունը պետք է պարտիական ժողովում քննի պարտիայի անդամության թեկնածուի հարցը։ Եթե պարտիայի անդամության թեկնածուն չի կարողացել բավարար չափով իրեն դրսևորել այնպիսի պատճառներով, որոնք պարտիական կազմակերպությունը հարգելի է ճանաչում, սկզբնական պարտիական կազմակերպությունը կարող է երկարացնել նրա թեկնածուական ստաժը, ոչ ավելի քան մեկ տարի ժամկետով։ Իսկ այն դեպքում, երբ թեկնածուական ստաժը անցնելու ժամանակ պարզվել է, որ իր անձնական հատկություններով պարտիայի թեկնածուն արժանի չէ ընդունվելու պարտիայի անդամ, պարտիական կազմակերպությունը որոշում է ընդունում պարտիայի թեկնածությունից նրան վտարելու մասին»։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ամենայն ճշտությամբ կենսագործել պարտիայի անդամության թեկնածուների նկատմամբ կանոնադրական այդ պահանջները։

Պարտիական կազմակերպությունները պետք է հասնեն նրան, որ պարտիայի անդամության ամեն մի թեկնածու անձնական օրինակ ցույց տա աշխատանքում, պաշտպանի պարտիական ու պետական կարգապահությունը, միշտ օրինակ հանդիսանա անպարտիական մասսայի համար և ակտիվ քաղաքական աշխատանք տանի նրա շրջանում։



Պարտիայի որակական կազմի բարելավման գործում որոշակի դեր ունեն կատարելու երաշխավորող կոմունիստները, որոնք լուրջ պատասխանատվություն են կրում իրենց երաշխավորությունների համար։ Սակայն քիչ չեն դեպքեր, երբ առանձին կոմունիստներ պարտիայի մեջ ընդունվելու համար երաշխավորում են անարժան մարդկանց և դրա համար ոչ մի պատասխանատվություն չեն կրում։

Այսպես, օրինակ, Երևանի Կոնյակի գործարանի սկզբնական պարտիական կազմակերպությունը 1955 թվականի մայիսին Է. Հակոբյանին ընդունել է ՍՄԿՊ շարքերը որպես անդամության թեկնածու, իսկ հետագայում, 1956 թվականի դեկտեմբերին, նրան հեռացրել է պարտիայի անդամության թեկնածությունից՝ հակահասարակական արարքների համար։ Պարտիական կազմակերպությունը, քննելով Հակոբյանի հարցը, հարկ չհամարեց զբաղվելու նրան երաշխավորող կոմունիստներ Մ. Խալաթյանի և Ս. Եգանյանի հարցով։ Փաստը ցույց է տալիս, որ շատ պարտիական կազմակերպություններ անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում երաշխավորություններին, մոռանում են, որ երաշխավորողները պատասխանատվություն են կրում իրենց երաշխավորությունների համար, որ նրանք պարտավոր են հոգ տանել իրենց կողմից երաշխավորվածների դաստիարակման մասին և օգնել նրանց՝ պատվով կատարելու պարտիական ամեն մի հանձնարարություն։

ԼԿԵՄ անդամներից պարտիայի մեջ ընդունվողներին երաշխավորելու գործում լուրջ թերություններ կան նաև ՀԼԿԵՄ շրջկոմի աշխատանքում։ ՀԼԿԵՄ շրջկոմի բյուրոն հաճախ երաշխավորում է այնպիսիներին, որոնք պարտիայի մեջ ընդունվելու համար որևէ արժանիք չունեն։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ լուրջ ուշադրություն նվիրել երաշխավորության գործին, ավելի բարձրացնել պարտիայի մեջ ընդունվողներին երաշխավորողների անձնական պատասխանատվությունը։

Պարտիայի կողմից առաջադրված խնդիրները կենսագործելու համար սկզբնական պարտիական կազմակերպությունները պարտավոր են ուժեղացնել կազմակերպական աշխատանքը, կոմունիստներին, հատկապես երիտասարդ կոմունիստներին և պարտիայի անդամության թեկնածուներին զինել մարքսիստական-լենինյան թեորիայով, բարձրացնել նրանց անձնական պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։

Պարտիայի շրջանային կոմիտեն և սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է ամենօրյա քաղաքական-դաստիարակչական աշխատանքի միջոցով բարձրացնեն երիտասարդ կոմունիստների ու պարտիայի անդամության թեկնածուների անձնական պատասխանատվությունը իրենց գործի նկատմամբ, նրանց ընդգրկեն հասարակական-քաղաքական աշխատանքում, տան կոնկրետ պարտիական հանձնարարություններ և հետևեն դրանց կատարմանը։

## ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՇԱՀԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՄԻԿՈՅԱՆԻ ՇՐՋԱՆՈՒՄ

### Թ. ԽՈՒԴՈՅԱՆ

*Կոլտնտեսային կարգը լայն հնարավորություն և մեծ հեռանկարներ բացեց Միկոյանի շրջանի տնտեսության և առանձնապես խաղողագործության ու պտղաբուծության արագ զարգացման, աշխատավորների նյութական ու կուլտուրական բարեկեցության բարձրացման համար։*

*Կոլեկտիվացումից հետո այգեգործության բնագավառում մեծ վերելք տեղի ունեցավ։ Շրջանի խաղողի այգիների բազայի վրա արդեն 1939 թվականին հիմնադրվեց «Արարատ» տրեստի գինու գործարանը, որով կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների համար հնարավորություն ստեղծվեց ստացած բերքը տեղում հանձնել գործարանին և այդ զգալիորեն ավելացրեց նրանց դրամական եկամուտները։ Գործարանի առկայությունը բարձրացրեց բնակչության շահագրգռվածությունը. նա սկսեց ավելի լավ զբաղվել տնտեսության այդ ճյուղերի զարգացմամբ, բերքատվության բարձրացմամբ, այգիների տարածությունների ընդարձակմամբ։ Կազմակերպվեց մթերման գրասենյակ, որը նույնպես դրական ազդեցություն ունեցավ պտղաբուծության զարգացման համար։*

*Այժմ արդեն կարելի է ասել, որ այգեգործությունը դարձել է շրջանի էկոնոմիկայի վճռող և զարգացման լայն հեռանկար ունեցող ճյուղերից մեկը։ Ամենուրեք հայտնի են մեր շրջանի գինու գործարանի արտադրած «Արենի», «Միլիչկա», «Վերնաշեն» գինիները։ 1957 թվականի փետրվարին Մոսկվայում տեղի ունեցած կիսաքաղցր գինիների համտեսին «Արենի»-ն նվաճեց առաջին, «Վերնաշեն»-ը՝ երկրորդ տեղը։*

*Այժմ շրջանում կա 802 հեկտար խաղողի, 204 հեկտար պտղատու այգի և 45 հեկտար թթենուտ, որոնք կազմում են վարելահողերի միայն 6—7 տոկոսը։ Անցյալ տարի կոլտնտեսությունների ստացած դրամական եկամուտների 43 տոկոսը տվեց այգեգործությունը, այնինչ դրա վրա ծախսված աշխօրերը կոլտնտեսությունների ծախսած աշխօրերի մեկ տոկոսն էլ չկազմեց։ 1956 թվականին պետությանը 470 տոննա խաղող ավելի հանձնվեց, քան նախորդ տարում։*

*Ավելի բարձր ցուցանիշների են հասել առանձին կոլտնտեսություններ։ Այսպես, մեր շրջանի Ռինդ գյուղի կոլտնտեսությունը 42 հեկտար այգիների յուրաքանչյուր հեկտարից անցյալ տարի ստացավ 71 ցենտներ խաղող։ Միայն այդ ճյուղից կոլտնտեսության եկամուտը կազմեց մեկ միլիոն 194 հազար ռուբլի։ Այստեղ մեկ ցենտներ խաղողի արտադրության վրա ծախսվել է 2,4 աշխօր և մեկ աշխօրի եկամուտը կազմել է 166 ռ. 40 կ.։*



*Եթե խաղողագործության բնագավառում շրջանը որոշ հաջողություններ ունի, ապա պտղաբուծության բնագավառում լուրջ թերություններ կան։ Պտղատու այգիների 204 հեկտար տարածություններից անցյալ տարի հավաքվեց 510 տոննա միրգ, այսինքն՝ ամեն մի հեկտարից 25 ցենտներ։ Պետք է նշել մի շարք պատճառներ, որոնք անդրադառնում են բերքատվության բարձրացման վրա։ Նախ՝ մասիվ տարածություններով պտղատու այգիների բացակայությունը։ Պտղատու ծառերը հիմնականում ցրված են խաղողի այգիների մեջ։ Այսպես, Մալիշկայի կոլտնտեսության 13 հեկտար պտղատու այգիներից 1—2 հեկտարն է միայն մասիվներով, որոնց մշակությունը վատ է կազմակերպված։ Այստեղ պտղատու ծառերը ջրվում են միայն այն ժամանակ, երբ ջրում են խաղողի այգիները։*

*Խաղողագործության ու պտղաբուծության զարգացման համար շրջանում լայն հնարավորություններ կան, որոնք լիովին բացահայտվեցին շրջանային պարտիական ակտիվի վերջերս տեղի ունեցած ժողովում և «Կոմունիստ» թերթի խմբագրության նախաձեռնությամբ կազմակերպված գիտական սեսիայում։ Այդ հնարավորությունների օգտագործումը այժմ աշխատավորության առջև կանգնած ամենահրատապ հարցն է։*

*Ներքին հնարավորություններից գլխավորը, որի վրա հատուկ ուշադրություն է դարձվում, այգիների բերքատվության բարձրացումն է՝ հին այգիների նորացման, նոսրության վերացման և լիարժեքության ապահովման միջոցով։ Այգիների ոչ լիարժեքությունն էր պատճառը, որ Մալիշկա գյուղի կոլտնտեսությունը 80 հեկտար խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից 1956 թվականին ստացավ 29,2 ցենտներ բերք։ Համարյա նույնն է վիճակը Գլաձոր, Գետափ, Շատին և այլ գյուղերի կոլտնտեսություններում։*

*Կոլտնտեսություններն այժմ մեծ աշխատանք են տանում՝ անդալիսի ու արմատակալների միջոցով լիարժեք դարձնելու այգիների բոլոր տարածությունները։ Այդ միջոցառման շնորհիվ շրջանում խաղողի բերքը կավելանա ավելի քան 500 տոննայով։*

*Բերքատվության բարձրացման գործում կարևոր դեր ունի ագրոկոմպլեքսի և աշխատանքի առաջավոր մեթոդների ճիշտ կիրառումը։ Առանձնապես կարևոր տեղ է գրավում պարարտանյութերի օգտագործումը։*

*Արդեն այգիներն է փոխադրվել 20 հազար տոննա տեղական և հանքային պարարտանյութ։ Ցրտահարված այգիների նորմալ աճը և բերքի ստացումը ապահովելու համար այս տարվա էտը կատարվեց մասնագետների ցուցումով, փորձված այգեգործների միջոցով։*

*Սակայն շրջանի սկզբնական պարտիական կազմակերպությունները, կոլտնտեսությունների վարչությունները, ՄՏ կայանը և գյուղատնտեսության մասնագետները առայժմ վատ են զբաղվում առաջավոր փորձի տարածման ու արմատավորման հարցով։ Մինչդեռ առաջավոր փորձի տարածումն ու արմատավորումը ետ մնացող կոլտնտեսություններին հնարավորություն կտա հասնելու առաջավորներին և ամենուրեք բարձրացնելու այգիների բերքատվությունը, ավելացնելու կոլտնտեսությունների դրամական եկամուտները։*

*Այգիների ներկա տարածությունները, եղած հնարավորությունների հետ համեմատած, դեռևս քիչ են։ Հաշվի առնելով այդ, կոլտնտեսությունները եռանդուն աշխատանք են տանում այգիների տարածություններն ընդարձակելու ուղղությամբ։ Միայն կոմերիտականների և երիտասարդների ուժերով*

տրդեն մոտ 10 հազար պտղատու ծառ է տնկվել առուների ափերին, գյուղի
փողոցներում և այլ տեղերում: Արենի գյուղի Կալինինի անվան կոլտնտեսու-
թյունը «Ղռեր» կոչվող հողամասում, ուր վերջերս կառուցվել է ջրհան կա-
յան, տնկել է 10 հեկտար խաղողի այգի և շատ պտղատու ծառեր: Խաղողի
10 հեկտար այգի են տնկել շրջկենտրոնի Շահումյանի անվան կոլտնտեսու-
թյան այգեգործները «Մոզրով» կոչվող հանդամասում՝ նոր կառուցված ջրհան
կայանի միջոցով ոռոգվող տարածություններում: Խաղողի նոր այգիներ են
տնկելու ուրիշ շատ կոլտնտեսություններ ևս: Միայն ընթացիկ տարում պետք
է տնկվի 60, իսկ մինչև 1960 թվականը՝ 150 հեկտար խաղողի այգի:

Այգիների տարածությունների ընդարձակման լայն հնարավորություններ
է տալիս անջրդի և կիսաջրովի տարածությունների օգտագործումը. այդ տա-
րածությունների վրա հիմնվում են նոր այգիներ: Այստեղ կարևորն այն է, որ
տնկումը կատարվում է ոչ-թմբային սիստեմով, որը և հնարավորություն է
տալիս մեքենայացնել այգիների մշակման աշխատանքները:

Գինեայգեգործական ինստիտուտի մեր շրջանի հենակետի փորձնական
տվյալներով ապացուցված է, որ շրջանի համարյա բոլոր կոլտնտեսություն-
ներում կարելի է աճեցնել և բարձր բերք ստանալ անջրդի և կիսաջրովի տա-
րածություններում տնկած այգիներից:

Խաչիկի կոլտնտեսությունում եղած 4 հեկտար կիսաջրովի այգին տվեց
բարձր բերք՝ միջինը հեկտարից մինչև 60 ցենտներ: Լավ է աճում նաև Բոլո-
րաբերդ գյուղում եղած 2 հեկտար անջրդի այգին: Անջրդի ու կիսաջրովի այ-
գիների տարածությունը Խաչիկ գյուղում կարելի է հասցնել մինչև 100, Բո-
լորաբերդում՝ 30, Գանձակում՝ 20, Թառաթումբում՝ 25 հեկտարի և այլն:

Առաջավոր կոլտնտեսությունների, բրիգադների և օղակների փորձը
ցույց է տալիս, որ շրջանի պայմաններում կարելի է խաղողի և մրգերի
բարձր բերք ստանալ: Սակայն այժմ շրջանի առաջավոր այգեգործների փորձն
անբավարար է կիրառվում, լավ չեն մշակվում այգիները, որի հետևանքով էլ
բնակլիմայական միևնույն պայմաններում արդյունքները տարբեր են լինում:

Բնակլիմայական միևնույն պայմաններում են գտնվում Արենի և Ագա-
րակաձոր գյուղերի կոլտնտեսությունները: Եթե Արենիում 1956 թվականին
28,5 հեկտար խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 86
ցենտներ բերք, մեկ ցենտների արտադրության վրա ծախսվեց 3,5 աշխօր և
աշխօրի եկամուտը կազմեց 114 ռ. 40 կ., ապա Ագարակաձորում 13,5 հեկ-
տար այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 26 ցենտներ միջին բերք,
մեկ ցենտներ խաղողի արտադրության համար ծախսվեց 8,85 աշխօր և
աշխօրի արժեքը կազմեց 46 ռուբլի:

Պետք է ասել, որ եթե խաղողի նոր այգիներ տնկելու ուղղությամբ շըր-
ջանում լայն շարժում է ստեղծվել, ապա նույնը չի կարելի ասել պտղատու
այգիների ընդարձակման մասին: Վերջին տարիներս մասիվ տարածություն-
ներով (5—6 հեկտար) պտղատու այգիներ են ստեղծել միայն Արենի և Գան-
ձակ գյուղերի կոլտնտեսությունները, իսկ մնացած տեղերում տնկվել են
հատ ու կենտ ծառեր:

Պտղատու այգիների ընդարձակման համար մեծ հնարավորություններ
կան, որոնք առայժմ վատ են օգտագործվում: Պտղատու ծառեր կարելի է
տնկել, աճեցնել սարալանջերին, ձորակներում, առվակների ափերին, առանց
կրճատելու մյուս կուլտուրաների ցանքատարածությունները: Արփա գետի



երկու ափերին կարելի է աճեցնել հազարավոր թթենիներ, որը բազա կհան-
դիսանա շերամապահության արագ զարգացման համար: Շրջանում մեծ
հնարավորություններ և լավագույն պայմաններ կան, հատկապես, ընկուզենու
տարածման համար:

Պտղատու այգիների ընդարձակման հետ լայն աշխատանք է տարվելու
տնկարանային տնտեսության կազմակերպման ուղղությամբ: Ուրիշ շրջան-
ներից բերվող տնկանյութը տեղի պայմաններին լավ չի հարմարվում և մեծ
ծախսեր է պահանջում: Հատուկ ուշադրություն է դարձվելու պտղատու ծառա-
տեսակների բարելավման վրա, որը գրեթե անուշադրության է մատնված:

Ինչպես այգեգործության, այնպես էլ պտղաբուծության զարգացման հա-
մար անհրաժեշտ է նաև կատարել մի շարք ջրաշինարարական աշխատանք-
ներ՝ նորոգել եղած ջրամբարները, ընդարձակել նրանց ծավալը, կառուցել
նորերը:

Արփա գետի ջրերը ռացիոնալ օգտագործելու համար անհրաժեշտ է կա-
ռուցել մի շարք ջրհան կայաններ և դնել հիդրոտարաններ: Պետք է նշել, որ
Գյուղատնտեսության և Ջրային տնտեսության մինիստրությունները այս գոր-
ծում դեռևս անբավարար են օգնում շրջանի կազմակերպություններին: Երկու
տարուց ավելի է, ինչ նախատեսված է կառուցել Գլաձորի և Գետափի ջրհան
կայանները, որոնց շահագործումով ոռոգելի կդառնա այգեգործության համար
պիտանի 1500 հեկտար տարածություն: Այս կառուցումը մտցված է ռեսպուբ-
լիկայի հնգամյա պլանի մեջ, կազմված է նախագիծ, սակայն դրանց կատա-
րումը մինչև այժմ ձգձգվում է:

Արփա գետի վրա փոքր ջրհան կայաններ և հիդրոտարաններ դնելու մի-
ջոցով Արենի, Գետափ, Ագարակաձոր, Շատին, Մալիշկա գյուղերի կոլտըն-
տեսություններում կարելի է ջրովի դարձնել և օգտագործել ավելի քան 25—50
հեկտար տարածություն:

Այգեգործության ու պտղաբուծության հետագա զարգացումը զգալի չա-
փով կախված է աշխատանքների մեքենայացման ծավալից, որն առայժմ ան-
բավարար է. աշխատանքի 90 տոկոսը դեռևս կատարվում է ձեռքով: Այդ
գործում քիչ նախաձեռնություն է հանդես բերում Միկոյանի ՄՏ կայանը:

Անցյալ տարիներին Միկոյան, Մալիշկա, Գետափ և Արենի գյուղերի
կոլտնտեսություններում որոշ տարածությունների վրա կատարվեց այգիների
մեքենայացված փոր և բուժում, սակայն կոլտնտեսությունների այդ նախա-
ձեռնությունը ՄՏ կայանի կողմից չզարգացվեց:

Այգիների աշխատանքի մեքենայացումը կապված է հին այգիների վերա-
կառուցման հետ, որի ուղղությամբ առայժմ ՄՏ կայանը շրջանի կոլտնտե-
սություններում քիչ աշխատանք է տանում:

Անկասկած Միկոյանի շրջանի էկոնոմիկայի մեջ այգեգործությունը կդառ-
նա հիմնական և վճռող ճյուղը, դրա համար կան բոլոր հնարավորություն-
ներն ու պայմանները, միայն հարկավոր է, որ շրջանի պարտիական, սովե-
տական կազմակերպություններն այդ հնարավորությունները օգտագործեն
խելացիորեն և առանց ձգձգումների:

# ՄԵՐՁԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՆԳՈՒՅՑԸ

Ս. ՊԱՊՅԱՆ

Գտնվելով Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի սահմանագլխում՝ Մերձավոր և Միջին արևելքն իրենից մի կամուրջ է ներկայացնում, միմյանց հետ կապելով այդ երեք մայր ցամաքները: Տարածվելով Սև և Կասպից ծովերից մինչև Հնդկական օվկիանոսը, Նեղոսի հովտից մինչև Պամիրի լեռնաշխարհը, այդ շրջանը ընդգրկում է հսկայական տարածություն՝ 10 միլիոն քառ. կմ., որտեղ բնակվում է ավելի քան 100 միլիոն մարդ:

Մենք Մերձավոր և Միջին Արևելք ասելով հասկանում ենք Ասիայի և Աֆրիկայի այն շրջանը, որի մեջ մտնում են՝ Թուրքիան, Իրանը, Աֆղանստանը, Սիրիան, Լիբանանը, Իրաքը, Հորդանանը, Սաուդյան Արաբիան, Եգիպտոսը, Եմենը և Իսրայելը, ինչպես նաև Անգլիայի գաղութային տիրապետություններն ու պրոտեկտորատները Արաբական թերակղզում՝ Ադենը, Օմանը (Մասկատը), Պայմանագրական Օմանը, Կատարը, Կուվեյտը, Կիպրոս կղզին Միջերկրական ծովում, Բահրեյնյան կղզիները Պարսից ծոցում:

Մերձավոր և Միջին Արևելքի երկրները հսկայական տնտեսական նշանակություն ունեն: Այստեղ աճում է բարձրորակ բամբակ, ցորեն, եգիպտացորեն, ծխախոտ, արմավ և ցիտրուսներ, որոնք մեծ քանակությամբ արտահանվում են Եվրոպա:

Մերձավոր և Միջին Արևելքում նավթի հարուստ պաշարների հայտնաբերումից հետո այդ շրջանի տնտեսական նշանակությունը շատ ավելի բարձրացավ: Այստեղ, առավելապես Պարսից ծոցի ավազանում (Իրան, Իրաք, Կուվեյտ, Սաուդյան Արաբիա) է գտնվում ամբողջ կապիտալիստական աշխարհի նավթի ուսումնասիրված պաշարների մինչև $3/4$: Ըստ Եվրոպական Էկոնոմիկական Համագործակցության կազմակերպության հաշվումների՝ այդ պաշարները կազմում են 33 միլիարդ տոննա: Նավթից բացի, Մերձավոր և Միջին Արևելքի ընդերքը հարուստ է գունավոր մետաղներով՝ քրոմով, պղնձով, կապարով, բարիտով (Թուրքիա, Սիրիա, Սաուդյան Արաբիա), մանգանով, ֆոսֆորիտներով (Եգիպտոս, Հորդանան), ոսկով (Սաուդյան Արաբիա), քարածխով, ասֆալտով, աղով (Իրաք, Լիբանան), բրոմով, կալիական աղերով (Իսրայել), մարգարիտով, սադաֆով (Եմեն): Հորդանանում վերջերս հայտնաբերվել է նաև ուրան:

Իմպերիալիստական պետությունների էքսպանսիան Մերձավոր և Միջին Արևելք հատկապես ուժեղացավ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո: Այդ շրջանի բնական հարստությունների և աշխատավորության լկտի շահագործման միջոցով գերշահույթներ կորզելու ձգտումը օտարերկրյա մոնոպոլիստներին ձգում է դեպի Մերձավոր և Միջին Արևելք, մի շրջան, որի



վրայով անցնում են համաշխարհային նշանակություն ունեցող առևտրական ճանապարհներ ու կոմունիկացիաներ: Դրա հետ մեկտեղ իմպերիալիստական տերությունները և, առաջին հերթին, ԱՄՆ-ն այդ շրջանը դիտում են որպես ՍՍՌՄ-ի և ժողովրդա-դեմոկրատական երկրների վրա հարձակվելու համար կարևորագույն ռազմական պլացդարմ:

Մերձավոր և Միջին Արևելքը առաջնակարգ նշանակություն ունի կապիտալիստական երկրները նավթով մատակարարելու գործում: Պատահական չէ, որ արևմտյան մամուլը Մերձավոր և Միջին Արևելքը սովորաբար անվանում է Արևմուտքի «նավթային ռեզերվուար»:

Նավթահանքերի շահագործմանը այս շրջանում հիմք է դրվել մեր դարի սկզբին: Ավելի պակաս քան կես դարում այս շրջանը նավթի հանույթով աշխարհում գրավեց առաջին տեղերից մեկը և այժմ զիջում է միայն Միացյալ Նահանգներին, իսկ նավթի պաշարներով նրանից շատ ավելի հարուստ է: Եթե մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը Մերձավոր և Միջին Արևելքում արդյունահանվում էր ոչ ավելի, քան 16 միլիոն տոննա նավթ, ապա 1945 թվականին արդյունահանվեց արդեն 27 միլիոն տոննա, 1948 թվականին՝ 58 միլիոն, 1950 թվականին՝ 88,5 միլիոն, 1951 թվականին՝ 97 միլ., 1952 թվականին՝ 106 միլ., 1953 թվականին՝ 122 միլ., 1954 թվականին՝ 136 միլ., 1955 թվականին՝ 162 միլ. տոննա, իսկ 1956 թվականին սև ոսկու արդյունահանումը հասավ 175 միլիոն տոննայի:

Բայց Մերձավոր և Միջին Արևելքի երկրների այդ հիմնական բնական հարստությունը չի պատկանում իր իսկական տերերին՝ արաբներին և իրանցիներին, այլ զանազան անիրավահավասար, ստրկացուցիչ համաձայնագրերի և կոնցեսիաների միջոցով փաստորեն զավթված է և գտնվում է անգլո-ամերիկյան նավթային մոնոպոլիաների ձեռքում:

Ինչպես ցույց են տալիս ամերիկյան պաշտոնական աղբյուրները, նավթային մոնոպոլիաները ԱՄՆ-ում ներդրված կապիտալի դիմաց ստանում են տարեկան 10 տոկոս շահույթ, Լատինական Ամերիկայում՝ 25 տոկոս, իսկ Մերձավոր և Միջին Արևելքում՝ 75 տոկոս: Հետպատերազմյան 10 տարվա ընթացքում ԱՄՆ-ի նավթային ընկերությունները Մերձավոր և Միջին Արևելքի երկրներից դուրս են կորզել, բոլոր հարկերի և կոնցեսիոն տոկոսների վճարումից հետո, 8 միլիարդ դոլլար զուտ շահույթ:

Մերձավոր և Միջին Արևելքի ժողովուրդների բնական հարստությունների և աշխատուժի վայրագ շահագործումը ԱՄՆ-ի և Անգլիայի խոշորագույն նավթային կոնցեռններին հեքիաթային շահույթներ է բերում: Այսպես, օրինակ, ամերիկյան «ԱՐԱՄԿՈ» ընկերությունը, որի կոնցեսիոն տարածությունը կազմում է Սաուդյան Արաբիայի ամբողջ տերիտորիայի $2/3$-ը և որի կոնցեսիայի ժամկետը լրանում է միայն... 2005 թվականին, հում նավթի վաճառքից 1955 թվականին զուտ շահույթ է ստացել 530 միլիոն դոլլար: Կուվեյտ իշխանությունում գործող անգլո-ամերիկյան «Կուվեյտ օյլ կոմպանի»-ն, որի կոնցեսիոն ժամկետը նույնպես հաջորդ դարում է լրանում, 1955 թվականին ստացավ 530 միլիոն դոլլար զուտ շահույթ: Մերձավոր և Միջին Արևելքում անգլիական նավթային մոնոպոլիաների շահույթները միայն 1955 թվականին կազմեցին ավելի քան 600 միլիոն ֆունտ ստեռլինգ:

Մերձավոր և Միջին Արևելքի նավթի մեծ մասն արտահանվում է Արևմտյան Եվրոպա և, առաջին հերթին՝ Անգլիա ու Ֆրանսիա: Այս տեսակետից

մեծ է Սուեզի ջրանցքի դերը։ Վերջին տարիներին նա փաստորեն վերածվել է մի հսկայական նավթամուղի։ Պաշտոնական տվյալներով 10 տարվա (1946—1955) ընթացքում Սուեզի ջրանցքով անցել է 106 հազար նավ, որոնց կեսից ավելին նավթատար տանկերներ։ 1955 թվականին ջրանցքով տարվել է 67 միլիոն տոննա նավթ։

Բացի ռազմա-ստրատեգիական և գաղութարարական նկատառումներից, Սուեզի ջրանցքի վրա օտարերկրյա վերահսկողության պահպանումը իմպերիալիստներին հնարավորություն էր տալիս իրենց համար շահավետորեն կարգավորել մերձավոր արևելյան նավթի հոսանքը։ Եգիպտոսի կողմից Սուեզի ջրանցքի ազգայնացումը վերջ դրեց այդ ծովային մեծ ճանապարհի մենաշնորհ օգտագործմանը օտարերկրյա գաղութարարների կողմից։

***

Մերձավոր ու Միջին Արևելքի երկրներում վերջին տարիներս տեղի են ունենում կարևոր իրադարձություններ։ Թոթափելով գաղութարարների լուծը և անկախություն նվաճելով՝ Եգիպտոսը, Սիրիան, Լիբանանը, Հորդանանը, Լիբիան և Սուդանը պայքարում են պետական ինքնուրույն զարգացման և ազգային սուվերենության ամրապնդման համար։ Մերձավոր Արևելքի ժողովուրդների պայքարը տեղի է ունենում միջազգային ասպարեզում՝ հօգուտ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի նոր փոխհարաբերության պայմաններում։ Այդ պայքարի վրա իր բարերար ազդեցությունն են թողնում ՍՍՌՄ-ում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում կոմունիստական ու սոցիալիստական շինարարության վիթխարի հաջողությունները, նրանց հետևողական, խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը, Հարավ-արևելյան Ասիայում, Աֆրիկայում և երկրագնդի մյուս շրջաններում գաղութային սիստեմի հետագա քայքայումը։

Արաբական ժողովուրդների հակագաղութային հաջող պայքարն առաջ բերեց ներքին ռեակցիայի և օտարերկրյա իմպերիալիստների կատաղությունը։ Անգլո-ֆրանսիական ու իսրայելյան իմպերիալիստները, ԱՄՆ-ի թողտվությամբ ագրեսիվ պատերազմ սանձազերծեցին Եգիպտոսի դեմ։ Դեռ նոր պարտություն կրած իմպերիալիստները դիմում են նոր դավադրությունների։ Ամերիկյան իմպերիալիզմը օգտվելով Անգլիայի և Ֆրանսիայի դիրքերի թուլացումից՝ հանդես եկավ Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում գաղութակալական ագրեսիվ նոր ծրագրով՝ «էյզենհաուերի դոկտրինայով»։ Ամերիկյան իմպերիալիստների բացահայտ միջամտությամբ Հորդանանի ռեակցիոն ուժերը հարձակում սկսեցին դեմոկրատական, հայրենասիրական տարրերի դեմ, կիրառելով ամենավայրենի ռեպրեսիաներ։ Վերջերս ստեղծված Իբրահիմ Հաշիմի կառավարությունը հենվում է ներքին ռեակցիայի և ամերիկյան միջամտության վրա։ Չնայած ծանր պայմաններին՝ Հորդանանի ժողովրդական մասսաները չեն դադարեցնում պայքարը ներքին և արտաքին թշնամիների դեմ։

Ազատասեր սիրիական ժողովուրդը ձախողեց գաղութարարների ագրեսիվ պլանները, որոնք քաղաքական ճնշման, ռազմական սպառնալիքների, հակապետական հեղաշրջումների, Սիրիայի սահմաններին մոտ թուրքական և իրաքական զորքեր կուտակելու միջոցով փորձում էին ստիպել նրան մտնելու Բաղդադի ագրեսիվ պակտի մեջ։ Սիրիայի ներկայիս քաղաքական իրադրու-



թյունը վկայում է, որ նա ընթանում է ազգային վերելքի ուղիով և, չնայած իմպերիալիստների ու ներքին ռեակցիայի նենգ մեքենայություններին, ձգտում է ամրապնդել այն նվաճումները, որ ձեռք են բերվել ազգային ազատության համար մղած ծանր պայքարում։

Մերձավոր և Միջին Արևելքի ժողովուրդների ազգային-ազատագրական հուժկու շարժման և գաղութային սիստեմի լրիվ տրոհման անխուսափելի սպառնալիքի տակ, իմպերիալիստները ձգտում են ամեն գնով պահպանել իրենց տնտեսական ու քաղաքական դիրքերը թույլ զարգացած երկրներում։ Այդ երկրների վրա ավելի ու ավելի մեծ ճնշում են գործադրում անգլո-ամերիկյան իմպերիալիստները։ Հենց այդ նպատակն է հետապնդում Վաշինգտոնի և Լոնդոնի կողմից կիրառվող ռազմական բլոկների ստեղծման քաղաքականությունը, մասնավորապես իմպերիալիստների կազմակերպած ագրեսիվ Բաղդադի պակտը, որը ո՛չ միայն ռազմա-քաղաքական խմբավորում է, այլև Մերձավոր և Միջին Արևելքի թույլ զարգացած երկրների ժողովուրդների տնտեսական բիրտ շահագործման նոր արտահայտություն։

Բաղդադի պակտը, որին հիմք ծառայեց 1955 թվականի փետրվարի 24-ին Իրաքի մայրաքաղաք Բաղդադում ստորագրված թուրք-պակիստանյան ռազմական համաձայնագիրը, պետք է իր մեջ միավորեր Մերձավոր Արևելքի բոլոր երկրներին։ Սակայն այդ շրջանի միայն չորս պետություններ (Թուրքիա, Իրաք, Պակիստան, Իրան), որտեղ ուժեղ է անգլո-ամերիկյան ազդեցությունը, մտան այդ խմբավորման մեջ։ Մերձավոր և Միջին Արևելքի երկրների գերակշռող մեծամասնությունը և համարյա ամբողջ արաբական աշխարհը (բացի Իրաքից) վճռականորեն հրաժարվեց մասնակցել Բաղդադի պակտին, որը Եգիպտոսի պրեզիդենտ Աբդել Նասերը իրավացիորեն ժողովուրդների բանտ անվանեց։ Բաղդադի պակտի նկատմամբ բացասական վերաբերմունքը վառ կերպով արտահայտվեց բոլոր արաբական երկրներում։ Ութ հազար սիրիացիների մեջ անցկացված հանրաքվեն ցույց տվեց, որ ագրեսիվ բլոկին մասնակցելու դեմ արտահայտվեց 7179 մարդ, ձեռնպահ մնաց 815 մարդ և պակտի օգտին արտահայտվեցին միայն 6 հոգի։ Մինչև անգամ այն երկրներում, որոնց կառավարողները համաձայնվեցին մտնել Բաղդադի պակտի մեջ, ավելի ու ավելի է ծավալվում ժողովրդական շարժումը ագրեսիվ բլոկից դուրս գալու և անկախ քաղաքականություն վարելու օգտին։

Չնայած արաբական ժողովուրդների դիմադրությանը՝ իմպերիալիստներն ամեն կերպ փորձում են ամրապնդել Բաղդադի դաշինքը։

Այս տարվա հունիսի 3-ից 6-ը Պակիստանի մայրաքաղաք Կարաչիում տեղի ունեցավ Բաղդադի պակտի խորհրդի հերթական սեսիան, որին մասնակցեցին Թուրքիայի, Իրանի, Իրաքի, Պակիստանի պրեմիեր մինիստրները, Անգլիայի արտաքին գործերի մինիստր Լլոյդը և ամերիկյան հատուկ դիտորդ, պետական քարտուղարի տեղակալ Հենդերսոնը։ Սեսիայի որոշումներից մեկն այն էր, որ ԱՄՆ-ը պաշտոնապես միացավ Բաղդադի պակտի ռազմական հանձնաժողովին։ Այսպիսով ԱՄՆ-ի միացումը Բաղդադի պակտին ավելի ակներև դարձրեց այդ ռազմական դաշինքի ագրեսիվ բնույթը և սրեց լարվածությունը Մերձավոր և Միջին Արևելքում։ Հայտնի է նաև, որ Կարաչիում որոշում է ընդունվել Բաղդադում գտնվող ռազմական պլանավորման միացյալ շտաբի կազմի ավելացման, ինչպես նաև այդ շրջանում օդանավակայանների և ռադարային հարմարանքների շինարարության արագացման

մասին։ Եթե 1956 թվականի ապրիլին Բաղդադի պակտի մասնակից երկրները
ունեին 58 դիվիզիա զորք՝ 1 միլիոն մարդ ընդհանուր թվով, ապա նախատես-
վում է 1960 թվականին ունենալ արդեն 78 դիվիզիա՝ մեկ ու կես միլիոն
զինվորով։

Իմպերիալիստական տերությունների և նրանց վասալների՝ Թուրքիայի
և Իրաքի փորձերը սպառնալիքների ու շանտաժների միջոցով ահաբեկել
արաբական երկրներին և նրանց կախման մեջ պահել իրենցից, ստիպեցին
Եգիպտոսին և Սիրիային երկկողմանի ռազմական համաձայնագիր ստորա-
գրել, որի նպատակն է օգնել միմյանց, համատեղ ջանքերով պաշտպանել
իրենց ազգային անկախությունը և տերիտորիալ ամբողջականությունը։ Այդ
պայմանագրին միացավ նաև Սաուդյան Արաբիան։ Երեք պետությունների
ղեկավարների՝ Եգիպտոսի պրեզիդենտ Նասերի, Սիրիայի պրեզիդենտ Կուաթ-
լիի և Սաուդյան Արաբիայի թագավոր Սաուդի համատեղ հայտարարությունը
վկայում է ագրեսիվ բլոկներին չմասնակցելու, բոլոր երկրների հետ խաղա-
ղության և համագործակցության քաղաքականություն վարելու նրանց վճռա-
կանության մասին։

Գաղութարարների դեմ ազատության և ազգային անկախության համար
մղվող հաջող պայքարի փայլուն օրինակ տվեց եգիպտական հերոս ժողո-
վուրդը։ Հենվելով եգիպտական ժողովրդի բոլոր խավերի օժանդակության
վրա՝ պրեզիդենտ Նասերը 1956 թվականի հուլիսի 26-ին հռչակեց Սուեզի
ջրանցքի ազգայնացումը։

Ագրեսիվ պատերազմ սկսելով Եգիպտոսի դեմ՝ Անգլիան, Ֆրանսիան և
Իսրայելը փորձեցին ուժով զավթել Սուեզի ջրանցքը և վերականգնել իրենց
գերիշխող դիրքերն այդ շրջանում, ապահովել գաղութային արտոնությունները
Մերձավոր և Միջին Արևելքում։ Սակայն իմպերիալիստների պլանները ձա-
խողվեցին։ Եգիպտական ժողովրդի անվեհեր պայքարը, Սովետական Միու-
թյան և մյուս խաղաղասեր պետությունների հաստատ և վճռական դիրքը
խափանեցին իմպերիալիստների ավանտյուրիստական պլանները։ Ագրեսոր-
ները ռազմական, տնտեսական և բարոյա-քաղաքական ծանր պարտություն
կրեցին։ Սուեզի ավանտյուրան Անգլիայի և Ֆրանսիայի հասարակական կար-
ծիքը գնահատեց որպես «մեծ հիմարություն»։

Ազգային-ազատագրական շարժումը Մերձավոր և Միջին Արևելքի եր-
կըրներում օրըստօրե ընդունում է ավելի կազմակերպված ու ավելի մասսա-
յական բնույթ։ Այդ պայքարի ժամանակակից էտապում արդեն որպես որո-
շակի ուժ հանդես է գալիս բանվոր դասակարգը, որը ակտիվ դեր է սկսում
խաղալ այդ երկրների կյանքում։

Արդյունաբերական բանվորների թիվը Մերձավոր և Միջին Արևելքում
կազմում է ավելի քան 3 միլիոն մարդ, որից Եգիպտոսում՝ մեկ միլիոնից
ավելի, Թուրքիայում՝ մեկ միլիոն, Իրանում՝ 600 հազարից ավելի, Սիրիա-
յում և Լիբանանում՝ 200 հազար, Աֆղանստանում՝ 90 հազար, Իրաքում՝ 50
հազար, Հորդանանում՝ ավելի քան 25 հազար մարդ։ Դաժան հետապնդում-
ների ծանր պայմաններում կոմունիստական և բանվորական պարտիաներն
ավելի ու ավելի են ուժեղացնում իրենց գործունեությունը՝ գաղութարարների
և ներքին ռեակցիայի դեմ պայքարի բարձրացող դեմոկրատական, հակաիմ-
պերիալիստական ուժերի համախմբման համար։ Այդ պայքարի բովում
ստեղծվում է ամերիկա-անգլիական իմպերիալիստների դեմ Մերձավոր և



Միջին Արևելքի բոլոր երկրների միասնությունը, ամրապնդվում են այդ եր-
կըրների ազգային-ազատագրական շարժման կապերը համաշխարհային դե-
մոկրատական շարժման հետ։

***

ԱՄՆ-ի տնտեսական և քաղաքական էքսպանսիան Մերձավոր և Միջին
Արևելքի երկրներում սկսվել էր դեռևս մինչև երկրորդ համաշխարհային պա-
տերազմը։ Բայց այն ժամանակ ամերիկյան ներթափանցումը դեռևս այդպիսի
լայն ծավալ չէր ստացել, ինչպես այժմ, քանի որ այդ շրջանի բոլոր հրամա-
նատարական դիրքերը գտնվում էին Անգլիայի ձեռքում։ Սակայն, երկրորդ
համաշխարհային պատերազմից հետո, պատկերը փոխվեց։ Թուլացած Անգ-
լիան այլևս ի վիճակի չէր կանխել ամերիկյան նավթային մոնոպոլիաների
օրըստօրե ուժեղացող ճնշումը։ Վաշինգտոնյան «բարեկամները» սկսեցին
այստեղից արագորեն դուրս մղել իրենց անգլիական մրցակիցներին։ Հետ-
պատերազմյան տարիներին Պարսից ծոցի շրջանում նավթի արդյունահան-
ման մեջ ամերիկյան մոնոպոլիաների բաժինը 16 տոկոսից բարձրացավ մին-
չև 60 տոկոսի, իսկ անգլիական բաժինը 80 տոկոսից իջավ մինչև 30 տոկոս։

Ջգտելով խոչընդոտել ԱՄՆ-ի ներխուժմանը՝ Անգլիան ամեն կերպ հեն-
վում է նախկինում ձեռք բերած իր քաղաքական, տնտեսական և ռազմական
դիրքերի, գաղութային ժողովուրդներին կողոպտելու բազմադարյան փորձի
վրա, Մերձավոր և Միջին Արևելքի որոշ երկրներում խոշոր ազդեցություն
ունեցող ֆեոդալական ընտանիքների հետ իր վաղեմի կապերի վրա։

Անգլո-ամերիկյան կատաղի մրցակցությունը և հակասություններն ըն-
դունում են ավելի ու ավելի լայն ծավալ։ Իրենց գաղութակալական նպատակ-
ները իրագործելու համար նրանք դիմում են բոլոր միջոցներին, կազմակեր-
պում են ամեն տեսակի պրովոկացիաներ, կաշառում են պետական և քաղա-
քական գործիչներին, իրենց վարձու գործակալների լայն ցանցի միջոցով
կազմակերպում են խռովություններ, պետական հեղաշրջումներ, հրահրում են
ազգային և կրոնական ընդհարումներ և թշնամանք արաբական և մյուս ժո-
ղովուրդների միջև։ Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում կատարված բազ-
մաթիվ հանցագործությունների հետքերը տանում են Վաշինգտոն և Լոնդոն։
Բուրժուազիայի բոլոր նենգ մեթոդներն ու ձևերը գործի են դրվում պահպա-
նելու համար իրենց շահավետ դիրքերը, կամ դրանք մեկը մյուսի հաշվին
ընդարձակելու համար։ Փաստերը ցույց են տալիս, որ վերջին ժամանակներս
այդ բոլոր կեղտոտ գործերում ամերիկյան իմպերիալիստները ո՛չ միայն չեն
զիջում անգլիական գործակիցներին, պետական հեղաշրջումների ու շանտաժի
«փառաբանված» անգլիական վարպետներին, այլև գերազանցում են նրանց։
Այդ են ապացուցում Սիրիայում, Հորդանանում և այլ երկրներում հետպա-
տերազմյան տարիներին կատարված շատ իրադարձությունները։

Գաղութարարները ազգամիջյան թշնամություն են բորբոքում արաբների
ու հրեաների, քրդերի ու արաբների, թուրքերի ու քրդերի միջև, որոնք հա-
ճախ արյունահեղ ընդհարումների են հասնում։ Իմպերիալիստներն ամեն
կերպ սրում են հակասությունները Անգլիայի հետ սերտորեն կապված և
Իրաքում ու Հորդանանում կառավարող Հաշիմիտների ու ԱՄՆ-ի հետ կապված
Սաուդյան Արաբիայում թագավորող Սաուդիտների դինաստիաների միջև։

ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի իմպերիալիստները վերջին տարիներին

բոլոր միջոցներով բորբոքում էին արաբա-իսրայելական կոնֆլիկտը, խոչընդոտում էին Պաղեստինի պրոբլեմի, ինչպես նաև արաբ-փախստականների հարցի խաղաղ և իրավացի լուծմանը, այդ ամենը օգտագործելով մերձավորարևելյան երկրները իրենց վերահսկողությանը ենթարկելու համար։

Պաղեստինի անգլիական մանդատի վերացման և այն երկու՝ արաբական ու հրեական անկախ պետությունների բաժանելու մասին ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի 1947 թվականի նոյեմբերի 29-ի որոշման համաձայն 1948 թվականի մայիսին ստեղծվեց Իսրայելի պետությունը։ Բայց Իսրայելում կազմվեց ռեակցիոն, հակաժողովրդական կառավարություն, որի գլուխ կանգնեց դեպի ամերիկյան իմպերիալիստները կողմնորոշվող սիոնիստական Մապայ պարտիայի լիդեր Բեն-Գուրիոնը։

Ագրեսիվ քաղաքականություն վարելով Եգիպտոսի և արաբական մյուս երկրների դեմ՝ իմպերիալիստներն իրենց նպատակների համար օգտագործում են Իսրայելի պետությունը, նրա տերիտորիան և մարդկային ռեսուրսները։ Դրան նպաստում է Իսրայելի կառավարող շրջանների հակաարաբական ագրեսիվ, հարձակողական դիրքը։ Պատահական չէր, որ ագրեսորները Եգիպտոսի դեմ առաջինը պատերազմ հրահրեցին Իսրայելի պետության միջոցով։

Փաստերը ցույց տվին, որ Անգլիայի, Ֆրանսիայի և Իսրայելի ագրեսորների թիկունքում կանգնած էին ամերիկյան իմպերիալիստները, որոնք ամեն կերպ աջակցում էին նրանց ավանտյուրիստական պլանների իրագործմանը։

Սովետական կառավարությունը հանդես եկավ Եգիպտոսի պաշտպանության համար և վճռականորեն նախազգուշացրեց Անգլիային, Ֆրանսիային և Իսրայելին։ Աշխարհի տարբեր երկրներում, մասնավորապես Սովետական Միությունում, Չինաստանում և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրներում հարյուր հազարավոր կամավորներ զավթիչների դեմ կռվի գնալու ցանկություն հայտնեցին։ Սովետական Միության հաստատ դիրքը վճռական նշանակություն ունեցավ ռազմական գործողությունների դադարեցման և ագրեսորների սանձահարման գործում։

Իր հայտարարության մեջ Սովետական կառավարությունը նշում էր, որ որպեսզի Մերձավոր և Միջին Արևելքը առաջիկայում ևս չդառնա ռազմական կոնֆլիկտների և երկպառակությունների ասպարեզ, հարկավոր են ոչ թե առանձին տերությունների անջատ գործողություններ ՄԱԿ-ի թիկունքում, որոնք սրում են իրադրությունը, այլ, ընդհակառակն, անհրաժեշտ են մեծ տերությունների միացյալ ջանքեր, որոնք կամրապնդեն խաղաղությունը և կմեղմացնեն լարվածությունը Մերձավոր և Միջին Արևելքում։

Ամերիկյան իմպերիալիստները փորձում են Մերձավոր Արևելքում ԱՄՆ-ի գերիշխանությունը հաստատելու ավանտյուրիստական պլանը իրագործել «կոմունիստական վտանգից» այդ շրջանն իբր թե պաշտպանելու քողի տակ։ Սակայն նրանց չի հաջողվի խաբել համաշխարհային հասարակական կարծիքը։ Ամերիկյան ժողովրդի մեծ զավակ Լինկոլնը իր ժամանակին ասել է, որ բոլոր մարդկանց հիմարի տեղ կարելի է դնել որոշ ժամանակ և որոշ մարդկանց ընդմիշտ, բայց բոլոր մարդկանց հիմարի տեղ դնել միշտ՝ այդ հնարավոր չէ։

Արաբական ժողովուրդները շատ շուտ հասկացան «Էյզենհաուերի դոկտրինայի» իսկական բնույթը։ Եգիպտական «Ալ-Գումխուրիա» թերթը այդ կապակցությամբ գրում է, որ «Դալլեսի-Էյզենհաուերի դոկտրինան» ավելի չարագուշակ քաղաքականություն է, քան այն, որ վարում էր անգլիական իմպերիալիզմը։



Մերձավոր և Միջին Արևելքի ժողովուրդները վճռականորեն մերժում են «Դալլեսի-Էյզենհաուերի դոկտրինան», որպես գաղութակալության և ագրեսիվ պլանների նոր արտահայտություն։ Արաբական երկրների հասարակայնությունը աչալրջորեն հետևում է ԱՄՆ-ի մանյովրներին, որոնց նպատակն է պառակտել արաբական երկրների ճակատը և մեկ առ մեկ նրանց կապել ամերիկյան մարտակառքին։ Ամերիկյան իմպերիալիստների ճնշման տակ Լիբանանի կառավարության մարտի 16-ի որոշումը «Էյզենհաուերի դոկտրինան» ընդունելու մասին, բուռն զայրույթ առաջացրեց երկրի աշխատավոր մասսաների մեջ։ Լիբանանի ժողովրդի պայքարն իր երկրի անկախությունը ոտնահարող իմպերիալիստների և նրանց կամակատար կառավարության գործողությունների դեմ մինչև օրս էլ շարունակվում է։ Որքան էլ ամերիկյան գաղութարարները ձգտեն դեմագոգիկ խոստումներով թաքցնել իրենց քաղաքականության իսկական էությունը, նրանք արաբական ժողովրդին չեն կարող խաբել։ «Ամեն մի մրտվածը դարբին չէ»,— ասում է արաբական առածը։

Մերձավոր և Միջին Արևելքի ժողովուրդների իսկական բարեկամը Սովետական Միությունն է։ Իմպերիալիստական գրչակները զուր են ջանում արաբական արևելքի ժողովուրդներին գժտեցնել Սովետական Միության հետ։ Վերջերս Եգիպտոսի պրեզիդենտ Նասերը դիմելով մի խումբ ամերիկյան ժուռնալիստների՝ հայտարարեց. «Հասարակական կարծիքը չի հավատում ձեզ, երբ դուք ձգտում եք ներշնչել նրան, որ Սովետական Միությունը իբր թե Եգիպտոսի թշնամին է։ Ինչ էլ որ դուք ասեք և ՍՍՌՄ-ի դեմ ձեր պրոպագանդիստական կամպանիայում ինչ էլ որ ձեռնարկեք, ձեզ Եգիպտոսում չեն հավատա»։

Սովետական Միության և Մերձավոր ու Միջին Արևելքի երկրների բարեկամական հարաբերությունները ավելի են բարելավվում և ամրապնդվում։ Դրա մասին են վկայում սովետական պետական գործիչների և պառլամենտական պատվիրակությունների ուղևորությունները Եգիպտոս, Սիրիա, Լիբանան, Իրան և Աֆղանստան։ Սիրիայի պրեզիդենտ Շուքրի Կուաթլիի, Եմենի թագաժառանգ Սեյֆ-ուլ-Իսլամ Մոհամմեդ էլ-Բադրիի, Աֆղանստանի պրեմիեր-մինիստր Մոհամմեդ Դաուդի, Իրանի շահնշահ Մոհամմեդ Ռեզա Փեհլևիի և այդ երկրների մյուս պետական գործիչների ժամանումը Սովետական Միություն ու խաղաղ գոյակցության սկզբունքների վրա հիմնված բանակցությունները նպաստեցին Սովետական Միության և այդ երկրների բարի-դրացիական հարաբերությունների էլ ավելի ամրապնդմանը և փոխըմբռնմանը։

Հաստատ կիրառելով լենինյան խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը՝ Սովետական Միությունը կենսականորեն շահագրգռված է, որպեսզի Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում ապահովվի տնտեսական բարգավաճումն ու խաղաղությունը, ամրապնդվի այդ շրջանի երկրների անկախությունը։

# ՈՒՇԱԳՐԱՎ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆ ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԳՅՈՒՂՈՒՄ

Մեր աչքի առջև օր-օրի վերափոխվում է կոլտնտեսային գյուղը։ Անցյալից ժառանգած գետնախորշ տները, հում աղյուսով կառուցված մութ ու խարխուլ խրճիթները հետզհետե անհետանալով՝ իրենց տեղը զիջում են բազալտով ու վարդագույն տուֆով կառուցված գեղեցիկ ու վարդագույն... 

Մեր աչքի առջև օր-օրի վերափոխվում է կոլտնտեսային գյուղը։ Անցյալից ժառանգած գետնախորշ տները, հում աղյուսով կառուցված մութ ու խարխուլ խրճիթները հետզհետե անհետանալով՝ իրենց տեղը զիջում են բազալտով ու վարդագույն տուֆով կառուցված գեղեցիկ շինություններին։ Այժմ սովետական գյուղն աչքի է ընկնում իր բարեկարգ ու ծառապատ փողոցներով, արտադրական ու հասարակական շենքերով, դպրոցով ու ակումբով, մանկապարտեզով ու մանկամսուրով, հիվանդանոցով ու բուժարանով, ռադիոհանգույցով ու մշտական կինոսարքավորումով։ Կոլտնտեսականների բնակարաններում ռադիոընդունիչների կողքին արդեն երևան են գալիս հեռուստատեսության ընդունիչներ։ Տարեցտարի աճում են կոլտնտեսությունների և կոլտնտեսականների եկամուտները։

Նոր գյուղի անվանի մարդիկ են՝ հանրային արտադրության մեջ աշխատանքային սխրագործություն կատարողը, ուսուցիչն ու բժիշկը, գյուղատնտեսն ու մեխանիզատորը։ Կոլտնտեսային զանգվածների ծոցից դուրս եկած տաղանդները՝ բանաստեղծը, երգիչը, երաժիշտը, նկարիչը, քանդակագործը իրենց ստեղծագործություններով աշխատանքի, Հայրենիքի, սիրո և մեր չքնաղ բնության գովքն են անում ու արժանանում հասարակության ուշադրությանը։

Կոլտնտեսային գյուղի նոր առօրյան արտացոլելու գործում մեծ դեր է խաղում տեղի մամուլը։ Այդ զգում են ո՛չ միայն պարտիական կազմակերպությունները, կոլտնտեսությունների ղեկավարները, այլև աշխատավորական լայն մասսաները։

Վերջին ժամանակներս մեր ռեսպուբլիկայի մի շարք խոշոր, նյութական մեծ հնարավորություններ ունեցող կոլտնտեսությունների վարչություններ և պարտիական բյուրոներ հանդես են բերել մի նոր նախաձեռնություն. սկսել են հրատարակել իրենց բազմատիրաժ տպագիր թերթը։ Ինքը՝ կյանքն է թելադրել նրանց դիմել այդ քայլին, որովհետև պատի թերթը լույս է ընծայվում մեկ օրինակ, որն անընդհատ, մինչև հաջորդ համարի լույս ընծայումը, կախված մնում է մեկ տեղում, արտելի վարչության գրասենյակի կամ ակումբի պատից։ Շատ կոլտնտեսականներ ու կոլտնտեսուհիներ, մանավանդ դաշտային աշխատանքի ժամանակ, հնարավորություն չեն ունենում ընթերցել իրենց պատի թերթը, որովհետև ամիսներով առիթ չի լինում նրանց այցելել գրասենյակ։ Մինչդեռ, յուրաքանչյուր աշխատավորի համար հետաքրքրական է իմանալ իրենց կոլտնտեսության դաշտերում, անասնապահական ֆերմաներում աշխատող մարդկանց կյանքն ու աշխատանքը, գյուղի առօրյան։ Բազմատիրաժ տպագիր թերթը յուրաքանչյուր աշխատավորի հնարավորություն է տալիս մշտապես հաղորդակից լինելու գյուղի և կոլտնտեսության առօրյային։

Բազմատիրաժներ հրատարակելու համար կոլտնտեսություններում հատուկ հաստիքներ չեն ստեղծվել գրական-խմբագրական աշխատանքի համար. այժմ գյուղում շատ կան ձեռնհաս, բանիմաց, նախաձեռնող ընկերներ, որոնք հաճույքով, հասարակական կարգով կատարում են խմբագրի պարտականությունը։ Իսկ տպագրական ծախսերը հոգում է կոլտնտեսության վարչությունը՝ կուլտուրական միջոցառումների համար նախատեսված գումարից։

Որպես գարնան կարապետ՝ մեր ռեսպուբլիկայում առաջինը հանդես եկավ Կոտայքի շրջանի Հրազդան գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության և կոլտնտեսության վարչության օրգան «Հրազդան» տպագիր բազմատիրաժ թերթը։ Տեղի ընկերների այդ նախաձեռնությունը արժանացավ պարտիայի Կոտայքի շրջանային կոմիտեի հավանությանը, իսկ շրջանային թերթի խմբագրության աշխատակիցները պատրաստակամություն հայտնեցին օգնել հրազդանցիներին՝ թերթում տպագրվող նյութերը որոշ գրական մշակման ենթարկելու և թերթը տեխնիկապես ձևավորելու գործում։

Հրազդանցիներից հետո սկսեցին բազմատիրաժ տպագիր թերթեր հրատարակել Աշտարակի շրջանի Օշական գյուղի, Շամշադինի շրջանի Բերդ գյուղի, Կրասնոսելսկի շրջանի Կրասնոսելսկ գյուղի, Նոր Բայազետի շրջանի Սարուխան գյուղի և այլ գյուղերի կոլտնտեսությունների վարչություններն ու պարտկազմակերպությունները։



Արդեն յոթերորդ ամիսն է, ինչ լույս է տեսնում «Հրազդան»-ը՝ առայժմ ամիսը մեկ համար, 400 օրինակ տիրաժով, այն հաշվով, որ ամեն մի կոլտնտեսային ընտանիք ստանա մեկ օրինակ։

Մեր ձեռքի տակ են «Հրազդան» թերթի համարները։ Հոդվածների հեղինակները ոչ թե գրականագետներ ու պրոֆեսիոնալ լրագրողներ են, այլ կոլտնտեսականներ ու կոլտնտեսուհիներ, գյուղի մտավորականներ, որոնք գրում են իրենց հաջողությունների ու թերությունների, իրենց կարիքների ու անելիքների մասին։ Այդ համարներում լույս տեսած թղթակցությունները ցույց են տալիս, որ բազմատիրաժ թերթն ավելի մոտ կանգնած լինելով կոլտնտեսային արտադրությանը՝ լայնորեն պրոպագանդում է առաջավորների փորձն ու գիտության նվաճումները, ցույց է տալիս դրանց արմատավորման ձևերը։ Նա օգնում է պարտիական կազմակերպությանն ու կոլտնտեսության վարչությանը՝ աշխատավորներին պարզաբանելու պարտիայի ու կառավարության որոշումները, ծավալելու սոցիալիստական մրցությունը և մոբիլիզացնելու մասսաներին լիովին օգտագործելու արտելի ներքին ռեզերվներն ու հնարավորությունները՝ ՍՄԿԿ XX համագումարի կողմից առաջադրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար։

Մեր ռեսպուբլիկայի գյուղի աշխատավորությունը մեծ գոհունակությամբ ընդունեց ընկ. Խրուշչովի առաջադրած խնդիրը՝ բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ առաջիկա տարիներին ԱՄՆ-ին հասնելու մասին։ Արձագանքելով Մոլդավական ՍՍՌ Ձադր-լունգի շրջանի գյուղատնտեսության աշխատողների դիմումին՝ 100 հեկտար տարածության դիմաց կաթի, մսի, բրդի արտադրանքն ավելացնելու մասին, Հայաստանի կոլտընտեսականներն ու սովետական տնտեսությունների աշխատողները պայքարում են պատվով կատարելու պարտիայի ու կառավարության առաջադրանքները անասնաբուծության զարգացման բնագավառում։ Այդ համաժողովրդական մեծ գործին ակտիվ մասնակցություն են ցույց տալիս նաև հրազդանցիները։ Կոլտնտեսության նախագահ Բ. Քոչարյանը հանդես գալով իրենց բազմատիրաժ թերթի էջերում՝ «Ձեր կոչն ընդունված է, ընկեր չադր-լունգցիներ» վերնագրով հոդվածում գրում է, որ կոլտնտեսության անասնապահները «վերանայելով իրենց պարտավորությունը, հանձն առան յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց 1957 թվականին արտադրել 40 ցենտներ միս, 200 ցենտներ կաթ... բտման տակ դնել 60 խոզ, 200 խոշոր և 1200 մանր եղջերավոր անասուն»։

«Հրազդան»-ի էջերում հանդես է եկել Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, կոլտնտեսության անվանի կթվորուհի Թ. Հովհաննիսյանը։ Իր փոքրիկ թղթակցությունում նա համոզիչ կերպով պատմում է, թե ինչպես անասունները լավ խնամելու շնորհիվ անցյալ տարի ինքը յուրաքանչյուր կովից ստացել է 200 կիլոգրամով ավելի կաթ, քան նախատեսված է եղել պլանով, իսկ առանձին կովերի կաթնատվությունը հասցրել է մինչև 2500 կիլոգրամի։ Ելնելով իր փորձից՝ Թ. Հովհաննիսյանը ընկերական խորհուրդ է տալիս համագյուղացիներին՝ ազնվորեն աշխատել հանրային տնտեսության մեջ, հոգատար խնամել անասունները և պայքարել Հայրենիքին ավելի շատ կաթ, միս, բուրդ տալու համար։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցությանն է նվիրված Շամշադինի շրջանի Բերդ գյուղի կոլտնտեսության բազմատիրաժ «Տաուշ» թերթում տպագրված Ա. Թումանյանի թղթակցությունը։ Նկարագրելով կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների մեջ առաջացած աշխատանքային խանդավառությունը՝ թղթակիցը նշում է, որ նրանք նպատակ են դրել այս տարի ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստանալ առնվազն 20 ցենտներ բերք, հասկավոր կուլտուրաների ցանքերի տարածության յուրաքանչյուր հեկտարից միջինը ստանալ 14 ցենտներ ցորեն ու գարի, 30 ցենտներ եգիպտացորեն։

Օշականը հիմնականում զբաղվում է այգեգործությամբ ու գինեգործությամբ։ Կոլտնտեսության եկամուտն անցյալ տարի եղել է հինգ միլիոն ռուբլի, որը գլխավորապես ստացվել է խաղողագործությունից ու գինեգործությունից։ Այդ նկատառումով էլ, բնականաբար, կոլտընտեսության բազմատիրաժ թերթը՝ «Օշականի խաղողագործը», որը լույս է տեսնում ամիսը երկու անգամ, իր էջերում ավելի շատ տեղ է տալիս այգեգործության հարցերին, կոլտնտեսականների ուշադրությունը դարձնում է խաղողի նոր այգիներ տնկելու, եղած այգիները լավ մշակելու խնդրի վրա։ Կոլտնտեսության նախագահ Ա. Գևորգյանը՝ «Մրցում են խաղողագործները» վերնագրով իր հոդվածում գրում է, որ հարևան Աշտարակ գյուղի կոլտնտեսության հետ մրցող օշականցիները պայքարում են՝ «348 հեկտար խաղողի այգիների ամեն մի հեկտարից ստանալ 60 ցենտներ միջին բերք, իսկ առանձին հեկտարների բերքատվությունը հասցնել 90—100 ցենտների»։

«Օշականի խաղողագործ» № 1 համարում տպագրված է Կ. Մնացականյանի ղեկավարած խաղողագործական օղակից մի շարք ընկերների նկարներ, այն ընկերների, որոնք ժամանակին ու բարձր որակով են կատարել

այգիների փորը և ազնիվ աշխատանքով պայքարում են խաղողի բերքի առատություն ստեղծելու համար։

Այգեգործության հարցերը հետագայում ևս ըստ արժանվույն լուսաբանվում են «Օշականի խաղողագործ»-ի էջերում, որն այդ թերթի հաջողված բաժիններից մեկն է։

Կրասնոսելսկի շրջանի Կրասնոսելսկ գյուղի Վորոշիլովի անվան կոլտնտեսության վարչության ու պարտկազմակերպության օրգան «Заветы Ильича» բազմատիրաժ թերթի առաջին իսկ համարում տպագրված թղթակցությունները ցույց են տալիս, որ թերթը հիմնականում բռնել է ճիշտ ուղի։ Նա կոլտնտեսականների ուշադրությունը հրավիրում է ցանքերը լավ մշակելու, բարձր բերք աճեցնելու, հանրային հոտի արտադրանքն ավելացնելու հարցերի վրա։

Հունիսին, երբ սկսվել էր հասկավոր կուլտուրաների ու կարտոֆիլի ցանքերի մշակման եռուն շրջանը, «Заветы Ильича»-ն հատուկ առաջնորդողով հանդես եկավ այդ հարցի շուրջ։ Նշելով այն փաստը, որ կոլտնտեսությունում 627 հեկտար աշնանացանից ընդամենը քաղհանված է 168 հեկտար, թերթը միաժամանակ կոչ է անում կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհիներին՝ օրինակելիորեն կազմակերպել ցանքերի մշակությունը, դրանով իսկ ապահովել հանրային դաշտերում բարձր բերք։

Վատ տպավորություն չի թողնում Նոր Բայազետի շրջանի Սարուխան գյուղի «Սարուխանի կոլտնտեսական» բազմատիրաժ թերթը։ Նրա առաջին համարում զետեղված շուրջ 15 թղթակցություններում և նամակներում խոսվում է առաջավոր դաշտավարների, անասնապահների, մեխանիզատորների գործերի մասին, այն մարդկանց մասին, որոնք անդուլ պայքարում են նյութական բարիքների առատություն ստեղծելու համար։

Կոլտնտեսային բազմատիրաժ թերթերը գովասանքով խոսելով Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության առաջադրանքներն անթերի կատարելու համար ակտիվ մարտնչողների մասին՝ միաժամանակ իրենց էջերում անողոքաբար խարազանում են հանրային գործում անազնվություն հանդես բերողներին, աշխատանքի կարգապահությունը խախտողներին ու լոդրերին, երևան են հանում գյուղում ու արտելում եղած թերություններն ու բացերը և աշխատավորությանը պայքարի կոչում դրանք վերացնելու համար։

Դաշտավարության, այգեգործության, անասնաբուծության զարգացման հարցերը առաջ քաշելուն զուգընթաց կոլտնտեսային բազմատիրաժ թերթերը իրենց էջերում զգալի տեղ են տալիս նաև գյուղի աշխատավորության կուլտուրական ու կենցաղային կյանքին վերաբերող հարցերին։

Խոսելով իրենց գյուղի բնակարանային շինարարության մասին՝ թղթակից Հ. Պետրոսյանը «Օշականի խաղողագործ»-ում գրում է. «Գնալով ունևոր ու բարեկեցիկ է դառնում մեր գյուղի կոլտնտեսականների կյանքը։ Անցյալ տարի 20-ից ավելի կոլտնտեսային ընտանիքներ փոխադրվեցին իրենց նորակառույց բնակարանները։ Այս գարնանից նոր բնակարանների կառուցմանը ձեռնամուխ են եղել ավելի քան 50 կոլտնտեսականներ»։

«Մեզ հուզող հարցերը» վերնագրով թղթակցությունում («Հրազդան») ընկ. Ս. Գալստյանը հիացմունքով է խոսում այն մասին, որ ջրմուղով գյուղ է բերվել Գեղամա լեռների սառնորակ ու վճիտ ջուրը, որից առատորեն օգտվում են գյուղացիները։ Բայց, որպեսզի ջուր վերցնելու համար մարդիկ ավելի կարճ տարածություն անցնեն և քիչ ժամանակ կորցնեն, թղթակիցը հարց է բարձրացնում գյուղական Սովետի առջև՝ ավելացնելու գյուղի փողոցներում եղած ծորակների թիվը։

Ֆիզկուլտուրան և սպորտը լայն տեղ են գտել գյուղում։ Հազարավոր տղաներ ու աղջիկներ սիրով են զբաղվում մարմնամարզությամբ, ըմբշամարտով, ֆուտբոլով, լողով, շախմատով և սպորտային այլ խաղերով։ Նրանք կոփվում են ֆիզիկապես՝ աշխատանքում հաջողություն ձեռք բերելու համար։ «Заветы Ильича» թերթը խոսելով իրենց կոլտնտեսությունում ֆիզկուլտուրայի ու սպորտի հաջողությունների մասին, պահանջում է կոլտնտեսության վարչությանը՝ հարմար տարածություն հատկացնել սպորտային հրապարակի համար, որը կսարքավորեն երիտասարդները իրենց ուժերով։

Սովետական գյուղի կուլտուրական աճի վկայությունն է, որ գյուղական Սովետի դեպուտատները Սովետի նիստի են հրավիրվում ոչ թե կատարածուի միջոցով, այլ իրենց գյուղի թերթում ազդ տպագրելով։

Կոլտնտեսային բազմատիրաժ թերթի հանդես գալը մեծ իրադարձություն է սովետական գյուղի կյանքում և ուրախալի երևույթ բոլորի համար։ Այդ թերթերից մեկի՝ «Հրազդան»-ի խմբագրությանն ուղղված իր սրտառուչ նամակում հայ անվանի վիպասան Ստ. Զորյանը գրում է.

«Կար ժամանակ, սովետականացումից առաջ, որ մեր գյուղերից շատերը թերթի երես էլ չէին տեսնում։

Իսկ հիմա Կոտայքում գտնվող Ձեր գյուղն ունի ակումբ, գրադարան, ստանում է ոչ միայն գրքեր ու թերթեր, այլև հրատարակում է իր սեփական թերթը... Այս ամենը վկայում է Ձեր գյուղի և գյուղացիների առաջադիմությունը, մի առաջադիմություն, որ մեծապես ուրախացնում է ինձ, և պետք է ուրախացնի բոլորին»։



Ներկայումս մեր ռեսպուբլիկայում լույս են տեսնում կոլտնտեսային յոթ բազմատիրաժ տպագիր թերթեր։ Հավանական է մի շարք խոշոր կոլտնտեսությունների կյանքն էլ կթելադրի ձեռնամուխ լինելու այդպիսի թերթերի հրատարակությանը։ Դրա համար կոլտնտեսություններն ունեն նյութական հնարավորություններ, որովհետև յուրաքանչյուր բազմատիրաժի տպագրության, թղթի և կլիշեների ծախսը տարեկան 3500—4000 ռուբլուց չի անցնում։

Ուրախալի է այն երևույթը, որ շրջանային թերթերի խմբագրությունները օգնում են բազմատիրաժ թերթերի խմբագրական կոլեգիաներին՝ ավելի հետաքրքրական ու գրավիչ թերթեր հրատարակելու գործում։ Սակայն սա չի նշանակում, թե նրանք իրենց վրա են վերցրել կոլտնտեսային բազմատիրաժների խնամակալի դերը։ Բոլոր դեպքերում՝ նյութերի թե՛ կազմակերպման, թե՛ ընտրության, թե՛ մշակման գործում բազմատիրաժների խմբկոլները պետք է հանդես բերեն սեփական նախաձեռնություն և լինեն ինքնուրույն։

Կոլտնտեսային բազմատիրաժների հիմնական թերությունը, որ աչքի է ընկնում առաջին իսկ հայացքից, այն է, որ նրանցում տպագրված նյութերը իրենց բովանդակությամբ ու ծավալով, իրենց մատուցման ձևերով շատ քիչ են տարբերվում շրջանային թերթերից։ Որպեսզի կոլտնտեսային բազմատիրաժներն ավելի հետաքրքրական լինեն և վառ կերպով արտացոլեն գյուղի առօրյան, անհրաժեշտ է հասնել այն բանին, որ այդ թերթերն իրենց դեմքով, բովանդակությամբ և արտաքին ձևավորումով տարբերվեն շրջանային թերթերից։ Մեր կարծիքով, կարիք չկա, որպեսզի կոլտնտեսային բազմատիրաժի բոլոր համարներում լինեն առաջնորդող հոդվածներ։ Երբեմն դրանց փոխարեն կարելի է տպագրել օրվա համար կարևոր նշանակություն ունեցող այս կամ այն թղթակցությունը։ Այնուհետև, բազմատիրաժների խմբագրական կոլեգիաները պետք է ձգտեն, որպեսզի թերթում տպագրվող հոդվածներն ու թղթակցությունները լինեն հակիրճ, սեղմ և ավելի շատ վերաբերեն կոլտնտեսության արտադրության, աշխատանքի կազմակերպման, գյուղի բարեկարգման ու կուլտուրայի հարցերին։ Մինչդեռ ներկայումս նրանց առանձին համարներում տպագրվում են նույնիսկ 120—150 տողանոց հոդվածներ, իսկ դա հնարավորություն չի տալիս ավելի շատ հեղինակներ ընդգրկել թերթում և բազմապիսի հարցեր բարձրացնել։

Կոլտնտեսային բազմատիրաժն ավելի հետաքրքրական կլինի և գործը կշահի, եթե նրանում տպագրվեն փոքրիկ ակնարկներ իրենց գյուղի ու կոլտնտեսականների կյանքից, զետեղվեն իրենց գյուղի սկսնակ գրողների հաջողված գործերը, իսկ այդպիսիք կան մեր գյուղերում։

Այս մեծ գործին մոտ պետք է կանգնի Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչությունը։ Կոլտնտեսային բազմատիրաժները տպագրվում են շրջանային տպարաններում, որոնք զուրկ են տարրական հարմարություններից։ Չկան տարբեր չափերի շրիֆտներ, բացակայում են զարդանիշներ, զանազան տեսակի գծեր, որոնք հնարավորություն չեն տալիս խմբագրական կոլեգիաներին ցանկացած չափի շարվածքներ կատարել, էջեր կապելիս օգտագործել զանազան գծեր ու զարդանիշներ՝ թերթն ավելի գեղեցիկ ձևավորելու համար։ Ռեսպուբլիկայի պոլիգրաֆ արդյունաբերության արհեստանոցները հնարավորություն ունեն և պարտավոր են օգնել շրջանային տպարաններին։ Պետք է հասնել այն բանին, որպեսզի այդ տպարաններն ունենան տարրական հարմարություններ շրջանային թերթերն ու կոլտնտեսային բազմատիրաժները ճաշակով ձևավորելու և գեղեցիկ տպագրելու համար։

Կոլտնտեսային բազմատիրաժ թերթերի աշխարհ գալը քաղաքական ու կուլտուրական մեծ իրադարձություն է սովետական գյուղում։ Պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրներից մեկն է՝ ճիշտ ուղղություն տալ այդ թերթերին, դրանք դարձնելով ավելի նպատակասլաց, օգտագործել տպագիր խոսքի ուժը պարտիայի ու կառավարության կողմից առաջադրված քաղաքական ու տնտեսական խնդիրները պատվով լուծելու համար։

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

«Երկու խոսք»-ում հենց իր նշած լուրջ խնդիրները։ Մասնավորապես, նրան չի հաջողվել քիչ թե շատ բավարար չափով բացահայտել ժամանակակից էտապում անգլո-ամերիկյան հակասություններն ու պայքարը հանուն նավթի։ Այստեղ բոլորովին չի զգացվում, որ հեղինակի հիմնական նպատակն է եղել տալ իմպերիալիստական պետությունների պայքարը Մերձավոր և Միջին Արևելքում նավթային կոնցեսիաներ ձեռք բերելու և իրենց գաղութային դիրքերը պահպանելու համար։

Այնուհետև անբավարար են լուսաբանված Մերձավոր և Միջին Արևելքի երկրների ժողովուրդների հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական ժամանակակից պայքարի հիմնական հարցերը, ինչպես պետքն է չեն մերկացված անգլո-ամերիկյան իմպերիալիստները՝ որպես այդ շարժումները ճնշողներ, ցույց չի տրված Մերձավոր և Միջին Արևելքի դերը իմպերիալիզմի հակասովետական ագրեսիվ պլաններում։ Հեղինակն այս գլուխներում պատմական իրադարձություններն ընթերցողին հաճախ մատուցել է բուրժուական օբյեկտիվիզմի դիրքերից, անխտեմ և խառնաշփոթ վիճակում, ավելի շատ խոսելով երկրորդական և ոչ թե հիմնական ու գլխավոր հարցերի մասին։ Այն դրականը, որ կա նշված գլուխներում, կորչում է նրանցում պարունակվող անճշտությունների, անհեթեթ մտքերի ու ավելորդաբանությունների, թերի ձևակերպումների, ոճական ու լեզվական աղաղակող անհարթությունների մեջ։

Խոսենք փաստերով։ Ընթերցողին երբեք չի կարող բավարարել «Անգլո-ամերիկյան իմպերիալիզմի հակասությունները երկրորդ համաշխարհային պատերազմից հետո» հարցի պարզաբանմանը նվիրված հեղինակի շարադրանքը։

Որո՞նք են ըստ հեղինակի «ԱՄՆ-ի տնտեսական կյանքում ծավալվող հետպատերազմյան ժամանակաշրջանի իրադարձությունները, որոնք հանդիսանում են Ամերիկայի (պետք է լինի ԱՄՆ-ի — Կ. Ս.) և Անգլիայի հետպատերազմյան ժամանակաշրջանի հակասությունների արմատները» (ընդգծումները մերն են — Կ. Ս., 165)։

Նախ նշենք, որ հենց այսպիսի հարցադրումը ինքնըստինքյան սխալ է, քանի որ միայն ԱՄՆ-ի տնտեսական կյանքում ծավալվող հետպատերազմյան ժամանակաշրջանի իրադարձությունները չեն կարող հանդիսանալ անգլո-ամերիկյան հակասությունների արմատները։ Բանը հենց այն է, որ հեղինակին չի հաջողվել ցույց տալ այդ հակասությունների արմատները, իր օգտագործած փաստացի նյութի հիման վրա ապացուցել, որ իմպերիալիստական խմբավորումներից յուրաքանչյուրին հատուկ են ներքին խոր հակասություններ, որ այդ հակասությունների պատճառը ոչ թե պատահական կռիվն է, երկպառակությունը, այլ «...տնտեսական շահերի անլուծելի ամենախոր արմատներ ունեցող ներհակություն իմպերիալիստական երկրների միջև»... (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 585)։

Հայտնի է, որ սոցիալիզմի վերածումը համաշխարհային սիստեմի նոր փոխհարաբերություններ ստեղծեց սոցիալիզմի և կապիտալիզմի միջև՝ հօգուտ սոցիալիստական լագերի։ Համաշխարհային կապիտալիստական շուկայի սահմանները նեղացան համաշխարհային սոցիալիստական շուկայի ստեղծման հետևանքով։ Բացի դրանից, կապիտալիստական գլխավոր տերությունների կապիտալ-ներդրումների ոլորտը կրճատվեց նաև իմպերիալիզմի գաղութային սիստեմի անընդհատ խորացող քայքայման հետևանքով։ Սոցիալիզմի և կապիտալիզմի ուժերի փոխհարաբերության մեջ կատարված փոփոխությունները հասցրին իմպերիալիստական հակասությունների հետագա սրմանը և խորացմանը նախ և առաջ խոշոր կապիտալիստական պետությունների և մոնոպոլիստական խմբավորումների միջև։ Եթե սոցիալիզմի լագերին հատուկ է նպատակի միասնություն և համախմբվածություն, ապա դրան հակառակ, իմպերիալիստական պետությունները բզկտվում են անընդհատ խորացող, անլուծելի հակասություններով։

Սակայն, հեղինակն իր երեք հարյուր էջանոց գրքում «մոռացել է» խոսել վերոհիշյալ հարցերի մասին, դրանց հիման վրա վերլուծել հետպատերազմյան շրջանի անգլո-ամերիկյան հակասությունները, իսկ Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում կատարված իրադարձությունները փաստորեն քննարկում է այդ պրոբլեմներից մեկուսացած։

Գրքում նույնիսկ ցույց չի տրված, որ անգլո-ամերիկյան հակասությունները, դրանք հակասություններ են իմպերիալիզմի գաղութային սիստեմը ավելի նուրբ մեթոդներով և ձևերով պահպանելու համար, այն բանի համար, թե իմպերիալիստական գիշատիչներից որը կգրավի հրամանատարական բարձունքները և ավելի մեծ գերշահույթներ կկորզի այդ գաղութային սիստեմից։ Բանն այնտեղ է հասել, որ հաստափոր գրքում տեղ «չի եղել» ոչ միայն խոսելու, այլև նշելու Չինական ռևոլյուցիայի համաշխարհային-պատմական հաղթանակի մասին, իսկ ըստ հեղինակի «հետպատերազմյան տարիներին ստեղծված նոր պայմանների... առաջին արտահայտություններից մեկն եղավ Հնդկաստանի նախկին քաղաքական ստատուսի փոփոխությունը» (էջ 212)։

Այսպիսով, հեղինակն անտեսել է միջազգային կյանքում հետպատերազմյան տարիներին կատարված փոփոխություններից գլխավորը,



հիմնականը՝ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումը, սոցիալիզմի հանդես գալը որպես համաշխարհային սիստեմ, գաղութային սիստեմի փլուզումը, որ իմպերիալիզմի հակասությունների հետագա սրումը հենց այդ փոփոխությունների հետևանքն է և ոչ թե միայն ԱՄՆ-ի տնտեսական կյանքում ծավալվող հետպատերազմյան ժամանակաշրջանի իրադարձությունները, ինչպես սխալ կերպով կարծում է հեղինակը։

Հեղինակը, հաշվի չնստելով իրական փաստերի հետ, մոռացության տալով ՍՄԿԿ XX համագումարի ելակետային դրույթը, որ կապիտալի երկրներում հետպատերազմյան տարիների արդյունաբերական արտադրանքի աճի կարևորագույն գործոնը և շարժիչը սպառազինությունների մրցավազքն է, փորձում է ընթերցողին համոզել, թե «երկրորդ համաշխարհային պատերազմից անմիջապես հետո բոլոր պատերազմող երկրների առջև ծառացավ մի կարևոր պրոբլեմ՝ փոխադրել երկրի տնտեսությունը ռազմական էկոնոմիկայից խաղաղ ժամանակվա էկոնոմիկայի ռելսերի վրա ու ըստ հնարավորին, կասեցնել գործազրկության աճող տեմպը, գների բարձրացումը, ինֆլյացիան և նման այլ երևույթներ» (էջ 162)։ Դրությունը չի փոխում տողատակի ծանոթագրությունն այն մասին, թե «վերջին ժամանակներս (?) կապիտալիստական գլխավոր պետությունները ըմբռնելով, որ ճգնաժամերից և գործազրկության սպառնալիքից ուրիշ ելք չկա, իրենց էկոնոմիկան վերստին փոխադրեցին ռազմական էկոնոմիկայի ռելսերի վրա» (էջ 162)։

Վերը նշված սխալ հարցադրումից հետո, մի կաթսայի մեջ խառնելով բոլոր պատերազմող երկրներին, հեղինակը հաջորդ էջերում առանց տնտեսական և վիճակագրական հաշվարկումների ու վերլուծությունների և, միայն բուրժուական մի շարք հեղինակների՝ Հաչիսոն (հեղինակը գրում է Հեչիսոն), Ջեստեր Բոուլզ, Ջուլյուս Հիրշ, Կլեյտըն և այլն գործերից արված անհաջող մեջբերումներով, ուզում է ապացուցել, որ հետպատերազմյան տարիներին ԱՄՆ-ի հիմնական տենդենցը եղել է ոչ թե երկրի էկոնոմիկայի հետագա միլիտարիզացիան, ռազմական և տնտեսական օգնության պատրվակի տակ թույլ և հետամնաց երկրների ենթարկումը ԱՄՆ-ին, և դրանով իսկ ամերիկյան արդյունաբերության ապահովումը պատվերներով, այլ միայն պայքարը արտահանության համար (որը իհարկե ճիշտ է), գործազրկության դեմ և երկրի էկոնոմիկան ռազմական ռելսերից խաղաղ զարգացման ուղու վրա տեղափոխելու համար։ Այսպիսի պնդումը ամբողջապես ապակողմնորոշում է ընթերցողին, մանավանդ, որ հեղինակը ԱՄՆ-ի հետպատերազմյան շրջանի մասին խոսում է ընդհանրապես, առանց կոնկրետ էտապների։ Իսկ կոնկրետ էտապները բացահայտելը անհրաժեշտ էր։

Հեղինակը պետք է ցույց տար, որ եթե 1938/39 թթ. ԱՄՆ-ի ռազմական ծախսերը կազմել էին 1635 միլիոն դոլլար, ապա 1946/47 թթ. 21.754 միլիոն դոլլար, իսկ 1955/56 թթ. կազմեցին 44 260 միլիոն դոլլար։

Անհրաժեշտ էր նշել, որ հետպատերազմյան 10 տարիների ընթացքում ԱՄՆ-ը ռազմական նպատակներով ծախսել են 351 256 միլիոն դոլլար, այսինքն՝ 54 միլիարդ դոլլարով ավելի, քան երկրորդ համաշխարհային պատերազմի 5 տարիների ընթացքում (Statistical abstract of the United States. 1956, p. 234)։

Հետպատերազմյան շրջանում ԱՄՆ-ի տնտեսական և ռազմական տեսակետից կապիտալիստական աշխարհի ամենաուժեղ տերություն դառնալը հիմնականում պայմանավորված է նրանով, որ Միացյալ Նահանգները իրենց էկոնոմիկան պահեցին ռազմական ռելսերի վրա, ռազմական նյութերի արտադրության հաշվին հասան ընդհանուր կոնյունկտուրայի որոշ բարձրացման և ժամանակավորապես խուսափեցին վրա հասնող տնտեսական ճգնաժամից։ «Հնարավորություն չունենալով հաղթահարելու կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումից հենց ԱՄՆ-ում առաջացած դժվարությունները, ամերիկյան մոնոպոլիստական կապիտալը ելք է փնտրում իմպերիալիստական, էքսպանսիոնիստական քաղաքականության մեջ՝ միլիտարիզմի, սպառազինությունների մրցավազքի մեջ, արդյունաբերական այլ երկրների մրցակցության վերացման մեջ, կապիտալիստական մյուս երկրները իր կիսագաղութները դարձնելու միջոցով կապիտալիստական շուկայի մոնոպոլիզացիայի և վերջապես ամերիկյան իմպերիալիզմի կողմից նախապատրաստվող նոր համաշխարհային պատերազմի մեջ...» (Е. Варга, «Основные вопросы экономики и политики империализма», 1953, М., стр. 120)։

Ահա այս մոմենտներն են ԱՄՆ-ի հետպատերազմյան էկոնոմիկայի զարգացման շարժիչները և ոչ թե գրքում պարունակվող կիսատ-պռատ, ոչինչ չապացուցող գորշ սխեմաները, որոնք վերցված են բուրժուական աղբյուրներից։ Զայրացուցիչ է, որ հեղինակը արհամարհել և չի օգտագործել իմպերիալիզմի պրոբլեմներին ու հակասություններին, գաղութային սիստեմի քայքայման հարցերին նվիրված սովետական անվանի տնտեսագետների (Վարգա, Լեմին, Մայեննիկով և շատ ուրիշներ) և, հատկապես, արևելագետների աշխատությունները, շատ անբավարար է օգտագործել սովետական մամուլն ու ամսագրերը։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ

ընդունելի է։ Բերենք բազմաթիվ օրինակներից մի քանիսը.

| | Գրված է | Պետք է լինի |
|---|---|---|
| էջ 9 | Ջերզեյի | Ջերսի |
| » 13 | Կորպորեշըն | Կորպորեյշն |
| » 16 | Վենեսուելա | Վենեցուելա |
| » 19 | Հոլլանդական | Հոլանդական |
| » 52 | Պերժըն | Պերշըն |
| » 52 | Բասրահ | Բասրա |
| » 57 | Միլլիոն | Միլիոն |
| » 91 | Էկսպլորեշըն | Էքսպլորեյշն |
| » 92 | Կերմանշահ | Քերմանշահ |
| » 100 | Մոհամմերահ | Մոհամմերա |
| » 118 | Բանկ Նոտ | Բանկնոտ |
| » 103 | Ֆորենյ Օֆֆիս | Ֆորեյն Օֆֆիս |
| » 117 | Դեբիտ | Դեբետ |
| » 144 | Նեժդ | Նեջեդ |
| | Պարսկական ծոց (քարտեզներում, | Պարսից ծոց |
| » 171 | Մալտա | Մալթա |
| » 173 | Կիրենայկա | Կիրենաիկա |
| » 222 | Սպայզըր | Սպեյզըր (Speiser) |
| » 238 | Ագրեսիոն | Ագրեսիվ |
| » 262 | Շիլի | Չիլի, |
| | Ուրուգուայ | Ուրուգվայ |
| » 280 | Գերատ | Հերաթ |
| » 26 | Սումմատրա | Սումատրա |
| » 224 | Թուդեհ | Թուդե |
| » 138 | Մակ Դոնալդ | Մակդոնալդ և այլն։ |

Մեծ թիվ են կազմում նաև օտար բառերի ավելորդ օգտագործումը և տառասխալները, ինչպես, օրինակ, հեղինակը օգտագործում է պրետենզիա (էջ 15, 33, 144), պրովինցիա (106), դոկումենտ (127,128), և այլն։ Մի տեղ գրում է Սայդոն, մի այլ տեղ Սայդա (էջ 62, 74, քարտեզներում), մի տեղ ՄԵԴՕ, մի այլ տեղ ՄԵՏՕ (էջ 5), Բաղդադ—Բաղդատ (64), Լուիզիանա—Լուզիանա (էջ 257), Մասաչուսեթս—Մասաչուսեթս (27, 57, 288), Բրուկս—Բուրկս (109, 135, 139), Ուինստոն Չերչիլ — Վինստոն Չերչիլ (52, 109, 277), Իրանում գտնըվող Էլբուրս լեռնաշղթան անվանվում է Էլբրուս (265) և այլն։ Այնուհետև դժկամության փոխարեն գրում է դժկամակություն (197), շահագրգռվածությունը՝ շահագրգռություն (145), մոնոպոլիաների գոյացումը՝ մոնոպոլիստների գոյացում (20), կոմպանին՝ կոպանի (13), պետրոլյումը՝ պետրոյլում (16), ամենաստահրինը՝ ամենաստահրի (235), հավատը՝ հավատք (247), վթարը՝ վթարանք (254) և այլն և այլն։

Այս բոլորից հետո, թվում է, որ գրախոսվող աշխատության սխալները և թերամշակ վիճակը բնավ հիմք չպետք է տային խմբագիրներ Ա. Եղիազարյանին և Ա. Խաչատրյանին այն ներկայացնել տպագրության։ Ցավոք սրտի, հարկ եղած պահանջկոտություն հանդես չեն բերել ո՛չ միայն խմբագիրները, այլև, առաջին հերթին, Գիտությունների Ակադեմիայի խմբագրական-հրատարակչական խորհուրդը և, մասնավորապես, Մերձավոր Արևելքի երկրների սեկտորը, որոնք իրենց անտարբեր վերաբերմունքով թույլ են տվել լույս ընծայել լուրջ թերություններ և սխալներ պարունակող գիրքը։ Ժամանակն է, որպեսզի Ակադեմիայի հրատարակչական գործը վարող ընկերները ըմբռնեն, որ միայն օտար լեզու իմանալը երբեք բավական չէ քաղաքական-տնտեսագիտական և միջազգային լուրջ պրոբլեմները գիտական պատշաճ մակարդակով արծարծելու համար։

Կ. ՍԱՀԱԿՅԱՆ

---



# ԼԵՆԻՆԸ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

## (ЛЕНИН О ПАРТИЙНОМ СТРОИТЕЛЬСТВЕ, М., 1956)

Ռուսերեն լույս է տեսել «Լենինը պարտիական շինարարության մասին» ժողովածուն, որտեղ զետեղված են պարտիական շինարարության հարցերին նվիրված Վլադիմիր Իլյիչ Լենինի կարևորագույն երկերը, ինչպես նաև հատվածներ նրա առանձին աշխատություններից։ Այս ժողովածուն բաղկացած է երկու մասից։ Առաջին մասում տեղավորված են Վ. Ի. Լենինի այն աշխատությունները, որոնք գրված են նախահոկտեմբերյան շրջանում (1897—1917 թթ.), իսկ երկրորդում՝ հետհոկտեմբերյան տարիներին (1917—1923 թթ.)։ Առաջնորդի աշխատությունները ժողովածուում տեղադրված են ժամանակագրական կարգով։

Լենինյան ներկա ժողովածուն, անկասկած, կդառնա յուրաքանչյուր պարտիական աշխատողի սեղանի գիրքը, նրա տեսական ու պրակտիկ գործունեության կարևորագույն ուղեցույցը։

«Լույս ընծայելով ժողովածուն,— ասված է փոքրիկ առաջաբանում,— հրատարակությունը նկատի ունի, որ մեր պարտիայի հիմնադիր ու առաջնորդ Վ. Ի. Լենինի կողմից ընդհանրացված ու մշակված Կոմունիստական պարտիայի կազմակերպական գործունեության հարստագույն փորձի, աշխատանքի ձևերի ու մեթոդների ուսումնասիրությունը կօգնի պարտիական կադրերին տիրապետելու ՍՄԿՊ կազմակերպական սկզբունքներին, հզոր օգնություն կհանդիսանա վճռելու այն մեծ ու պատասխանատու խնդիրները, որոնք կանգնած են պարտիայի առաջ կոմունիստական շինարարության ժամանակակից էտապում»։

Ժողովածուում զետեղված աշխատությունները ամփոփ պատկերացում են տալիս պարտիական կյանքի լենինյան սկզբունքների մասին. նրանում տեղավորված առաջին հոդվածից («Ռուսական սոցիալ-դեմոկրատների խնդիրները», 1897 թ.) մինչև վերջինը («Նամակ համագումարին» 1922 թ.) անցել է բավական ժամանակ, բայց նրանցում եղած մտքերն ու դրույթները այսօր էլ ամբողջությամբ պահպանում են իրենց այժմեականությունը և կենսունակությունը։

Լենինյան ժողովածուի առաջին մասում հրապարակված են «Ի՞նչ անել» գրքից առանձին հատվածներ, «Նամակ ընկերոջը մեր կազմակերպական խնդիրների մասին», «ՌՍԴԲՊ Կոմիտեների և խմբերի կողմից համապարտիական համագումարին տրվելիք զեկուցումների հարցի շուրջը», «Մի քայլ առաջ, երկու քայլ ետ», «Պարտիայի վերակազմության մասին», «Պարտիայի մեջ գործերի վիճակի մասին» և այլ բազմաթիվ աշխատություններ, նամակներ, ճառեր և նախագծեր։ Այդ նյութերում մեծ առաջնորդը սպառիչ կերպով բնորոշել և հիմնավորել է պարտիայի դերը՝ որպես բանվոր դասակարգի առաջավոր, գիտակից, կազմակերպված ջոկատի, մշակել է պարտիական կյանքի սկզբունքներն ու նորմերը՝ կապված պարտիայի իդեոլոգիական, կազմակերպական և տակտիկական հիմունքների հետ։ Լենինը խոշոր նշանակություն էր տալիս պարտիայի կանոնադրության մեջ շարադրված սկզբունքների ու նորմաների խստագույն պահպանմանը՝ հանուն պարտիական շարքերի միասնության և համախմբվածության։ Անխնա մերկացնելով ու գաղափարապես ջախջախելով մենշևիկների և բոլոր գույնի ու երանգի օպորտունիստների քայքայիչ գործունեությունը՝ Լենինը պահանջում էր ձեռնարկել այնպիսի միջոցառումներ, որոնք ապահովեին պարտիան «...խմբակային կամակորության դեմ, խմբակային կապրիզների դեմ, այն կռվոցի խմբակային եղանակների դեմ, որ կոչվում է «գաղափարական պայքարի» ազատ «պրոցես»» (էջ 270)։

Այդ նյութերում շարադրված են մեր պարտիայի կազմակերպական կառուցման լենինյան ղեկավար սկզբունքը՝ դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը, որն անխզելիորեն կապված է պարտիական խստագույն կարգապահության հետ։ Լենինը սովորեցնում էր, որ պարտիային անհրաժեշտ է համախմբվածություն, տոկունություն և կարգապահություն։ Նա բազմակողմանիորեն ու խորապես հիմնավորել է պարտիական ղեկավարության սկզբունքները, առաջ քաշել ու պաշտպանել պարտիական ղեկավարության մեջ կոլեգիալության, մասսաների հետ անխզելի կապի սկզբունքները։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մարդկության պատմության մեջ բաց

*արեց նոր դարաշրջան, ռևոլյուցիայի հաղթանակով արմատական շրջադարձ կատարվեց հին, կապիտալիստական աշխարհից դեպի նոր, սոցիալիստական աշխարհը։ Մեր երկրում պրոլետարական դիկտատուրայի հաստատումով Կոմունիստական պարտիայի՝ որպես կառավարող պարտիայի առջև կանգնեցին նոր, վիթխարի խնդիրներ։*

*Ժողովածուի երկրորդ մասում զետեղված նյութերից ընթերցողը պարզորոշ տեսնում է, թե ինչպես Վ. Ի. Լենինը պաշտպանել ու զարգացրել է պարտիական կյանքի այդ ղեկավար սկզբունքներն ու նորմերը, մշակել պարտիական շինարարության կարևորագույն հարցերը՝ կապված սովետական պետության ստեղծման ու կառուցման, երկրում սոցիալիստական շինարարության սկսման ու ծավալման ժամանակաշրջանի հետ։ Այդ կարելի է տեսնել «Ինչպե՞ս կազմակերպել մրցությունը», «Սովետական իշխանության հերթական խնդիրները», «Մեծ նախաձեռնություն», ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ», «Կոոպերացիայի մասին», «Պրոֆմիությունների դերի ու խնդիրների մասին նոր տնտեսական քաղաքականության պայմաններում» և այլ աշխատություններում, զեկուցումներում, նամակներում և այլն։ Լենինյան նյութերում տրված է ժողովրդական մասսաների առաջնորդի ու կազմակերպչի՝ Կոմունիստական պարտիայի դերը, նրա կազմակերպական սկզբունքները սոցիալիստական հասարակարգի կառուցման պայմաններում։*

*Հսկայական է Լենինի կողմից մշակված պարտիական ղեկավարության սկզբունքների և պարտիական նորմերի նշանակությունը պարտիայի շարքերի հետագա ամրապնդման, նրա մարտունակության բարձրացման գործում։ Պարտիան սովորեցնում է անշեղորեն կենսագործել, խստիվ պահպանել պարտիական շինարարության այդ օրենքները, ՍՄԿՊ Կանոնադրության պահանջները։*

*Ցանկալի է, որ Հայպետհրատը հայերեն հրատարակի «Լենինը պարտիական շինարարության մասին» ժողովածուն, շտկելով միաժամանակ Վ. Ի. Լենինի Երկերի թարգմանության ժամանակ թույլ տրված առանձին վրիպումները։*

---



Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԲԱԲԱՅԱՆ Լ. Հ., ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ՀՈՎՀ. Մ.,
ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ
Գ. Ա., ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ԱՐ. Ն., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ
Վ. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.։

ՎՖ 07868 Պատվեր 1808 Տիրաժ 6000

Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ։ Ստորագրված է տպագրության 15/VII 1957 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։

**ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.**

## ՀԱՅԳՐՔԻ ԳՐԱԽԱՆՈՒԹՆԵՐՈՒՄ ԵՎ ԿՐՊԱԿՆԵՐՈՒՄ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ԳՐՔԵՐԸ

Լ. ԲՐՈՒՏՅԱՆ — «Տրամաբանություն», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 10 ռ. 80 կոպ.։*

Ս. ՔՈՉԱՐՅԱՆ — «Հակասությունները իմպերիալիստական երկրների միջև ժամանակակից էտապում», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 1 ռ. 50 կոպ.։*

Ս. ԿՐԻՄԵՆՏԵՎ — «Ավտոմատիկ տելեմեխանիկա», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 6 ռ. 45 կոպ.։*

Ս. ՄՆՋՈՅԱՆ, Ի. ՏԵՐ-ԱԶԱՐԵՎ — «Արբիկտուփի նորարարների փորձից», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 25 կոպ.։*

Կ. ՍԱՐԳՍՅԱՆ — «Զգման պրոցեսի հիմունքները», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 85 կոպ.։*

Պ. ԵՐԿԱԹ — «Մտերիմ խոսեր», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 1 ռ. 65 կոպ.։*

Գ. ՄԱՀԱՐԻ — «Երիտասարդության սեմին», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 10 ռ. 40 կոպ.։*

Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ — «Հրաշալի այգեպան», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 4 ռ. 45 կ.։*

ՅԱՆ. ՌԱՅՆԻՍ — «Ընտիր երկեր», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 11 ռ. 50 կոպ.։*

ՄԱՌ-ԴՈՒՆ — «Լուսաբացից առաջ», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 10 ռ.։*

Շ. ՊԵՏԵՖԻ — «Բանաստեղծություններ», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 5 ռ.։*

Հ. ՍԵՆԿԵՎԻՉ — «Խաչակիրներ», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 15 ռ. 90 կոպ.։*

Օ. ԲԱԼԶԱԿ — «Երկերի ժողովածու», *տասը հատորով, հատոր 4-րդ, Հայպետհրատ, 1957 թ., գինը 14 ռուբ.։*

ԼՈՊԵ ԴԵ ՎԵԳԱ — «Պարտիզպանի շունը», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 4 ռուբ.։*

Կ. ՉԱՊԵԿ — «Պատմվածքներ», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 6 ռ. 35 կոպ.։*

Մ. ՅՈՒ. ԼԵՐՄՈՆՏՈՎ — «Մեր ժամանակի հերոսը», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 3 ռ. 80 կոպ.։*

Ա. ՄԱՅԱԿՈՎՍԿԱՅԱ — «Մայակովսկու մանկությունն ու պատանեկությունը», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 2 ռ. 50 կոպ.։*

Մ. ՄԱՏՅԵ — «Եգիպտացի տղայի օրը», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 2 ռ. 95 կոպ.։*

Լ. ՊԱՆՏԵԼԵԵՎ — «Պատմվածքներ», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 5 ռուբ.։*

Վ. ՓԱՓԱԶՅԱՆ — «Զրույցներ», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 5 ռուբ.։*

Վ. ԱՆԱՆՅԱՆ — «Հովազաձորի գերիները», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 11 ռ. 20 կոպ.։*

Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ — «Ճանապարհ դեպի գիտություն», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 2 ռ. 80 կոպ.։*

*«ՀԱՅԳԻՐՔ»*